ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1972

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**2** ՓԵՏՐՎԱՐ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

Մեր երկրի զարգացման արդի փուլում, երբ զանգվածային պայքար է ծավալվում կուսակցության XXIV համագումարի մշակած ծրագրի կենսագործման համար, երբ քաղաքական ու գաղափարական սուր պայքար է մղվում սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև, գաղափարա-դաստիարակչական աշխատանքի կարևորությունն ավելի քան հրամայական է: Ահա թե ինչու կուսակցությունն իր քաղաքականության հաջող իրագործման էական պայմանն է համարում կոմունիստների, ողջ սովետական ժողովրդի հասարակական գիտակցականության, նրա հոգևոր աշխարհի հարստացման, քաղաքական և աշխատանքային ակտիվության աճը:

Հասարակական կյանքի բոլոր բնագավառներում կուսակցության ղեկավար դերի իրականացումը պահանջում է բարձրացնել կոմունիստների տեսական պատրաստականությունը: «Կուսակցությունը շատ կարևոր է համարում, — ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— որ կոմունիստները հաստատակամորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, հասարակական զարգացման օրենքների իմացությանը, կարողանան վստահորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթների ոլորտում, ճիշտ գնահատեն դրանք և գործնական ճիշտ հետևություններ անեն: Կոմունիստների գաղափարական կոփումը մեր կուսակցության շարքերի մարտունակության բարձրացման անհրաժեշտ պայմանն է»: Մեր կուսակցության ուժն իր անդամների բարձր գաղափարայնության, համոզվածության, նվիրվածության և ակտիվության մեջ է:

Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարը, ընդգծելով մարդկանց գաղափարական, քաղաքական դաստիարակության գործում մարքս-լենինյան կրթության մեծ նշանակությունը, կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց դրա հետագա բարելավման վրա, անհրաժեշտ համարեց այսուհետև ևս բարձրացնել քաղաքական ուսուցման արդյունավետությունը, այն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ, վճռականապես հաղթահարել ձևականության տարրերը, հասնել այն բանին, որ այն ավելի ուժեղ ներգործի կուսակցության անդամների գիտակցականության և ակտիվության զարգացման վրա:

Կուսակցության XXIV համագումարը նոր ավանդ մուծեց գիտական կոմունիզմի տեսության զարգացման գործում, մշակեց առաջիկա ժամանակաշրջանի համար մեր երկրի հետագա զարգացման հոյակապ ծրագիրը: Եվ

միանգամայն օրինաչափ է այն իրողությունը, երբ համագումարի փաստաթղթերն ու նյութերը դարձել են կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց խոր, համակողմանի ուսումնասիրման առարկա, կուսակցական պրոպագանդայի, միլիոնավոր մարդկանց գաղափարա-դաստիարակչական, քաղաքական-մասսայական աշխատանքի հիմնական բովանդակությունը:

Ղեկավարվելով համագումարի ցուցումներով՝ մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները զգալի գործ են կատարել կոմունիստների մարքս-լենինյան կրթության բարելավման մարզում: Եվ, հիրավի, առաջին արդյունքները բավականին գոտեպնդիչ են: Կուսակցական քաղաքական ուսուցման սիստեմում այժմ սովորում են ավելի քան 140 հազար կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ, անցյալ տարվա 130 հազարի դիմաց: Բնորոշ է, որ ունկնդիրների ցանկությամբ ստեղծվեցին համագումարի փաստաթղթերն ու նյութերն ուսումնասիրող 382 քաղդպրոցներ և 312 տեսական սեմինարներ, ավելի քան 12500 ունկնդիրներով: Բացի այդ, համագումարի մշակած տեսական, տնտեսական, սոցիալ-քաղաքական, կուլտուրական զարգացման, արտաքին քաղաքականության հարցերը հանգամանորեն ուսումնասիրվում են նաև ուսուցման մյուս ձևերում՝ ուսումնական հիմնական ծրագրերի հետ առնչված: Քաղաքական ուսուցման ընթացիկ տարին, իրոք, դարձել է համագումարի փաստաթղթերի ու նյութերի ուսումնասիրման տարի: Այդ նպատակով շատ նոր դպրոցներ ու տեսական սեմինարներ կազմակերպվեցին Կիրովական, Լենինական, Դիլիջան քաղաքներում, Երևանի Սպանդարյանի և Մյասնիկյանի, ինչպես նաև Ապարանի, Արտաշատի, Կամոյի, Կրասնոսելսկի, Թումանյանի, Աբովյանի, Մեղրու և Թալինի շրջաններում:

ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած տեսական ու գործնական պրոբլեմների և հարցերի ուսումնասիրումը դեռ երկար ժամանակ կմնա կուսակցական մեր պրոպագանդայի ու գաղափարա-դաստիարակչական գործունեության հիմքում:

Ընդգծենք, որ ընթացիկ ուսումնական տարում դարձյալ մեծ ուշադրություն է նվիրվում տեսական պրոբլեմների, աշխարհայացքային առարկաների ուսումնասիրությանը: Ավելի քան 61.700 կոմունիստներ ու անկուսակցական ակտիվիստներ իրենց ընդհանուր տեսական պատրաստությունը բարձրացնում են մարքսիզմ-լենինիզմի հիմունքների 1626 դպրոցներում և 1537 տեսական սեմինարներում: Զգալի թվով կոմունիստներ տեսության հարցերն ուսումնասիրում են ինքնուրույն կարգով:

Առաջին ամիսների աշխատանքի փորձից ելնելով՝ պետք է նշել, որ համագումարի փաստաթղթերը, ինչպես նաև տեսության հարցերն ուսումնասիրելիս, անհրաժեշտ է ավելի մեծ տեղ տալ համագումարի գաղափարների և դրույթների խոր յուրացմանը: Ունկնդիրների ուշադրությունը պետք է կենտրոնացնել համագումարի մշակած կուսակցության տնտեսական քաղաքականության ողջ իմաստի, նոր հնգամյակի գլխավոր խնդրի ու դրա կենսագործման կոնկրետ եղանակների և միջոցների հետ կապված հանգուցային հարցերի վրա: Նրանք պետք է լավ ըմբռնեն սովետական հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման, մասնավորապես մարդկանց պատմական նոր ընդհանրության՝ սովետական ժողովրդի կազմավորման, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման, նոր մարդու ձևավորման, արտադրության կառավարման կատարելագործման վիթխարի պրոբլեմների էությունը:



Հատուկ ուշադրության է արժանի համագումարի կողմից կուսակցության, նրա կազմակերպչական, քաղաքական ու գաղափարական աշխատանքի մասին լենինյան ուսմունքի հարստացումը, որը մեծ նշանակություն ունի մեր երկրի և միջազգային հեղափոխական շարժման հետագա զարգացման համար: Պետք է խորապես ուսումնասիրել նաև խաղաղության ակտիվ պաշտպանության և միջազգային անվտանգության ամրապնդման՝ կուսակցության մշակած արտաքին քաղաքական ծրագրի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, կոմունիստական շարժման, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի հետագա համախմբման հարցերը, որոնց լուծման գործում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի կատարած աշխատանքը արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. նոյեմբերյան պլենումի միահամուռ հավանությանը:

Կուսակցությունը խնդիր է դնում՝ քաղաքական ուսուցման գործը, աշխատավորների ողջ գաղափարա-դաստիարակչական աշխատանքը տոգորել հեղափոխական մարքսիզմի ոգով, ուսուցման ընթացքում հասնել գաղափարական հստակ դիրքորոշման ու պարզության, կադրերին, բոլոր կոմունիստներին գաղափարապես զինել բուրժուական և ռևիզիոնիստական հայացքների դեմ, լենինիզմին խորթ սկզբունքային ամեն մի նահանջի դեմ պայքարելու ոգով:

Վերջին տարիներս մեր կուսակցությունը, հաշվի առնելով ժամանակակից կյանքում կատարվող գիտա-տեխնիկական հեղափոխությունը, արտադրության էկոնոմիկայի և աշխատանքի ոլորտներում առաջացող որակական փոփոխությունները, խնդիր է դնում կադրերին, բոլոր աշխատավորներին զինել տնտեսագիտությամբ, ուժեղացնել աշխատանքի և կառավարման գիտական կազմակերպման հարցերի պրոպագանդան, արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման հարցերի համակողմանի ու խոր լուսաբանումը: Տնտեսագիտական ուսուցումը մարդկանց գիտական աշխարհայացքի և քաղաքական գիտակցականության ձևավորման բաղկացուցիչ մասն է: Այն միաժամանակ նրանց հաղորդում է սոցիալիստական տնտեսավարման հարուստ փորձը:

Ելնելով համագումարի պահանջից՝ ՍՄԿԿ Կենտկոմը 1971 թվականի սեպտեմբերին հրապարակեց իր որոշումը՝ «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որը մեր հանրապետությունում հաջողությամբ է կենսագործվում:

Գոհունակությամբ պետք է նշել, որ մարքս-լենինյան կրթության ընթացիկ ուսումնական տարում կուսակցության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները, մինիստրություններն ու գերատեսչություններն ավելի մեծ ուշադրություն նվիրեցին տնտեսագիտական կրթությանը, նրա ընդլայնմանն ու կատարելագործմանը: Այժմ ուսուցման բոլոր օղակներում տնտեսագիտության հարցերն ուսումնասիրում են ավելի քան 52 հազար կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ: Նրանք 431 տարրական քաղդպրոցներում, հազարից ավելի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում, 818 տեսական սեմինարներում, ինչպես նաև մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում, կուսակցական ակտիվի դպրոցներում ու սեմինարներում և ինքնուրույն կերպով ուսումնասիրում են տնտեսական գիտելիքների հիմունքները, սոցիալիզմի քաղաքատնտեսության, արդի էտապում կուսակցության տնտեսական քաղաքականության հարցերը և տնտեսագիտական այլ պրոբլեմներ: Ընդ որում, հարյուրավոր տեսական սեմինարներում, ինչպես

նաև ակտիվի դպրոցներում հազարավոր մարդիկ ուսումնասիրում են կուսակցության տնտեսական քաղաքականության արդի էտապի հարցերը: Տնտեսագիտական հարցերն ուսումնասիրող համեմատաբար շատ դպրոցներ ու սեմինարներ ստեղծվեցին Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում, Ղափանի, Սիսիանի, Մարտունու, Իջևանի և Մասիսի շրջաններում:

Բնորոշ է, որ տնտեսագիտության հարցերն ուսումնասիրող դպրոցներում ու սեմինարներում աշխարհայացքային, տեսական հարցերի ուսումնասիրումը խելացիորեն զուգակցվում է արտադրության զարգացման կոնկրետ խնդիրների հետ: Կուսակցական կազմակերպությունները, պրոպագանդիստները ջանում են, որ ուսուցումը գործնական բնույթ կրի, օգնի արդյունաբերության, գյուղատնտեսության և կառույցների աշխատողներին՝ բացահայտելու և վերացնելու աշխատանքում եղած թերությունները, կատարելագործելու արտադրության կառավարումն ու կազմակերպումը, նպաստի սոցիալիստական մրցության և նորարարության զարգացմանը, աշխատավորներին ներարկի արտադրության նկատմամբ սրտացավության զգացում, անհանդուրժողականություն անտնտեսվարության, պահպանողականության և քարացածության նկատմամբ: Նրանք ձգտում են, որպեսզի ունկնդիրները խորապես ըմբռնեն աշխատավորների արմատական շահերն արտահայտող կուսակցության տնտեսական քաղաքականության ողջ իմաստը:

Հանրապետության կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները և տնտեսական մարմինները, կենսագործելով կոմունիստական աշխատանքի դպրոցների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը (1971 թվականի օգոստոս), զգալի հաջողությունների են հասել: Կարճ ժամանակամիջոցում ստեղծվեցին և նոյեմբերի 1-ից հաջողությամբ գործում են 1600 կոմունիստական աշխատանքի դպրոցներ՝ 40 հազար ունկնդիրներով, անցյալ ուսումնական տարվա 20 դպրոցների (1000 ունկնդիր) փոխարեն:

Կազմակերպված կոմունիստական աշխատանքի դպրոցների մեծ մասը ճիշտ է կատարում իր դերը: Նրանց պարապմունքներն ընթանում են այնպես, որ ունկնդիրները, քաղաքական պատրաստության հետ մեկտեղ, ստանում են նաև աշխատանքային, պրոֆեսիոնալ հմտություններ, տնտեսագիտական գիտելիքներ, հաղորդակից են լինում արտադրության գործերի կառավարմանը, առաջավոր փորձին: Այս ամենը նրանց դաստիարակում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով:

Մեր կուսակցությունն առանձնահատուկ հոգատարություն է ցուցաբերում ղեկավար կադրերի գաղափարական կոփման նկատմամբ: ՍՄԿԿ XXIV համագումարը կուսկազմակերպություններից պահանջեց ուժեղացնել ղեկավար կադրերի մարքս-լենինյան կրթության և նրանց կողմից աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը: Եվ դա հասկանալի է: Աշխատանքային ամեն մի տեղամասում գործի հաջողությունը վճռում են կադրերը: Նրանց տեսական պատրաստությամբ, գիտելիքների հարստությամբ, մարդկանց դաստիարակելու և կազմակերպելու հմտությամբ է պայմանավորված մեր առաջընթացի արագացումը:

Այժմ Հայաստանում գործում են կուսակցական ակտիվի 44 դպրոց և 7 սեմինար, որոնցում ընդգրկված են կուսակցական, սովետական, տնտեսական մոտ 3 հազար աշխատողներ: Իսկ մինիստրությունների, պետական կո-



միտեների, գերատեսչությունների ղեկավարներն ու հարյուրավոր մասնագետներ սովորում են տեսական սեմինարներում կամ ինքնուրույն ձևով:

Սակայն, պետք է նշել, որ դպրոցների և սեմինարների աշխատանքում դեռևս կան էական թերություններ: Առանձին տեղերում խախտվում են պարապմունքների պարբերականությունն ու տևողությունը, քիչ են կազմակերպվում հանգուցային հարցերի կոլեկտիվ քննարկումներ, ռեֆերատների ընթերցումներ: Դեռևս որոշ կոմունիստ ղեկավարներ սիստեմատիկաբար չեն ջանում բարձրացնել իրենց տեսական մակարդակը, ակտիվորեն հանդես չեն գալիս աշխատավորների առջև զեկուցումներով և դասախոսություններով, անմիջականորեն չեն մասնակցում գաղափարա-դաստիարակչական գործունեությանը, չեն զուգակցում տնտեսական ու դաստիարակչական աշխատանքը: Նրանք երբեմն անտեսում են իրենց իսկ տնտեսական և վարչական որոշումների դաստիարակչական հետևանքները:

Կուսակցական, սովետական, տնտեսական աշխատողներն իրենց գիտելիքները հարստացնում են նաև ՀԿԿ Երևանի, Լենինականի քաղկոմների մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում ուր, տեսական սիստեմատիկ գիտելիքներ են ձեռք բերում 2119 ունկնդիրներ: Սակայն անհանդուրժելի է, որ զգալի թվով ունկնդիրներ կանոնավոր չեն հաճախում պարապմունքներին, խիստ պասիվ են ուսման մեջ, իսկ կուսակցական կազմակերպություններն անհրաժեշտ պահանջկոտություն հանդես չեն բերում նման ընկերների նկատմամբ:

Ուշադրության է արժանի մտավորականության քաղաքական-դաստիարակության, նրանց մարքս-լենինյան գիտելիքների հարստացման ասպարեզում տարվող աշխատանքը: Գիտական և ստեղծագործական կազմակերպություններում, բուհերում և տեխնիկումներում, հանրակրթական դպրոցներում, առողջապահական հիմնարկություններում ստեղծվել են տեսական սեմինարներ, որոնցում ունկնդիրներն ուսումնասիրում են համագումարի որոշումները, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, փիլիսոփայության և տնտեսագիտության, գիտատեխնիկական հեղափոխության, սոցիալիզմի սոցիալ-տնտեսական և գաղափարական պրոբլեմները:

Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող քաղաքական-գաղափարական արդի պայքարի պայմաններում ավելի է բարձրանում մտավորականության դերն ու պատասխանատվությունը: Ուստի անհրաժեշտ է, որ նա ավելի հետևողականորեն զբաղվի իր տեսական գիտելիքների հարստացմամբ, ավելի խոր ուսումնասիրի արդի էտապի գաղափարական, սոցիալ-տնտեսական պրոբլեմները և առավել ակտիվ մասնակցի կուսակցության քաղաքականության իրականացմանը:

Կուսակցության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները վերջին տարիներս սկսել են ավելի շատ և կոնկրետ զբաղվել կոմերիտականների ու երիտասարդների քաղաքական ուսուցմամբ: Ներկայումս կոմերիտական խմբակների և սեմինարների ղեկավարների կազմում բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեցողների թիվն արդեն կազմում է 97,5, իսկ կոմունիստներինը՝ 93,0 տոկոս: Այս հանգամանքը նպաստել է ուսուցման գաղափարական մակարդակի բարձրացմանը:

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ավելի մեծ ուշադրություն դարձնել երիտասարդության մարքս-լենինյան կրթությանը: Ուսուցման

բարձր մակարդակը, բազմազան ու բովանդակալից քաղաքական-մասսայական միջոցառումներն էապես կնպաստեն երիտասարդության կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը, մեր կուսակցության քաղաքականության իրականացման գործում նրանց ակտիվ ու գիտակից մասնակցությանը:

Մարքս-լենինյան կրթության նոր խնդիրների բարձր պահանջներից ելնելով՝ կուսկազմակերպությունները տարեցտարի բարելավում են պրոպագանդիստների կազմը, որոնց մեծագույն մասը համապատասխանում է իր կոչմանը: Նրանց մեջ մեծ թիվ են կազմում կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողները, ժողովրդական տնտեսության մասնագետները, բուհերի դասախոսները, գիտական աշխատողները, ուսուցիչները: Չնայած դրան, ցավոք, դեռևս կան պրոպագանդիստներ, որոնց պարապմունքներն անհետաքրքրական են, գրքային: Ուսումնական նյութը նրանք չեն կարողանում կապել կյանքի հրատապ խնդիրների հետ, հաճախ շատ կարևոր տեսական-քաղաքական հարցեր խորությամբ չեն մեկնաբանում, չեն տիրապետում պարապմունքներն ակտիվ վարելու հմտությանը:

Անհրաժեշտ է հետայսու ավելի շատ օգնել պրոպագանդիստներին՝ հարստացնելու իրենց գիտելիքներն ու մեթոդական վարպետությունը: Հանրապետական քաղլուսումը, կուսակցական կոմիտեների քաղլուսկաբինետները և մեթոդխորհուրդները պարտավոր են ուժեղացնել նրանց ցույց տրվող տեսական ու մեթոդական օգնությունը: Պետք է նրանց համար ավելի շատ կազմակերպել շերտավորված սեմինար պարապմունքներ, բարձրորակ դասախոսություններ և զեկուցումներ, տեսական-մեթոդական քննարկումներ և նրանց աշխատանքի մակարդակի բարձրացմանն օգնող այլ միջոցառումներ: Մարքս-լենինյան ուսուցման գործում գլխավորը, ի վերջո, ուսուցման գաղափարական մակարդակն է, որը վճռականորեն պայմանավորված է պրոպագանդիստի կամ դասախոսի մտավոր կարողությամբ:

Սակայն չպետք է մոռանալ, որ կուսուսուցման բարձր մակարդակը էապես կախված է նաև ունկնդիրների բարեխղճությունից և նրանց հետաքրքրասիրություններից: Մինչդեռ կան փաստեր, երբ որոշ կոմունիստներ լրջորեն չեն զբաղվում իրենց գիտելիքների հարստացմամբ, չեն կարդում հանձնարարված գրականությունը, բացակայում են պարապմունքներից: Իսկ համապատասխան կուսակցական կազմակերպություններն անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում բարձրացնելու նրանց պատասխանատվությունը իրենց տեսական աճի համար:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները պետք է է՛լ ավելի ուժեղացնեն ուշադրությունը կոմունիստների, բոլոր աշխատավորների մարքս-լենինյան կրթության, գաղափարական-քաղաքական դաստիարակության նկատմամբ: Անհրաժեշտ է բոլոր միջոցներով նրանց զինել գաղափարապես, բարձրացնել նրանց հասարակական գիտակցականությունը, քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման և կոմունիզմի կառուցման հաղթանակի համար մղվող պայքարում:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

## ԼԵՆԻՆՅԱՆ ՀԱՄՈԶՎԱԾՈՒԹՅԱՄԲ

Մենք հաստատ համոզված ենք Իլյիչի դիրքորոշման ճշտությանը... մենք ամբողջովին Իլյիչի կողմն ենք:

ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ

ՍՄԿԿ XXIV համագումարը նոր, մեծ խնդիրներ դրեց հասարակական գիտությունների առջև, ընդգծեց ժամանակակից էտապում կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի անցած պատմական ուղու ուսումնասիրման, նրանց ձեռք բերած հարուստ փորձի օգտագործման պրակտիկ կարևորագույն նշանակությունը:

Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունը, հաղթահարելով իսկայական դժվարություններ, մշակել է մարտական հեղափոխական տակտիկա, որն աչքի է ընկնում պայքարի ձևերի ու մեթոդների բազմազանությամբ: 1907—1910 թթ. ցարական ռեակցիայի ծանր տարիներին բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսության, ինչպես նաև լիկվիդատորների, օտզովիստների, ուլտիմատիստների, տրոցկիստների, ամեն գույնի նացիոնալիստների դեմ Լենինի ու նրա զինակիցների և աշակերտների մղած սկզբունքային պայքարը հեղափոխական մարքսիզմից ամեն մի նահանջի նկատմամբ անհաշտելիության հիանալի օրինակ է: Ինչպես միշտ, այնպես էլ այդ շրջանում Անդրկովկասի բոլշևիկները հավատարիմ մնացին Լենինին:

* * *

Ռուսական առաջին հեղափոխության պարտությունից հետո ցարական կառավարությունը երկրում հաստատում է դաժան տեռորի ռեժիմ: Հազարավոր բանվորներ ու գյուղացիներ տանջամահ են արվում, բանտարկվում, գնդակահարվում, կախաղան բարձրացվում: Առանձնապես ուժեղ էին հարձակումները բոլշևիկների դեմ, որոնք մասսայաբար ձերբակալվում էին, իսկ նրանց կոմիտեներն ու մամուլի օրգանները ջախջախվում: Կուսակցությունն անցնում է ընդհատակ: Ընդ որում, բոլշևիկների վիճակը շատ ավելի ծանր էր, քան նախահեղափոխական ժամանակաշրջանում:

Այս բոլորին ավելանում էր ազգային ճնշման սաստկացումը: Սևհարյուրյակային Պուրիշկևիչը պետական դումայի ամբիոնից պահանջում էր ավելի խիստ քաղաքականություն վարել մյուս ազգերի նկատմամբ: 1907 թ. հունիսի 3-ին ցարական կառավարությունը ցրեց II պետական դուման, ձերբակալեց և աքսորեց նրա սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի անդամներին, հրապարակեց ընտրական նոր օրենք, որով Միջին Ասիայի տեղական բնակչությունը բոլորովին զրկվում էր ընտրական իրավունքներից, իսկ Լեհաստանի, Կովկասի և ազգային մյուս շրջանների դեպուտատների թիվը կրճատվում էր գրեթե երեք անգամ:

Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Կովկասում ռեակցիայի հարձակումը տեղի ունեցավ նաև գաղափարական ճակատում: Անդրկովկասի բուրժուական նացիոնալիստներն ակտիվորեն մասնակցեցին մարքսիստական փիլիսոփայության դեմ սկսած արշավին: Հետևելով Մախին ու Ավենարիուսին՝ նրանք խոսում էին մատերիայի «անհետացման» մասին, նշում, որ իբր փիլիսոփայական մատերիալիզմը հնացել է, իսկ դիալեկտիկան «միստիկա» է:

Մարքսիզմի և, մասնավորապես, նրա փիլիսոփայության դեմ կատաղի հարձակումներ սկսեցին վրացական սոցիալ-ֆեդերալիստները (Ա. Ջորջաձե և ուրիշներ), անարխիստների գաղափարախոս Վ. Չերքեզիշվիլին, մի շարք գրականագետներ, որոնք, հանդես գալով սուբյեկտիվ սոցիոլոգիայի դիրքերից, ժխտում էին պատմական օրինաչափությունները և պատմական կանխատեսումների հնարավորությունները: Դաշնակցականներն ու այլ նացիոնալիստներ (Ե. Կուլյան, Մ. Հովհաննիսյան, Ե. Ֆրանգյան և ուրիշներ) 1910 թ. Երևանում հրատարակեցին «Միտք» ժողովածուն, որում մախիզմը հայտարարվում էր «ամենաճշմարիտ» փիլիսոփայությունը: Մարքսիզմին նրանք հակադրում էին սուբյեկտիվ իդեալիզմը, իսկ Մախին համարում էին «աշխատավորության շահերի պաշտպան»: Ադրբեջանական բուրժուական նացիոնալիստներ Ի. Աշուրբեկովը, Մ. Ռասուլզադեն, Ա. Քյազիմզադեն և ուրիշներ մարքսիզմին և հեղափոխությանը հակադրում էին պանիսլամիզմը և պանթուրքիզմը: Մամուլի նրանց օրգանները կատաղի զրպարտություններ էին տարածում բոլշևիկների հասցեին:

Հեղափոխության պարտության հետևանքով առաջացած բարոյալքումն ընդգրկեց նաև ՌՍԴԲԿ-ին հարած մանրբուրժուական տատանվող տարրերին: Մենշևիկների շարքերում երևան եկած լիկվիդատորական հոսանքի լիդերներից էր Ն. Ժորդանիան, որը Լ. Մարտովի, Ֆ. Դանի, Պ. Աքսելռոդի, Ա. Մարտինովի և այլոց հետ միասին քարոզում էր հրաժարվել հեղափոխության համար հետագա պայքարից և անլեգալ պրոլետարական կուսակցությունից: Վտանգավոր երերումներ ցուցաբերեցին նաև որոշ անկայուն բոլշևիկներ (Ա. Բոգդանով, Ա. Լունաչարսկի, Գ. Ալեքսինսկի և ուրիշներ), որոնց հարեցին Ա. Սվանիձեն, Կ. Ցինցաձեն և անդրկովկասյան ուրիշ բոլշևիկներ, որոնք փորձում էին մարքսիզմը «բարելավել» մախիզմով: Լիկվիդատորները, օտզովիստները, տրոցկիստներն ու մյուս օպորտունիստները փորձում էին խորտակել անլեգալ մարքսիստական կուսակցությունը:

* * *

Ռեակցիայի ծանր տարիներին Լենինը շարունակում էր ղեկավարել կուսակցության ողջ աշխատանքը, սերտ կապեր էր պահպանում Ռուսաստանում



աշխատող ընկերների հետ, ոգեշնչում էր նրանց նոր պայքարի՝ գալիք հաղթանակի համար: 1908 թ. փետրվարին, արտասահման գնալուց անմիջապես հետո, «Пролетарий»-ում հրատարակված իր հոդվածներից մեկում Լենինը գրում էր.

*«Մենք կարողանում էինք երկար տարիներ աշխատել նախքան հեղափոխությունը: Իզուր չէ, որ մեզ կոչել են կարծրաքարեր: Սոցիալ-դեմոկրատները կազմել են մի պրոլետարական կուսակցություն, որը չի հուսահատվի առաջին ռազմական գրոհի անհաջողությունից, գլուխը չի կորցնի, ավանտյուրաներով չի տարվի: Այդ կուսակցությունը գնում է դեպի սոցիալիզմ, առանց կապելու իրեն և իր ճակատագիրը բուրժուական հեղափոխությունների այս կամ այն ժամանակաշրջանի վախճանի հետ: Հենց այդ պատճառով էլ այդ կուսակցությունը զերծ է նաև բուրժուական հեղափոխությունների թույլ կողմերից: Եվ այդ պրոլետարական կուսակցությունը գնում է դեպի հաղթանակ» (Երկեր, հ. 13, էջ 574):*

Հետագայում վերլուծելով բոլշևիզմի պատմության գլխավոր էտապները՝ ռեակցիայի տարիների (1907—1910) մասին Լենինը գրել է.

*«Ցարիզմը հաղթեց: Բոլոր հեղափոխական և օպոզիցիոն կուսակցությունները ջախջախված են: Անկում, բարոյալքում, պառակտումներ, տարընթացություն, ռենեգատություն, պոռնոգրաֆիա՝ քաղաքականության փոխարեն: Ավելի ուժեղ ձգտում դեպի փիլիսոփայական իդեալիզմը. միստիցիզմը որպես հակահեղափոխական տրամադրությունների զգեստավորում: Բայց միևնույն ժամանակ հենց մեծ պարտությունն է հեղափոխական կուսակցություններին և հեղափոխական դասակարգին տալիս իսկական և ամենաօգտակար դասը՝ պատմական դիալեկտիկայի դասը, քաղաքական պայքարն ըմբռնելու, այն մղելու հմտության և արվեստի դասը: Բարեկամները դժբախտության մեջ են ճանաչվում: Ջախջախված բանակները լավ են սովորում» (Երկեր, հ. 31, էջ 13):*

Լենինը նշում է, որ հենց ռեակցիայի տարիներին բոլշևիկները լրացրին՝ սովորածը: Նրանք սովորել էին հարձակվել, այժմ հարկ եղավ սովորել ավելի ճիշտ նահանջել:

*«Բոլոր օպոզիցիոն և հեղափոխական կուսակցություններից բոլշևիկները նահանջեցին ամենից ավելի կանոնավոր կերպով... նվազագույն վնասումով... նվազագույն պառակտումներով, նվազագույն բարոյալքումով, գործն ամենից ավելի լայն, ճիշտ ու եռանդով նորոգելու առավելագույն ընդունակությամբ» (Նույն տեղը, էջ 14):*

Բոլշևիկ-լենինյանները, ռեակցիայի դաժան պայմաններում բարձր պարզելով հեղափոխական մարքսիզմի դրոշը, պահպանեցին անլեգալ մարքսիստական կուսակցությունը, մասսաներին դաստիարակեցին ու կազմակերպեցին նոր պայքարի համար: Այդ պայքարում իրենց հաստատուն տեղն ունեին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, Վ. Ի. Լենինի Կովկասյան աշակերտներն ու զինակիցները:

* * *

Ռեակցիայի ծանր տարիներին Անդրկովկասի բոլշևիկները շարունակում էին իրենց կապերը Լենինի հետ: Այն իրականացվում էր սկզբում Ժնևում Լենինի մոտ գտնվող Մ. Ցխակայայի, իսկ ապա՝ Մ. Գ. Տորոշելիձեի, Մ. Գ. Փիլիայի և այլ կովկասցիների միջոցով, որոնք ռեակցիայի տարիներին ապրում էին արտասահմանում և անձնական կապեր էին հաստատել Լենինի և Կրուպսկայայի հետ: Ժնևում Ցխակայան հաճախ զրույցներ էր ունենում Լենինի հետ, որի հանձնարարությամբ էլ մասնակցում էր «Пролетарий» թերթի հրատարակությանն ու տարածմանը, Կովկասից ստանում էր թղթակցություններ թեր-

թի համար, մշտական նամակագրություն ուներ Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների հետ:

Բոլշևիկյան թերթում տպագրված Լենինի հոդվածները և նրա այլ աշխատություններ, Ռուսաստանի տարբեր վայրերին ուղարկված նրա բազմաթիվ նամակները հսկայական նշանակություն ունեցան տեղական կուսկազմակերպությունների ամրապնդման, բազմաթիվ թշնամիների դեմ նրանց մղած պայքարում: Անդրկովկասի բոլշևիկներն անշեղորեն ղեկավարվում էին լենինյան տակտիկայով, հմտորեն զուգակցում լեգալ և անլեգալ աշխատանքը, մերկացնում մենշևիկ-լիկվիդատորների, օտզովիստների և մյուս հակակուսակցական հոսանքների դավաճանական վարքագիծը: Այս ասպարեզում մեծ դեր էին կատարում Ստ. Շահումյանը, Ի. Ստալինը, Մ. Ազիզբեկովը, Պ. Ջափարիձեն, Վ. Ֆիոլետովը, Վ. Եֆիմովը (Սարատովեց), Ս. Սպանդարյանը, Վ. Կասպարովը, Փ. Մախարաձեն, Ն. Նարիմանովը, Ա. Ենուկիձեն, Գ. Օրջոնիկիձեն, Մ. Մամեդյարովը, Ս. Էֆենդիևը, Ալ. Մյասնիկյանը, Ս. Կասյանը, Բ. Սարդարովը և ուրիշներ:

1908 թ. հուլիսի 27-ին Մ. Ցխակայային գրած նամակում Ստ. Շահումյանը հայտնում էր, որ Կովկասյան բոլշևիկները հաստատ համոզված են, որ Լենինի դիրքորոշումը ճիշտ է և մեծ անվստահությամբ են վերաբերվում էմպիրիոմոնիզմին (տե՛ս Երկեր, հ. 2, էջ 40): Էմպիրիոմոնիզմը մախիզմի տարատեսակն էր Ռուսաստանում, որ ստեղծել էր Ա. Բոգդանովը: Հայտնելով փիլիսոփայությամբ իրենց հետաքրքրվելու մասին՝ Շահումյանը նշում էր մարքսիզմի լրացումը լինել ցանկացող նոր «իզմերից» մաքրվելու անհրաժեշտությունը:

*«Կուսակցության մեջ մեզ ավելի անհասկանալի երևույթ է թվում,— գրում էր Շահումյանը,— այսպես կոչված «օտզովիզմը»: Ուղղակի անհավատալի և ծայրաստիճան վիրավորական է թվում, որ նման հայացքները, նման մտածողությունը կարող են տեղ գտնել լուրջ ս. դ. կուսակցության շարքերում» (նույն տեղը, էջ 41):*

1908 թ. մարտ-ապրիլին, երբ ՌՍԴԲԿ Մոսկվայի կազմակերպություններում քննարկվում էին III Պետական դումայում սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի գործունեության արդյունքները, կուսակցության մի շարք անդամներ պահանջեցին ետ կանչել ֆրակցիան և բոյկոտել դուման: Այն պայմաններում աշխատանքը լեգալ կազմակերպություններում նրանք համարում էին անօգուտ: Գտնելով, որ այդ պահանջը կարող է կուսակցությանը մեկուսացնել մասսաներից, Լենինը օտզովիստներին անվանեց «շուռ տված լիկվիդատորներ»:

Նամակի վերջում Շահումյանը գրում էր.

*«Հաղորդիր Իլյիչին մեր ողջույնը և հայտնիր մեր վերաբերմունքը ձեզ զբաղեցնող հարցերի նկատմամբ: Մենք կուզենայինք նամակագրություն ունենալ նրա հետ, ուղարկիր մեզ նրա հասցեն» (նույն տեղը, էջ 42):*

1908 թ. նոյեմբերին Ցխակայային ուղարկած մեկ այլ նամակում Շահումյանը տալիս է Անդրկովկասում բոլշևիկների աշխատանքի խոր վերլուծությունը, նրանց անսահման նվիրվածությունը Լենինին:

*«Աշխատանքի պայմանները, Թանկագին Միխա, սոսկալի դժվարացել են,— գրում էր նա,— մեզ տառացիորեն խաշում են, ամեն կողմից թքակոծում են, ստորացնում: Բացի դրանից, ռեակցիան բանվորների մեջ (ներքին ռեակցիան) օրեցօր ուժեղանում է, մեզ երբեմն լքում են բանվորներին պատկանող լավագույն ընկերները: Բայց մենք չենք վհատվում: Հավատը դեպի ապագան և սերը դեպի մեր գործն անսպառ եռանդ են ներշնչում մեզ...» (նույն տեղը, էջ 36):*



Այնուհետև խոսելով ներկուսակցական տարաձայնությունների ժամանակ իրենց դիրքորոշման մասին՝ Շահումյանն ընդգծում է, որ իրենք ամբողջովին Իլյիչի կողմն էին (տե՛ս նույն տեղը, էջ 67):

Բոգդանովը Ցխակայայի միջոցով ծանոթանում է Շահումյանի նամակին և, այդ կապակցությամբ հայտնելով իր դժգոհությունը, փորձում է պարզաբանումներ տալ: Սակայն Անդրկովկասի բոլշևիկները մնում են իրենց կարծիքին, լենինյան դիրքերում և Ժնևում գտնվող Տորոշելիձեին խնդրում լրացուցիչ տեղեկություններ տալ: Տորոշելիձեն պատասխան նամակ է գրում Բաքվի Բաիլովի բանտում գտնված Օրջոնիկիձեին, որը նույնպես դատապարտել էր Բոգդանովի վարքագիծը: Նամակում նշվում էր, որ «Пролетарий»-ի խմբագրությունից Բոգդանովի հեռանալու պատճառը թերթի էջերում փիլիսոփայական դիսկուսիա սկսելու նրա պահանջի մերժումն էր: Մինչդեռ Բոգդանովը ձգտում էր ժխտել այդ և մեղադրել Անդրկովկասի բոլշևիկներին, որ իբր նրանք գործի մի շարք հանգամանքներ չեն պատկերացնում: Օրջոնիկիձեն խնդրում է Տորոշելիձեին հայտնել Լենինին իրենց դիրքորոշման մասին, որը կատարվում է:

* * *

Ռուսաստանում կուսակցական աշխատանքի զարգացման մեջ շրջադարձային կետ հանդիսացավ ՌՍԴԲԿ հինգերորդ (Համառուսաստանյան) կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1908 թ. դեկտեմբերին, Փարիզում: Լենինը կոնֆերանսի պատգամավոր էր ընտրված ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպությունից, բայց պաշտոնապես ՌՍԴԲԿ Կենտկոմի ներկայացուցիչն էր:

Կոնֆերանսում Լենինը հանդես եկավ «Արդի մոմենտի և կուսակցության խնդիրների մասին» զեկուցումով ու ճառերով՝ դումայական ֆրակցիայի, կազմակերպական և այլ հարցերի մասին: Լենինի առաջարկությամբ կոնֆերանսը դատապարտեց լիկվիդատորներին, օտզովիստներին և ուլտիմատիստներին ու բոլոր կուսկազմակերպություններին կոչ արեց վճռական պայքար մղելու կուսակցության լիկվիդացման բոլոր փորձերի դեմ: «Ազգային կազմակերպությունները տեղերում միավորելու մասին» բանաձևում կոնֆերանսը նշում էր.

*«Այդ միավորումը պետք է լինի ամեն մի առանձին վայրում ս. դ. կազմակերպությունների միասնության սկզբունքից և վճռականորեն դեմ է արտահայտվում այն բանին, որ միավորման հիմքում դրվի ֆեդերալիզմի սկզբունքը»:*

Կոնֆերանսից անմիջապես հետո Լենինի մասնակցությամբ տեղի ունեցավ ՌՍԴԲԿ Կենտկոմի պլենում, որտեղ քննարկվեցին նաև Կովկասյան կազմակերպությունների մասին հարցեր: Պլենումը որոշեց Կովկասյան կազմակերպությունների մարզային կոմիտեի ուշադրությունը հրավիրել ըստ հնարավորին մոտիկ ժամկետում հայկական կազմակերպությունների հետ միավորվելու անհրաժեշտության վրա՝ ելնելով ՌՍԴԲԿ V (Լոնդոնի) համագումարի որոշումներից (տե՛ս ՍՄԿԿ-ն բանաձևերում և որոշումներում...», էջ 256): Այս բանաձևի ընդունման ժամանակ մենշևիկ լիկվիդատորներ Իզորը և Պյոտրը (Ռամիշվիլին) ձեռնպահ են մնում: Որոշվում է պլենումում քննարկված 7 հարցերի, այդ թվում նաև «Հայերի հետ միավորման մասին» կազմել տեքստ՝ թերթերում հրապարակելու համար:

Պլենումը հատուկ բանաձևով («Թիֆլիսի թերթիկը») դատապարտում է Անդրկովկասյան կազմակերպությունների մարզային կոմիտեի թերթիկում կուսակցության բարձրագույն հաստատությունների հասցեին արված մեղադրանքը՝ Երևանյան հրապարակում կատարված էքսպրոպրացիայի գործի առնչությամբ (տե՛ս նույն տեղը, էջ 257)[1]:

Բարձր գնահատելով կոնֆերանսի նշանակությունը, Լենինը 1909 թ. հունվարին «Ճանապարհի վրա» հոդվածում գրել է.

*«ՌՍԴԲԿ վերջերս կայացած համառուսաստանյան կոնֆերանսը կուսակցությունը հանում է ճանապարհի վրա և, ըստ երևույթին, դարձակետ է հանդիսանում ռուսական բանվորական շարժման զարգացման մեջ հակահեղափոխության հաղթությունից հետո» (Երկեր, հ. 15, էջ 426):*

ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեն իր ընդհատակյա տպարանում մեծ տպաքանակով վերահրատարակեց կոնֆերանսի բանաձևերը, կցելով նրանց հատուկ դիմում:

* * *

Բոլշևիկյան կուսակցության կյանքում կարևորագույն իրադարձություն էր Վ. Ի. Լենինի *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* գրքի հրատարակությունը 1909 թ. մայիսին: Մարքսիստական այդ կլասիկ աշխատության մեջ Լենինը ջախջախում էր ռուսական մախիստների և նրանց օտարերկրյա փիլիսոփայական ուսուցիչների հակամարքսիստական հայացքները, տալիս գիտության նորագույն հայտնագործությունների փիլիսոփայական ընդհանրացումը, պաշտպանում մարքսիզմի թեորիական հիմքերը՝ դիալեկտիկան և պատմական մատերիալիզմը՝ իդեալիստական հարձակումներից:

Լենինի գիրքը անգնահատելի դեր խաղաց նաև Անդրկովկասի բոլշևիկների և առաջավոր բանվորների կյանքում, դարձավ նրանց տեսական սուր զենքը: Մինչև *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* աշխատության հրատարակությունը մարքսիստական փիլիսոփայության ոչ բոլոր հարցերն էին պարզ բոլշևիկների համար: ՌՍԴԲԿ-ի մեջ, ինչպես արտասահմանում, այնպես էլ Ռուսաստանում սուր վեճեր էին լինում, որոնց մասնակցեցին կովկասյան շատ բոլշևիկներ:

ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվում պահպանվում է Ստ. Շահումյանի «Ռեֆերատ ազգային հարցի մասին» աշխատությունը, որը գրված է ռեակցիայի տարիներին և առաջին անգամ տպագրվել է նրա երկերի հայերեն հրատարակության երկրորդ հատորում: Ցխակայային գրած 1908 թ. նոյեմբերի նամակում Շահումյանը, ծայր աստիճան բացասական կարծիք հայտնելով Բոգդանովի էմպիրիոմոնիզմի մասին, նշում էր.

*«Կեցության ու գիտակցության նույնության նրա դրույթը, ըստ իս, կործանում է Մարքսի սիստեմը» և ապա ավելացնում. «Բայց, կրկնում եմ, մինչև լրիվ ծանոթանալը կարծիքս համարում եմ ոչ վերջնական» (Երկեր, հ. 2, էջ 67):*

Ռեֆերատում, որը Շահումյանն ավարտել է *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* գրքի հրատարակումից հետո, նա անվերապահորեն ու հստակ ընդգծում է.

[1] *Խոսքը 1907 թ. հունիսի 13-ին Թիֆլիսի Երևանյան հրապարակում Կամոյի ղեկավարությամբ կատարած էքսպրոպրացիայի մասին է:*



*«Ով ծանոթ է բուրժուական փիլիսոփայության և հասարակական գիտությունների մեջ այժմ իշխող «էմպիրիոկրիտիցիզմ» կոչվող «նոր» ուղղության հետ, նրա համար հասկանալի կլինի, որ այդ երևույթը մի բացառիկ և պատահական երևույթ չէ: Նույնացնել իրականությունը «գիտակցության» հետ, «գաղափարի» հետ և ապա ժխտել այդ իրականությունը հանուն վերացական «գաղափարի» հետ միստիկական ու ֆանտաստիկական կերպարանքով ներկայացնել կենդանի հասարակական պրոբլեմները և միամիտ ընթերցողների աչքին թոզ փչել, շփոթություն առաջացնել անգիտակից մասսաների ուղեղներում,— ահա թե ինչ է տալիս հասարակական գիտությունների մեջ «կրիտիցիզմը», բուրժուական փիլիսոփայության «վերջին խոսքը» (նույն տեղը, էջ 229):*

Պահպանվել են Մ. Դավիթաշվիլու այն ժամանակվա փիլիսոփայական նամակները և գրառումները, որոնց մեջ նա խիստ քննադատում է մախիզմը: Շարադրելով Վ. Ի. Լենինի *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* գրքի բովանդակությունը՝ Դավիթաշվիլին պաշտպանում է լենինյան դրույթները:

Ի դեպ, Լենինի փիլիսոփայական հայացքների ազդեցությունն ակներև է նաև Փ. Մախարաձեի այն առաջաբանի վրա, որը զետեղված է նրա թարգմանած Կ. Կաուցկու *Կարլ Մարքսի տնտեսական ուսմունքը* գրքում:

Արտասահմանում փիլիսոփայական դիսկուսիաների ժամանակ լենինյան դիրքերի պաշտպանությամբ հանդես է գալիս Մ. Տորոշելիձեն: Ժնևում նա հանդիպում էր Լենինին, լսում նրա զեկուցումները, ելույթները, պայքարում էր օտզովիզմի և էմպիրիոկրիտիցիզմի դեմ: Այդ մասին նա հետագայում գրել է. «Կապ պահպանելով ընկ. Լենինի հետ, մասնակցելով նրա խմբակներին (նա մեկ կարդաց մի քանի զեկուցում), ես միշտ պայքարում էի և՛ օտզովիզմի, և՛ էմպիրիոկրիտիցիզմի դեմ»[1]:

1909 թ. մայիսի 19-ին, *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* գրքի մասին Բաքվի մամուլում հաղորդում տպագրվելուց վեց օր հետո, «Бакинские вести» թերթում Լենինի աշխատության մասին գրախոսականով հանդես է գալիս Ա. Ջափարիձեն՝ «Т. Н.» ստորագրությամբ: Նա ընթերցողներին հայտնում է, որ «Հենց նոր լույս է տեսել Վլ. Իլյիչի (Լենինի) ծավալուն գիրքը՝ նվիրված Մախի ու Ավենարիուսի և նրանց ռուս աշակերտների քննադատությանը»: Նշելով, որ Լենինը մերկացնում է փիլիսոփայական «նոր» ուղղությունները որպես վերադարձ Բերկլիի և Յումի ուսմունքները, Ջափարիձեն ընդգծում է.

*«Սպանիչ, իր մատչելիությամբ հազվագյուտ քննադատության հետ միասին հեղինակը զուգահեռաբար զարգացնում է նաև դիալեկտիկական մատերիալիզմի հայացքներն իր քննարկած հարցերում. իր ողջ ուշադրությունը կենտրոնացնում է իդեալիզմի և մատերիալիզմի միջև որպես անդունդ ընկած արմատական հարցի՝ գիտակցության նկատմամբ կեցության հարաբերության վրա»[2]:*

Ողջունելով Լենինի գրքի երևան գալը, որպես մեծ ներդրում մարքսիստական գրականության մեջ, Ջափարիձեն նշում է.

*«Չնայած ռուսերեն լեզվով մարքսիստական գրականությունը շատ հարուստ է, բայց Իլյիչի գրքի երևան գալը չի կարելի չողջունել: Այն հիանալի զենք է այն շիլափլավի դեմ, որով սնում են միջին ռուս ընթերցողին մեր մախիստները, սխալ շարադրելով Մախին, Ավենարիուսին և լիովին խեղաթյուրելով Մարքսի-Էնգելսի ուսմունքը»:*

Այս գրախոսականը վկայում է, որ Բաքվի բոլշևիկները, հիմնովին ուսում-

[1] *ՄԼԻ-ի վրացական ֆիլիալի արխիվ, ֆ. 7, գ. 413, թ. 300:*

[2] *Այս գրախոսականը վրացի ընկերները հայտնաբերել և վերահրատարակել են* «Вопросы истории КПСС» *հանդեսում (№ 8, 1969 թ.):*

նասիրելով Լենինի գիրքը, կարողանում էին հմտորեն պրոպագանդել այն լեգալ մամուլում:

*Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* գիրքը խոր ազդեցություն է թողնում կուսակցական կադրերի վրա և օգնում նրանց ճիշտ հասկանալու փիլիսոփայական դիսկուսիայի էությունը: Խորապես ուսումնասիրելով Լենինի աշխատությունը՝ Ստալինը 1909 թ. դեկտեմբերին «Пролетарий»-ի խմբագրությանն ուղարկած նամակում ընդգծում էր, որ այն «Մարքսիզմի փիլիսոփայության (իմացաբանության) դրույթների իր տեսակի մեջ միակ ամփոփումն է»:

1910 թ. հոկտեմբերին գնալով արտասահման՝ Մ. Փիլիան Փարիզում հանդիպում է Լենինին և հայտնում նրան, որ Անդրկովկասի բոլշևիկները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* գիրքը և վճռականորեն մերժում են Բոգդանովի և այլ ռևիզիոնիստների հայացքները:

Լենինյան դիրքերից մախիզմի միստիկական բնույթի, աստվածաշինարարության ու աստվածորոնման մերկացման հոդվածներով հանդես եկան Ս. Սպանդարյանն ու Ա. Մելիքյանը: Երևանում լույս տեսնող «Նոր ձայն» շաբաթաթերթում քննադատելով Ե. Ֆրանգյանի Ն. Կ. *Միխայելովսկին որպես փիլիսոփա-սոցիոլոգ* աշխատությունը, Արշավիր Մելիքյանը ցույց էր տալիս, որ սուբյեկտիվ սոցիոլոգիան գիտություն չէ, ուստի, դրա ջատագով Միխայելովսկու մեծարումը դաշնակցական թերթու «փիլիսոփայի» կողմից անհիմն է: Էմպիրիոկրիտիցիզմը Մելիքյանը համարում էր իդեալիզմի ռեակցիոն տարատեսակներից մեկը (տե՛ս № 8, 1911 թ.):

* * *

Ուղեցույց ունենալով Վ. Ի. Լենինի աշխատությունները, ղեկավարվելով V կոնֆերանսի և «Пролетарий»-ի ընդլայնված խմբագրության խորհրդակցության որոշումներով՝ Անդրկովկասի բոլշևիկները խոշոր հաջողությունների հասան իրենց կազմակերպությունների ամրապնդման, անլեգալ և լեգալ կուսակցական աշխատանքի զուգորդման գործում:

Լիկվիդատորների դեմ մղած պայքարում Լենինի կարևոր հենակետերից էր ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպությունը: 1907 թ. հոկտեմբերին Բաքվում տեղի ունեցավ համաքաղաքային կուսակցական կոնֆերանս, որը, լսելով Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Վ. Ստուրուայի և ուրիշ բոլշևիկների ելույթները, միահամուռ դատապարտեց լիկվիդատորությունը, պաշտպանեց լենինյան կուսակցական գիծը և ընտրեց ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտե՝ բոլշևիկյան կազմով: 1908 թ. սեպտեմբերին Ստ. Շահումյանը «Бакинский рабочий» թերթում գրում էր.

*«Մենք ներկայումս դնում ենք ապագայի հիմքը. երբ մենք ամրացնենք և ընդլայնենք մեր կազմակերպությունը, այն ժամանակ ոչ մի ռեակցիա սարսափելի չի լինի մեզ համար...» (Երկեր, հ. 2, էջ 62):*

Հետևողականորեն պայքարելով կուսակցության պառակտիչների դեմ, Անդրկովկասի բոլշևիկները պաշտպանեցին և հետևողականորեն կիրառեցին Գ. Վ. Պլեխանովի գլխավորած մենշևիկ կուսակցականների հետ բլոկի լենինյան գիծը: Պլեխանովը գտնում էր, որ չի կարելի պաշտպանել լիկվիդատորությունը առանց հրաժարվելու հեղափոխական մարքսիզմից:

Կովկասի բոլշևիկներն օգտագործում էին Պլեխանովի հոդվածները Մախի և նրա ռուսական հետնորդների դեմ: Հայտնի լիկվիդատոր Ն. Ժորդանիան



Պլեխանովին գրած նամակում ստիպված էր հայտնել. «Ձեր «Дневник»-ը մեզ մոտ Կովկասում պայթեց ռումբի նման... Այդ հարցի նկատմամբ հետաքրքրությունն աճեց անասելիորեն, ամեն տեղից ժողովներ և դիսկուսիաներ էին պահանջում» (տե՛ս Պլեխանովի տան արխիվ, ф. 2044, գործ 1653, Լենինգրադ):

1910 թ. Ժնևում Պլեխանովի առաջաբանով լույս է տեսնում հին սոցիալ-դեմոկրատ, պլեխանովական Ս. Տ. Արկոմեդի (Գ. Ղարաջյան) *Բանվորական շարժումը և սոցիալ-դեմոկրատիան Կովկասում* գիրքը, որի հակալիկվիդատորական ուղղությունն արժանանում է Լենինի պաշտպանությանը:

Լիկվիդատորները և դաշնակցականները սվիններով դիմավորեցին Արկոմեդի գրքի հրատարակությունը: Դաշնակցության կենտրոնական օրգան «Դրոշակ» թերթը, կրպարտելով Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիային և նրա ղեկավարած հեղափոխական շարժումները, մեղադրում է Արկոմեդին, որ նա իր գրքում մերկացնում է դաշնակցականներին, անվանելով նրանց «բուրժուանացիոնալիստական, հակահեղափոխական ու ռեակցիոն»:

Մենշևիկ կուսակցականների հետ բլոկի լենինյան տակտիկան Անդրկովկասում լուրջ հաջողություններ ունեցավ: Շատ մենշևիկ-կուսակցականներ, խզելով իրենց կապերը լիկվիդատորներից, ընդգրկվում են կուսակցական աշխատանքի մեջ, աշխատակցում բոլշևիկյան մամուլին: Նրանցից ոմանք հետագայում դարձան բոլշևիկներ, հավատարիմ լենինյաններ (Յակով Զևինը և ուրիշներ):

Ռեակցիայի տարիներին անլեգալ և լեգալ աշխատանքի զուգորդման լենինյան տակտիկան հսկայական նշանակություն ունեցավ ցարիզմի և կապիտալիզմի դեմ հեղափոխական ուժերի համախմբման, նոր պայմաններում կուսակցական աշխատանքի բազմակողմանի ծավալման համար նաև Անդրկովկասում: Ինչպես միշտ, այնպես էլ այս դժվարին ժամանակաշրջանում, Կովկասյան բոլշևիկները մինչև վերջ հավատարիմ մնացին Լենինին:

## РЕЗЮМЕ


Статья посвящена анализу борьбы большевиков Закавказья против реакции в области идеологии в 1907—1910 гг.. Мысли развитые В. И. Лениным в книге «Материализм и эмпириокритицизм» и теоретические положения стали руководящими для всей партии, в том числе и для большевиков Закавказья, где идеологическая борьба приняла острые формы.

Кавказские соратники и ученики Ленина постоянно поддерживали связь с вождем партии, руководствуясь его указаниями, пропагандировали марксистскую философию. Они выступали с рядом ярких публицистических статей, резко бичевали махистов и других ревизионистов, которые пытались подменить диалектический материализм «научным» позитивизмом.

Большевики Закавказья, составляя один из боевых отрядов российской пролетарской партии и, руководствуясь ленинскими принципами, в годы реакции, развернули многогранную деятельность на идеологическом фронте, отстаивали теоретическую основу Коммунистической партии — марксистскую философию.








Կուսակցական ուսուցման սիստեմի ունկնդիրների համար

Գ. ՊՈՊՈՎ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ*

*Հասարակական սեփականության առկայությունը հսկայական հնարավորություններ է բացում արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում։ Բայց որպեսզի այդ հնարավորությունները գործի դրվեն, որպեսզի դրանք իրականում հասցնեն արտադրության աճմանը, բարեկեցության վերելքին, անհրաժեշտ է արդյունավետ կերպով աշխատող կառավարման սիստեմ։ Սոցիալիզմի պայմաններում կառավարման սիստեմը հանդես է գալիս որպես մի կարևոր գործոն, որն իրացնում է հասարակական սեփականության մեջ ամփոփված հնարավորությունները։*

## XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Տնտեսական զարգացման արդի փուլում արտադրության կառավարումը կատարելագործելու պրոբլեմներին բացառիկ կարևոր նշանակություն է տրվում։ XXIV համագումարի բանաձևերում և դիրեկտիվներում, Լ. Ի. Բրեժնևի և Ա. Ն. Կոսիգինի զեկուցումներում, պատգամավորների ելույթներում մեծ ուշադրություն է նվիրվում այդ հարցերին։ Առաջին անգամ հնգամյա պլանում հատուկ բաժին կա կառավարման մասին։

Կառավարման պրոբլեմների հարաճուն նշանակությունը պայմանավորող գլխավոր գործոնները ժամանակակից արտադրության բնույթն ու մասշտաբներն են։ XXIV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընդգծված է, որ կառավարմանն ուղղված նոր պահանջները նախ և առաջ արտադրության աճի արդյունք են։ Արտադրության բարդությունը, նրա չափերի աճը կյանքի են կոչում նաև կառավարման համապատասխան ձևեր։

Կարևոր գործոն է արտադրության սոցիալական կողմը ևս։ Հասարակա-

* Տպագրվում է աննշան հապավումներով։ Խմբ.։



կան սեփականությունը պայմանավորում է օբյեկտիվ տնտեսական օրենքների ճանաչման և օգտագործման հնարավորությունն ու անհրաժեշտությունը, այդ սեփականությանը ներհատուկ է պլանաչափությունը։ Աշխատանքի նոր, սոցիալիստական տիպի կոոպերացումը նա զարգացնում է ամբողջ հասարակության մասշտաբներով և հիմք է ստեղծում բոլոր աշխատավորների արմատական շահերի միասնության համար։ Այդ ամենը պարզաբանում է այն բացառիկ դերը, որ սոցիալիզմի ժամանակ խաղում է արտադրության կառավարումը։ Պատահական չէր, որ կապիտալիստների իշխանության տապալման խնդրից, ազգայնացման խնդրից հետո Վ. Ի. Լենինը առաջին պլանն էր քաշում կառավարման խնդիրը։ Սովետական իշխանության հերթական խնդիրները նշանավոր աշխատության մեջ Վ. Ի. Լենինն ընդգծում է, որ առանց կազմակերպումն ու կառավարումը կարգավորելու իրականում անհնարին է հանրայնացնել արտադրությունը, և ազգայնացումը կարող է մնալ սոսկ դեկլարացիա։

Ներկայումս ի հայտ են եկել կառավարման դերն ուժեղացնող լրացուցիչ գործոններ։ Իսկ ի՞նչ գործոններ են դրանք։ Ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, այդ նախ և առաջ գիտատեխնիկական հեղափոխությունն է։ Այսօր գիտությունն ու տեխնիկան արտադրությունն ապահովել են տեխնիկական ու տեխնոլոգիական նորությունների ու նորամուծությունների վիթխարի հոսքով։ Եվ ավելի արագ է զարգանում այն էկոնոմիկան, որն ավելի լիակատար, ավելի արդյունավետ կերպով է յուրացնում այդ նորամուծությունները։

Նորամուծությունների յուրացման պրոցեսը նախ և առաջ կախված է սոցիալական հարաբերություններից, ֆորմացիայի բնույթից։ Եվ որքանով որ սոցիալիստական արտադրության մեջ գլխավորը դարձել է կառավարման պլանային սիստեմը, այնքանով էլ մեր պայմաններում նորամուծությունների պրոբլեմը, տեխնիկական առաջընթացի պրոբլեմը մեծ չափով կառավարչական, կազմակերպական պրոբլեմ է։ Կառավարումը պետք է պայմաններ ստեղծի արտադրության մեջ տեխնիկական նվաճումներ արմատավորելու, այդպիսի նվաճումների որոնման գործում տնտեսական շահագրգռվածությունը բարձրացնելու, դրանց արմատավորումը կազմակերպական, տեխնիկական, ֆինանսական, մատակարարման հարցերի տեսակետից ապահովելու համար, պատասխանատվության գործարար սիստեմ ձևակերպելու նրանց նկատմամբ, ովքեր չեն յուրացնում նորը։

Դա պահանջում է կառավարման սիստեմի համապատասխան վերակառուցում։ Ներկայիս կառավարումը պետք է «տրամադրվի» տեխնիկական առաջընթացին, նրա համար նորամուծությունների յուրացումը ամենօրյա գործ է դառնում։ Սակայն գիտատեխնիկական հեղափոխությունը ոչ միայն նոր խնդիրներ է դնում կառավարման առաջ և նոր պահանջներ ներկայացնում նրան։ Այն միաժամանակ նրան զինում է գիտության ու տեխնիկայի նվաճումներով։ Կառավարման մեջ են մտնում էլեկտրահաշվիչ մեքենաները, մաթեմատիկական մեթոդները։ Սկսում է որոշակի դեր խաղալ հոգեբանությունը։ Դա բարձրացնում է կառավարման արդյունավետությունը, մեծացնում նրա հնարավորությունները, նրա ինֆորմացիոն կարողությունը։

Կառավարման դերի աճումը կապված է արդի փուլում սովետական էկոնոմիկայի զարգացման մյուս առանձնահատկությունների հետ, մասնավորապես, հանրային արտադրության ինտենսիֆիկացման հետ։ Տնտեսության զարգացման առավել արդյունավետ տեսակը ունի իր սկզբունքներն ու պրոբլեմները։ Գլխավորը, իհարկե, տեխնիկական առաջընթացի՝ աշխատանքի արտադրողականության անընդհատ աճման հիմքի, ապահովումն է։ Սոցիալիստական էկոնոմիկայում ինտենսիֆիկացման հսկայական ռեզերվ է հանդիսանում կազմակերպական գործոնը՝ արտադրության, աշխատանքի, կառավարման կազմակերպական կատարելագործումը։ Առանց կազմակերպական միջոցառումների խիստ դժվար է տեխնիկական առաջընթացի ապահովումը։

Այսպիսով, հանրային արտադրության ինտենսիֆիկացման խնդիրը հա-

տուկ ուշադրություն է պահանջում կազմակերպական բոլոր հարցերի և հատկապես կազմակերպական միջուկի՝ կառավարման սիստեմի, նկատմամբ։

Արդի պայմաններում կառավարման դերը բարձրացել է նաև այն պատճառով, որ մեր երկրում անցկացվող տնտեսական ռեֆորմը մտնում է մի նոր փուլ, երբ գնալով ավելի այժմեական է դառնում նոր տնտեսական մեխանիզմի կարգավորումը, նրա նորմալ աշխատանքի ապահովումը, կապերի կարգավորումը, կանոնների, ավանդույթների և սովորույթների ստեղծումը կառավարման բազմաթիվ մարմինների աշխատանքներում։

Կառավարման պրոբլեմների դերի բարձրացման վրա ներգործում է նաև հասարակական զարգացման սոցիալ-քաղաքական կողմը։ Կառավարման մեխանիզմի կատարելագործումը առաջ է բերում աշխատավորների նախաձեռնության աճ, ամրապնդում է նրանց վստահությունը անցկացվող որոշումների ճշմարտացիության մեջ, ուժեղացնում է իրենց առջև ծառացած խնդիրներն արագ և լավագույն կերպով կատարելու նրանց վճռականությունը։

Արդի զարգացման առանձնահատկությունն այն չէ, որ մենք առաջինը գիտակցեցինք կառավարման կարևոր դերը։ Սոցիալիզմի բոլոր հաջողությունները կապված են կառավարման սիստեմի գործունեության հետ։ Առանձնահատկությունն այն է, որ հիմա կառավարման դերը փոխվել է։ Արդի պայմաններում կառավարման պրոբլեմների դերի ու նշանակության աճը պայմանավորել են մի ամբողջ կոմպլեքս գործոններ, և կոմունիստական կուսակցության հսկայական ծառայությունն այն է, որ նա ուսումնասիրել է այդ պրոցեսը, վերլուծել դրա բովանդակությունն ու տենդենցները և այդ հիման վրա միջոցառումներ է մշակել ընթացիկ հնգամյակի պրակտիկ գործունեության բնագավառում։

## XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԱՋԱԴՐԱԾ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

XXIV համագումարը մշակեց, քննարկեց և հաստատեց միջոցառումների մի ներդաշնակ սիստեմ կառավարումը կատարելագործելու ասպարեզում։ Այդ սիստեմը նախ՝ ընդգրկում է տնտեսական ռեֆորմի հետագա զարգացումը։ Ընդ որում, նախատեսվում է ռեֆորմի զարգացումը «ընդլայնակի»՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի փոխադրումը պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի և «դեպի խորք»՝ ռեֆորմի մեխանիզմի կատարելագործումը կուտակված փորձի հիման վրա։

Պլանավորման բնագավառում նախատեսվում է մշակել երկարատև (10—15 տարվա) պլան, ուժեղացնել աշխատանքը սոցիալ-տնտեսական կանխատեսումների, տերիտորիալ և ճյուղային պլանավորումը զուգակցելու, ինչպես նաև պլանների կատարումն ստուգելու բնագավառում։

Կարևոր տեղ են գրավում կոմպլեքս միջոցառումները կառավարման կազմակերպական կառուցվածքը վարից վեր բարելավելու ասպարեզում։ Հնգամյակի ընթացքում շատ բան է նախատեսվում կատարել կառավարման պրոցեսները, կառավարչական աշխատանքի ոճն ու մեթոդների կազմակերպումը կատարելագործելու, պատասխանատվությունը բարձրացնելու հարցերով։ Նախատեսված է ստեղծել կառավարման առնվազն 1600 ավտոմատացված սիստեմ և խորացնել աշխատանքը կառավարման տեխնոլոգիան բարելավելու համար։

Կառավարման կատարելագործման աշխատանքի հաջողության համար շատ կարևոր է կադրերի ընտրության ու տեղաբաշխման, նրանց որակավորումը բարձրացնելու համար ուսուցման ներդաշնակ սիստեմի կարգավորման, դասախոսական կադրերով այդ սիստեմի ապահովման նպատակով տարվող աշխատանքների բարելավումը։

XXIV համագումարի նախատեսած միջոցառումների սիստեմը բնորոշ է, ամենից առաջ, նրանով, որ կառավարումը կատարելագործելու աշխատանքները պլանավորվում և դիտվում են որպես ժողովրդական տնտեսության զարգացման բաղկացուցիչ մաս։ Դա շատ կարևոր հանգամանք է։



Կառավարման կատարելագործման աշխատանքի նշանակությունը այնքան մեծ է և կենսագործվող միջոցների քանակով ու դրանց մասշտաբներով այդ աշխատանքն այնքան ծավալուն է դարձել, որ առանց կառավարումը կատարելագործելու պլանի իրացման անհնարին է կատարել արտադրության զարգացման պլանը։ Կառավարումը կատարելագործելու պլանն այդ տեսակետից նման է գիտության ու տեխնիկայի զարգացման պլանին. դրանք երկուսն էլ պետք է մշակվեն մինչև արտադրության զարգացման պլանների կազմումը և որոշակի չափով ազդեն արտադրության պլանների առաջադրանքների բովանդակության վրա։

Կառավարումը կատարելագործելու ծրագրի երկրորդ առանձնահատկությունը միջոցառումների լայն շրջանակն է, կառավարման պրոբլեմների ընդգրկման ամբողջականությունը։ Այդ միջոցառումների վերլուծությունը կարևոր է թեորիական տեսակետից։ Դա մեզ հնարավորություն կտա պատասխանելու արդեն վաղուց քննարկվող այն հարցին, թե ինչ խումբ պրոբլեմներ են վերաբերում կառավարման ոլորտին։ Զանազան աշխատություններում, այդ թվում նաև դասագրքերում, կառավարմանը վերաբերող գլուխները հաճախ սահմանափակվում են կառավարման կառուցվածքի հարցերով, երբեմն այնտեղ մտցվում են նրա տեխնիկայի և տեխնոլոգիայի պրոբլեմները։ XXIV համագումարի նյութերը հաստատում են նրանց տեսակետը, ովքեր հանդես են եկել կառավարման կատեգորիաների լայն մեկնաբանմամբ, որն ուղղված է «կառավարում» հասկացությունը միայն կառավարման մարմինների կառուցվածքի հարցերին կամ միայն ինֆորմացիոն ասպեկտի հանգեցնելու դեմ։

XXIV համագումարի նախատեսած միջոցառումների երրորդ առանձնահատկությունն այն է, որ համագումարի դիրեկտիվներում դրանք ենթարկված են որոշակի տրամաբանության, տրված են որոշակի հետևողականությամբ։ Կառավարման ռացիոնալացման տրամաբանության վերաբերյալ հարցը ամենևին էլ աննպատակ չէ։

Կառավարման պրոբլեմների մշակման գործում XXIV համագումարի նշանակությունը ոչ միայն այն է, որ նա բացահայտեց կառավարման բովանդակությունը, այլև տվեց կառավարման բաղկացուցիչ մասերի տրամաբանությունը. առաջնահերթ նշանակությունը տրվում է ռեֆորմի և կենտրոնացված պլանավորման հարցերին, այնուհետև կառավարման կազմակերպական կառուցվածքին, ընդհուպ մինչև ԱՀԿ (ավտոմատիկ հաշվիչ կառավարումը), կառավարչական աշխատանքի կազմակերպումը և այլն։ Այսպիսով, XXIV համագումարի նյութերում բովանդակվում է ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման գծով աշխատանքի լայն, ամբողջական, տրամաբանորեն փոխադարձաբար կապակցված ծրագիր, որ մշակված է որպես հեռանկարային պլան և մտցված էկոնոմիկայի զարգացման հեռանկարային պլանի մեջ։ Կառավարման կազմակերպումը կատարելագործելու ծրագրի բաղկացուցիչ մասն է հանդիսանում այնպիսի որոշակի միջոցառումների մշակումները, որոնց թվում դասվում են կառավարման կառուցվածքի և կառավարման պրոցեսների կազմակերպման կատարելագործումը։

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱՑՄԱՆ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ ԵՎ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՁԵՎԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Կառավարման կառուցվածքի կատարելագործման վերաբերյալ միջոցառումների թվում անհրաժեշտ է նախ և առաջ նշել ձեռնարկությունների, միավորումների կառավարման կառուցվածքի բարելավման նպատակով տարվող մեծ աշխատանքը։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումում Ա. Ն. Կոսիգինը մատնանշեց, որ նոր մինիստրությունները չեն կարող պատճենահանել այն, ինչը եղել է մինչև 1957 թ.։ Մինիստրությունները պետք է իրենց ուշադրությունը կենտրոնացնեն համապատասխան ճյուղերի զարգացման սկզբունքային հարցերի՝ տվյալ ճյուղի արտադրանքի նկատմամբ հասարակության պահանջմունքների ուսումնասիրման և այդ պահանջմունքները բավարարելու

համար միջոցների մշակման, միասնական տեխնիկական քաղաքականության
անցկացման, կադրերի ընտրության, տեղաբաշխման և ուսման վրա և այլն:
Բայց եթե նկատի առնենք մի շարք մինիստրությունների կառուցվածքը, ապա
կարելի է ասել, որ այդ գլխավոր խնդիրներով հաճախ զբաղվում են փոքր
ստորաբաժանումներ, ըստ էության մի քանի աշխատողներ: Նշվածներից
որոշ հարցեր, օրինակ, գիտական հետազոտությունների կառավարումը, ընդ-
հանրապես փոշիացած են տարբեր վարչություններում, բաժիններում և սեկ-
տորներում: Մինիստրությունների աշխատողների ճնշող մասը դեռևս կենտրո-
նացած է ընթացիկ աշխատանքով զբաղված ստորաբաժանումներում:

Կառավարման կառուցվածքի կատարելագործման գծով բոլոր միջոց-
առումների կենտրոնում դրված է արտադրական միավորումներ ստեղծելու
պրոբլեմը: Այդ պրոբլեմի լուծումից է կախված ճյուղային մինիստրություն-
ների, պլանային, ֆինանսական, մատակարարման և այլ ֆունկցիոնալ մար-
մինների գործողությունների հետագա փոփոխումը:

Միավորումները, որպես արտադրությունը կառավարելու կազմակերպ-
ման ձև, մի շարք լուրջ առավելություններ ունեն: Դրանք ձեռնարկությունների
համեմատությամբ, նախ՝ ավելի լավ պայմաններ են ստեղծում մասնագի-
տացման համար: Համեմատենք, օրինակ, ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի արդյունաբերու-
թյունը: Սովետական բանվորը հաճախ ավելի լավ, ավելի ձեռներեցորեն,
ավելի բարեխիղճ է աշխատում ամերիկյան բանվորի համեմատությամբ: Եվ,
այնուամենայնիվ, մեր արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողա-
կանությունը առայժմ ետ է մնում ամերիկյանից: Ինչո՞ւ: Դա մի զգալի չափով
բացատրվում է ձեռնարկությունների կազմակերպական կառուցվածքով: Այս-
պես, մեր մեքենաշինական գործարանները հաճախ կոմպլեքսային են, այս-
ինքն՝ հիմնական արտադրության մի քանի արտադրամասերը շրջապատված
են գործիքային, նախապատրաստման, ձուլման, նորոգման և այլ արտադրա-
մասերի մի ամբողջ «շքախմբով»: Եթե հիմնական արտադրության արտադրա-
մասերում զանգվածային արտադրության բազայի վրա գործադրվում են կատա-
րելագործված մեքենաներ, հոսքային հավաքման գծեր, ավտոմատացված տե-
ղակայանքներ և այլն, և ձեռք է բերվում աշխատանքի բարձր արտա-
դրողականություն, ապա պատկերն այլ է, օրինակ, ձուլման արտադրամա-
սում: Այստեղ արտադրությունը բազմաբնույթ է, ծավալով մեծ չէ, որպիսի
հանգամանքը դժվարացնում է մետաղի տարլցման կատարելագործված տեխ-
նոլոգիայի կիրառումը, մեծ է ձեռքի և ցածր որակյալ աշխատանքի տոկոսը,
աշխատանքի արտադրողականությունը զգալիորեն ցածր է, քան հիմնական
արտադրության բանվորներինը: XXIV համագումարի նյութերում մատնա-
նշված է, որ պետք է դադարեցնել կոմպլեքսային գործարանների շինարարու-
թյունը և կառուցել առավելապես մասեր արտադրող և տեխնոլոգիապես մաս-
նագիտացված գործարաններ: Միանգամայն ակնհայտ է, որ մի քանի մեքե-
նաշինական ձեռնարկություններ մեկ արտադրական միավորման մեջ մտցնե-
լը կազմակերպական նախադրյալներ է ստեղծում համակենտրոնացման և
մասնագիտացման պրոցեսների համար:

Ինչպես օժանդակ, այնպես էլ հիմնական արտադրություններում միա-
վորման առանձին ձեռնարկությունների մասնագիտացումը մեծ ազդեցու-
թյուն է թողնում աշխատանքի արտադրողականության աճի վրա: ՍՄԿԿ XXIV
համագումարում Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Պ. Ե.
Շելեստը հաղորդեց, որ Ուկրաինայի թեթև արդյունաբերության միավորում-
ների ձեռնարկություններում ի հաշիվ մասնագիտացման և կոոպերացման
արտադրանքի թողարկումը հնգամյակի ընթացքում աճել է 82,6 տոկոսով,
իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 50 տոկոսով: Զիլ արտադրական
միավորման մեջ, ինչպես նշեց կուսակցության Մոսկվայի քաղկոմի առաջին
քարտուղար Վ. Վ. Գրիշինը, հինգ տարվա ընթացքում ֆոնդահատույցը աճել է
10 տոկոսով, ավտոմոբիլների թողարկումը՝ 52 տոկոսով:

Միավորումը կարող է ավելի արդյունավետ կերպով հիմքեր ստեղծել
արտադրության հետ գիտության կապերի համար: Արդի պայմաններում



տեխնիկայի և տեխնոլոգիայի բնագավառում նվաճումները դժվար ուղի են
անցնում: Դրանց ստեղծմանը մասնակցում են տեսական հետազոտություն-
ներով զբաղված հիմնարկություններ, կիրառական պրոբլեմներ մշակող ինս-
տիտուտներ, փորձա-կոնստրուկտորական կազմակերպություններ, փորձա-
րարական ձեռնարկություններ և, վերջապես, գործարանների մեծ մասը:
Նորամուծությունների ճանապարհին եղած որոշակի խոչընդոտները վերացնե-
լու համար անհրաժեշտ է նախ և առաջ ֆինանսավորման, խթանման, հիմնա-
վորման և այլ պահանջների լավ կարգավորված տնտեսական մեխանիզմ:

Պակաս կարևոր չեն նաև կազմակերպական նախադրյալները: Մասնավո-
րապես, նորամուծությունների մշակման, յուրացման և արմատավորման
պրոցեսը, անտարակույս, ավելի պարզ և ավելի շուտափույթ կկենսագործվի,
եթե «հետազոտում-արտադրություն» շղթայում մի քանի հիմնարկություններ
միավորված են մեկ միավորման մեջ և այլևս ինքնուրույն վարչական միա-
վորներ չեն հանդիսանում: Օրինակ, կոնստրուկտորական բյուրոներն ու փոր-
ձարարական արտադրամասերը կարելի է մտցնել այն միավորման մեջ, որում
մտել են դրանց կողմից սպասարկվող ձեռնարկությունները:

Մի շարք դեպքերում կարելի է միավորման մեջ մտցնել ամբողջ հետա-
զոտական ինստիտուտ: Այդպիսի միավորումը անմիջականորեն կկապի գի-
տությունն ու արտադրությունը և դրանով իսկ ավելի լիակատար կերպով
կնպաստի արդի կառավարման կարևորագույն պրոբլեմի լուծմանը՝ գիտա-
տեխնիկական հեղափոխության արդյունքների ամենաարագ յուրացումն ապա-
հովելուն: Լենինգրադի որոշ միավորումներում նոր արտադրանքի պատրաստ-
ման ու յուրացման ժամկետները կրճատվել են կրկնակի և նույնիսկ եռակի
անգամ: Միավորումների, որպես կառավարման ձևի, առավելություններից
մեկն էլ այն է, որ դրանք նպաստում են միջճյուղային՝ օրինակ, գյուղատնտե-
սության և վերամշակող արդյունաբերության, սպառման առարկաների ար-
տադրության և առևտրի կապերի լավագույն կազմակերպմանը և այլն: Մոլ-
դավիայում, օրինակ, ստեղծված են «սովխոզ-գործարաններ», «ֆիրմա-գոր-
ծարաններ» և կազմակերպվում են հանրապետական ու միջշրջանային ավելի
խոշոր ագրարային-արդյունաբերական կոմպլեքսներ: Մեծ ապագա ունեն
նաև «ձեռնարկություն-խանութ» տիպի միավորումները և առևտրա-արդյու-
նաբերական այլ միավորումներ:

Միավորումը պայման է ստեղծում նաև կառավարման տերիտորիալ և
ճյուղային սկզբունքների լավագույն զուգակցման համար: Ունենալով ճյու-
ղային կազմակերպման բոլոր առավելությունները, այն միևնույն ժամանակ
ներառնում է որոշակի տերիտորիայում գտնվող մի շարք գործարաններ և
զգալիորեն ավելի մեծ չափով, քան առանձին գործարանը, կարող է զբաղվել
տերիտորիալ կառավարման պրոբլեմներով՝ տվյալ շրջանի աշխատանքային
միջոցների օգտագործմամբ, հումքային բազայի ստեղծմամբ, ճանապարհա-
շինարարական և բնակարանա-շինարարական հարցերով և այլն:

Միավորման մեջ կարելի է կենտրոնացնել կառավարման ֆունկցիաներ և
դրանով իսկ համապատասխան պայմաններ ստեղծել կառավարման արտա-
դրողական տեխնիկա ներդնելու համար, արմատավորել կառավարման ավտո-
մատացված սիստեմների ավելի զարգացած ձևեր: Միավորումը կարող է ավե-
լի լավ օգտագործել բանվորական, ինժեներա-տեխնիկական և կառավարչա-
կան կադրերը, ավելի հեշտությամբ կազմակերպել դրանց ուսուցումը, իսկ
դա շատ կարևոր է գիտա-տեխնիկական հեղափոխության ժամանակաշրջա-
նում:

Միավորումները կարող են ավելի լրիվ լուծել արտադրողական կոլեկ-
տիվների զարգացման սոցիալական հարցերը: Դրանք, օրինակ, բնութագր-
վում են կառավարման մեծ դեմոկրատիզմով: Դրանցում կան դիրեկտորների
խորհուրդ, մեծ հնարավորություններ են ստեղծված գյուտարարների բյուրոյի,
գիտատեխնիկական կազմակերպությունների ակտիվ աշխատանքի համար:

Սակայն, թերևս, միավորումների ամենակարևոր առավելություններից
մեկն այն է, որ դրանք ավելի լրիվ և ավելի խոր, քան ձեռնարկությունները,

Ն. Ռ. ԹՈՎՄԱՍՅԱՆ

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# «ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ» ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր դարաշրջանի դասակարգային պայքարի պատմությունը նորից հաստատեց Վ. Ի. Լենինի այն նշանավոր դրույթը, որ «դասակարգային հակասություններից ծվատվող հասարակության մեջ առհասարակ չի կարող լինել երբեք արտադասակարգային իդեոլոգիա»[1]։ Ելնելով Վ. Ի. Լենինի այս դասական դրույթից, ՍՄԿԿ XXIV համագումարը նշում է, որ բուրժուական և ռեվիզիոնիստական հարձակումների համոզիչ քննադատությունը հսկայական չափերով կարող է ուժեղանալ այն դեպքում, երբ այն հենվի հասարակական գիտությունների ստեղծագործական զարգացման վրա։*

*Մարքսիզմ-լենինիզմը զարգանում է բուրժուական, հակագիտական տեսությունների անհաշտ, սկզբունքային քննադատության պայմաններում։ Արդի գիտա-տեխնիկական հեղաշրջման զուգընթաց համապատասխան փոփոխություններ են կատարվում կապիտալիստական արտադրապրոցեսում, որոնք աղավաղված ձևերով են արտացոլվում բուրժուական տնտեսագիտական գրականության մեջ։ Բուրժուական և ռևիզիոնիստական հոսանքների դեմ գիտական և արդյունավետ պայքարը կարող է ծավալվել, ինչպես նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում, ժամանակակից կապիտալիզմի էկոնոմիկայի ուսումնասիրության հիման վրա։*

*Բանն այն է, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում առաջացել են բազմաթիվ տնտեսագիտական ուղղություններ։*

*Ժամանակակից բուրժուական քաղաքատնտեսության մեջ նոր ստեղծված տեսություններն արագ ճյուղավորվում են և հաճախ մայր տեսության տարբերակները, հեռանալով սկզբնաղբյուրից, հակադրվում են նրան։ Այս երևույթի դիպուկ բացատրությունը տվել է ամերիկյան բուրժուական տնտեսագետ Ու. Կ. Միտչելը դեռ քսանական թվականներին։ «Տնտեսական ցիկլերի ուսումնասիրությունն այնպես արագ է կատարվում, որ աշխատության տպագրության պրոցեսը դեռևս չավարտված, այն արդեն հնանում է» (*У. К. Митчель. Экономические циклы, *1930,* стр. *488)։ Այդ տեսությունների արագ հնացման բուն պատճառը, անշուշտ, այն է, որ դրանց հիմքում ընկած են արդեն անկենդան սկզբունքներ, որոնք վերազգեստավորված հրամցվում են որպես նոր տեսություններ։*

*Տնտեսական ցիկլերի ուսումնասիրությունների այս գնահատությունը բնորոշ է բուրժուական բոլոր տնտեսագիտական հետազոտություններին։ Հիշենք, որ «ժողովրդական կապիտալիզմի» տեսությունը, ձևավորվելով հիսունական թվականների կեսերին, կարճ ժամանակամիջոցում տարածվեց բազմաթիվ տարբերակներով («կապիտալի դեմոկրատականացում», «տնտեսական ինտեգրացիա», «մարդկային հարաբերությունների տեսություն», «մենեջերիզմ» և այլն)։ Արևմուտքի տնտեսագետներից ոմանք այսօր հանդես են գալիս «ժողովրդական կապիտալիզմի» տեսության կարևոր դրույթների որոշակի մերժումով։*

*Քեյնսի ուսմունքը, որը երեսնական թվականների կեսերից, որպես «խոշոր գիտական հայտնագործություն», ընդհանուր ճանաչում գտավ բուրժուական տնտեսագիտության մեջ, մեկ տասնամյակ հետո իրավամբ մերժվեց նրա հաջորդների կողմից։ Ինչպես հայտնի է, Քեյնսի տեսությունը նպատակ ուներ միայն «բուժելու» կապիտալիզմի արատները, դիտելով այն որպես անփոփոխ հասարակություն։ Գիտա-տեխնիկական հեղաշրջման ընթացքում առաջացած խոշոր փոփոխությունները մերկացրին Քեյնսի ուսմունքի մեթոդոլոգիական ելակետերի սնանկությունը և հարուցեցին հասարակական արտադրության դինամիկայի ուսումնասիրության անհրաժեշտությունը։ Այս հողի վրա ձևավորվեցին «տնտեսական աճման», «աճման ստադիաների» տեսությունները, որոնց ելակետը տեխնիկական և տեխնոլոգիական կատարելագործումների հետազոտությունն է։*

*Նույն սկզբունքի վրա է խարսխված նաև ֆրանսիացի տնտեսագետ Ժ. Ֆուրաստյեի տեխնոլոգիական տեսությունը, որի հեղինակը հանդես եկավ քաղաքատնտեսության մեջ հեղաշրջում կատարելու հավակնությամբ։ Տնտեսագիտական նախկին ուղղությունները համարելով սկլերոտիկ սիստեմներ, Ֆուրաստյեն քաղաքատնտեսության բոլոր կատեգորիաների էությունը կապում է տեխնիկայի հետ, որի զարգացմանը զուգընթաց անվերջ կատարելագործվում է հասարակությունը։ Վաթսունական թվականների սկզբներին արդեն տեխնոկրատական այս ուղղությունը ձևավորվեց որպես մի ամբողջական սիստեմ՝ «միասնական ինդուստրիալ հասարակություն» անվան տակ։*

*Այս տեսության ներկայացուցիչները փորձում են հավատացնել, որ արդի գիտա-տեխնիկական հեղաշրջումը կապիտալիստական հասարակությունը դարձնում է առատության և շահերի ներդաշնակության սիստեմ, ավետյաց երկիր՝ հասարակության բոլոր խավերի համար։ Ամերիկյան հայտնի տնտեսագետ Ջոն Գելբրեյթն իր մեծ աղմուկ բարձրացրած աշխատությունն անվանեց* Առատության հասարակություն *(1958 թ.)։ Այս աշխատության տրամաբանական շարունակությունը շուրջ տասը տարի անց լույս տեսած նրա* Նոր ինդուստրիալ հասարակություն *խորագրով գիրքն է, որը համանուն տեսության սկզբունքների սիստեմատիկ ու ծավալուն շարադրանքն է։*

*Բուրժուական տնտեսագետներն իրենց «փառաբանած ինդուստրիալ հասարակությունը» համարում են բոլորովին նոր սկզբունքների վրա խարսխված «ազատ աշխարհ», որը, իբր, «երկրորդ արդյունաբերական հեղափոխության» ծնունդն է։ Այս հեղափոխության նյութական բովանդակությունն արտադրության ավտոմատացումն է։*

*Ամերիկյան բուրժուական տնտեսագետ Դիբոլդը գրում է. երկրորդ արդյունաբերական հեղափոխությունը գա արտադրության ավտոմատացումն է, որը, սակայն, ինքնին վերցրած, տեխնիկական վերակառուցումների պրոցես է։ Մարքսիզմի այն հանրահայտ դրույթը, որ նոր հասարակության ծնունդը, արտադրաուժերի զարգացման հետ միաժամանակ, սոցիալական հեղաշրջման արդյունք է, այս դեպքում յուրացրել են նաև բուրժուական քաղաքատնտեսության որոշ ներկայացուցիչները։ Երկրորդ արդյունաբերական հեղափոխությունը նրանք համարում են XVIII դարի արդյունաբերական հեղաշրջման շարունակությունը։ Պարզվում է, որ առաջին հեղաշրջումը ամփոփվել է միայն արտադրաուժերի կատարելագործման շրջանակներում, իսկ արտադրության ավտոմատացումը վերակառուցում է ողջ հասարակական կյանքը. «Արտադրության ավտոմատացման հետ միասին տեղի է ունենում կապիտալիզմի կառուց-*

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 5, էջ 507։

վածքի խոր փոփոխություն սոցիոլոգիական իմաստով» (Լ. Էմրիխ)։ Այդ փո-
փոխությունների էությունն ըստ «ինդուստրիալ հասարակության» տեսության
ներկայացուցիչների այն է, որ մասնավոր կապիտալիստական սեփականու-
թյան տեսակարար կշիռն ու դերը հասարակական արտադրության մեջ նվա-
զում են, աճում է պետական սեփականությունը, մեծանում պետության կար-
գավորիչ դերը հասարակական արտադրության զարգացման ոլորտում։

Արտադրության մեծ մասշտաբներով ավտոմատացման շնորհիվ հսկայա-
կան չափերով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, ստեղծ-
վում է նյութական բարիքների առատություն և բարձրանում հասարակության
բոլոր խավերի բարեկեցությունը։ Այսպիսի ծիածանային գույներով է պատ-
կերված այսօրվա և վաղվա «ինդուստրիալ հասարակությունը» բուրժուական
տնտեսագիտական գրականության մեջ։

Ժամանակակից հասարակությունը Ջ. Գելբրեյթը բաժանում է երկու մա-
սի։ Հասարակության դեմքը որոշում են խոշոր կորպորացիաներն ու պետական
միավորումները, որտեղ կենտրոնացած է հասարակական կապիտալի, բարձր-
որակ աշխատուժի, ժամանակակից ավտոմատ սարքավորումների առյուծի բա-
ժինը։ Բավական է նշել, գրում է հեղինակը, որ «Միացյալ Նահանգներում
արտադրվող ապրանքների ու ծառայությունների գրեթե կեսը բաժին է ընկնում
հարյուր խոշորագույն կորպորացիաների» (Дж. Гельбрейт, Новое ин-
дустриальное общество, М., *1970*, стр. *36*)։ Այս խումբն է, որ նա ան-
վանում է «ինդուստրիալ սիստեմ», որտեղ իրականացվում են գիտա-տեխնի-
կական հեղաշրջման արտադրական ու «սոցիալական» հրաշքները։ Երկրորդ
խմբի մեջ նա դասում է մանր ու միջակ արտադրական, առևտրական ձեռնար-
կությունները, անհատական տիրապետության տակ եղած արտադրական, կեն-
ցաղային սպասարկման կազմակերպություններն ու ինքնագործ զբաղմունքի
մնացած բնագավառները, որտեղ գիտա-տեխնիկական առաջընթացը տեղի է
ունենում խիստ սահմանափակ կամ ընդհանրապես բացակայում է» (Նույն տե-
ղը, էջ 44)։

Գելբրեյթը ճիշտ է ընկալել հասարակության զարգացման օբյեկտիվ
օրինաչափությունը։ Սակայն պատմական զարգացման օբյեկտիվ ընթացքի
ճիշտ ընկալումը պետք էր Գելբրեյթին «ինդուստրիալ հասարակության» հա-
կագիտական տեսության որոշ սկզբունքների հիմնավորման համար։ Նախ, այն
հանգամանքը, որ արտադրությունը զարգանում ու կատարելագործվում է գիտա-
տեխնիկական անձնակազմի անմիջական հսկողությամբ ու ղեկավարությամբ
«հիմք» է տալիս հեղինակին պնդելու, որ արտադրական ձեռնարկության զար-
գացման, կառավարման ու ղեկավարման հետ կապված բոլոր հարցերը լու-
ծում է այսպես կոչված «տեխնոստրուկտուրան», որն ընդգրկում է «բոլոր
նրանց, ովքեր ունեն մասնագիտացված գիտելիքներ կամ կոլեկտիվ որոշում-
ներ անելու փորձ և ունակություն» (Նույն տեղը, էջ 99)։ Գելբրեյթի այս ամորֆ,
ունիվերսալ կառավարող մարմնի մեջ կարող են մտնել ձեռնարկության բոլոր
աշխատողների հետ նաև բանվորները։ ««Ինդուստրիալ սիստեմում» ձեռնար-
կատերը, որպես իշխանավոր, անհետացող դեմք է», գրում է Գելբրեյթը։ Ան-
ցյալում էր, որ ձեռնարկության մեջ ամեն ինչ ելնում էր կապիտալից և են-
թարկվում դրան. ձեռնարկատերը միանձնյա տեր ու տնօրեն էր ձեռնարկու-
թյան ներքին ու արտաքին կապերի բոլոր բնագավառներում։

Կապիտալիստական ձեռնարկությունների կառավարման գործում «տեղի
ունեցած» այս մտացածին փոփոխությունների հիման վրա, համապատասխա-
նաբար, որպես թե, փոխվում է նաև արտադրագործունեության նպատակը։
Գելբրեյթը նույնիսկ հակակայում է այն հանրահայտ ճշմարտությանը, որ մո-
նոպոլիաները տեխնիկական նորույթները կիրառում են հարստանալու նպա-
տակով։ «Նման դատողությունները, կոպիտ ասած, արտահայտում են մտքերի
կատարյալ խառնաշփոթություն,— գրում է նա։— Ձեռնարկության չափերը
տեխնիկական առաջընթացի իսկական ուղեկիցներն են և ոչ մի առանձին կապ
չունեն շահույթի չափի հետ» (Նույն տեղը, էջ 70)։ «Ինդուստրիալ սիստեմի



նպատակն է՝ ամբողջ հասարակության առաջընթացը, որի իսկական չափանի-
շը սպառման մակարդակն է» (Նույն տեղը, էջ 76)։

Բուրժուական տնտեսագետները հայտարարում են, որ Մորգանները, Մե-
լոնները, Ռոկֆելլերներն անհետացել են, որ արտադրությունը կառավարում են
մտավորականների լայն զանգվածները, որ արտադրության զարգացման զբա-
պանակը ոչ թե շահույթն է, այլ սպառման մակարդակի բարձրացումը և այլն։

Մինչդեռ, իրականում ֆինանսական մագնատների շահույթները տասնա-
պատկվում են, և նրանց գերիշխանությունը գնալով հզորանում է, մտավորա-
կանության լայն խավերը վեր են ածվում վարձու ստրուկների բանակի, իսկ
սպառարժեքն ամենևին չի հետաքրքրում արտադրողներին և շարունակում է
մնալ սոսկ որպես անհրաժեշտ չարիք, ինչպես Մարքսն է ասել։

Բնորոշ է, որ բուրժուական տնտեսագետները մոռանում են իրենց ան-
հիմն դատողությունները շահույթների ու բիզնեսմենների անհետացման, եկա-
մուտների հավասարեցման և այլնի վերաբերյալ, երբ ձեռնամուխ են լինում
կոնկրետ իրականության վերլուծությանը։ Գելբրեյթը գրում է. «1965 թ. երեք
խոշոր կորպորացիաների՝ «Ջեներալ մոտորսի», «Ստանդարտ օյլ օֆ Նյու-
Ջերսի» և «Ֆորդ մոտորսի» համախառն եկամուտը գերազանցեց ամերիկյան
բոլոր ֆիրմաների եկամուտներին... «Ջեներալ մոտորսի» հասույթը 1963 թ.
50 անգամ ավելի էր Նևադա նահանգի եկամուտներից, 8 անգամ՝ Նյու-Յորքի,
և ֆեդերալ կառավարության եկամուտների մեկ հինգերորդից փոքր-ինչ պա-
կաս էր» (Նույն տեղը, էջ 118)։ Ուշագրավ է, որ Գելբրեյթը խոստովանում է,
թե «շահույթը չի հասնում տեխնոստրուկտուրային» (Նույն տեղը, էջ 156)։
Հետևաբար, շահույթը յուրացնում են «անհետացող դեմքեր» համարվող բիզ-
նեսմենները, իսկ արտադրության բախտը որոշող և հասարակության բարե-
կեցությունը բարձրացնող օրգանը մնում է նյութական հնարավորություններից
զուրկ «տեխնոստրուկտուրան»։ Մի հանգամանք, որը նույնպես ցայտուն ար-
տահայտում է կապիտալիստական հասարակության և վերջինիս փառաբանող
«ինդուստրիալ հասարակության» տեսության միջև եղած հակասությունը։

Սակայն կապիտալիստական իրականությունը համոզիչ կերպով հերքում
է բուրժուական տնտեսագետների հորինած պատրանքները. Նրանցից ոմանք
ակամա խոստովանում են. «Կապիտալիստական հասարակության էական
երևույթներում ոչինչ չի փոխվել այն ժամանակներից, երբ Կարլ Մարքսը գրեց
Կապիտալը։ Այսօր նույնպես բանվորը ունեզուրկ է, քանի որ ունեցվածքը իրա-
վունք է արտադրամիջոցների նկատմամբ, այսօր էլ սեփականությունը եկա-
մուտ է բերում առանց աշխատանքի, այսօր էլ շարունակվում է դասակարգա-
յին պայքարը... Եթե սոցիալիստները Մարքսի ուսմունքը համարում են հնա-
ցած, ապա ես այն համոզումն ունեմ, որ Մարքսի սոցիալական վերլուծությու-
նը ներկայումս մնում է նույնքան ճշմարտացի, որքան հարյուր տարի առաջ»[1]։

Գիտա-տեխնիկական հեղաշրջումը և կապիտալիստական արտադրության
ավտոմատացումը սերտորեն առնչված են զբաղվածության պրոբլեմի հետ, որը
բուրժուական տնտեսագետները շրջանցել չեն կարող։ Կապիտալիստական հա-
սարակության դարավոր պատմությունը ցույց է տալիս, որ արտադրության մեջ
գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառման, արտադրապրոցեսների
կատարելագործման ընթացքում առաջանում է աշխատուժի ավելցուկ» և հսկա-
յական չափերով աճում է գործազուրկների պահեստաբանակը։ Հայտնի է, որ
բազմաբարդ ավտոմատ սարքավորումների անընդհատ աշխատանքն ապահո-
վելու համար հարկավոր են միայն մի քանի հսկիչներ ու կարգավորողներ։
Ֆորդի գործարանների ավտոմատացված տեղամասերում զբաղված անձնա-
կազմը պակասել է տասն անգամ, իսկ ռադիոարդյունաբերության ոլորտում՝
հարյուր։

Տեխնիկական կատարելագործումները, ինչպես հաղորդում են ամերիկյան

[1] «Սոցիալիստ կաթոլիկների 1959 թ. կոնֆերանսում, ավստրիական պրոֆ. կաթոլիկ հո-
գևորական Կլեյնհապելի ելույթից», տե՛ս Б. А. Денисов, Критики современных бур-
жуазных теорий о будущем обществе, М., *1961*, стр. *27—28*։

սոցիոլոգները, հանքագործների 2/3-ին փողոց նետեցին: Ռ. Արոնը ճիշտ է նկատում, որ արդի տեխնիկական առաջընթացը, առատության հետ միաժամանակ, միլիոնավոր մարդկանց ուսերին է դնում սերիական արտադրության բռնության ծանր լուծը: ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրն իր պաշտոնական ելույթներից մեկում ավտոմատացումը բնութագրեց որպես համատարած սարսափ՝ «սարսափ փոփոխություններից, բուն տեխնիկայից, սարսափ աշխատանքային տեղերի կորստից, գործազրկությունից»: Նույնիսկ Գելբրեյթը, որը բնազանցական դատողություններով փորձում է ժխտել գործազրկության գոյությունն ու հնարավորությունը, ստիպված է արձանագրել, որ 1951—1964 թթ. ժամանակաշրջանում ԱՄՆ-ում աշխատուժն ավելացել է 10 միլիոնով, արտադրական բանվորների թիվը չի ավելացել, իսկ առանձին տարիներին նույնիսկ կրճատվել է (տե՛ս նույն տեղը, էջ 286—287):

Բայց, ինչպես հայտնի է, բուրժուական գռեհիկ տնտեսագիտությունը իրականության հետ առնչություն չունի: Նրա ներկայացուցիչներն աչքերը փակ, ֆանատիկ ջանասիրությամբ զբաղված են կապիտալիստական կարգերի փառաբանմամբ: Տասնյակ միլիոնների հասնող գործազուրկների գոյության փաստը ժխտելու նպատակով «ինդուստրիալ հասարակության» տեսության ներկայացուցիչները հորինել են «տեխնոլոգիական գործազրկություն» հասկացությունը, որը, իբր, ժամանակավոր է:

«Ինդուստրիալ հասարակության» դպրոցի ներկայացուցիչների վերոհիշյալ ըմբռնումն այլ բան չէ, քան XIX դարի գռեհիկ տնտեսագիտության «փոխհատուցման տեսության» բովանդակության վերարտադրությունը: Անդրադառնալով իմպերիալիզմի դարաշրջանի բուրժուական սոցիոլոգիայի ճգնաժամի էությանը, Վ. Ի. Լենինն ասում էր, որ նրա ներկայացուցիչները պատմության արխիվից դուրս են հանում ժամանակին մերկացված ուղղությունները, դրանց ռեակցիոն սկզբունքները զարդարում նոր անվանումներով և հրամցնում որպես գիտության վերջին խոսք: «Տեխնոլոգիական գործազրկության» և «փոխհատուցման տեսության» ընդհանրությունն այնքան բացահայտ է, որ երբեմն թվում է, թե կարդում ես XIX դարում հրատարակված աշխատություն: Ֆրանսիացի տնտեսագետներ Ֆուրաստյեն և Վիմոնը պնդում են, որ զբաղվածության նվազումն արտադրության որոշ ճյուղերում փոխհատուցվում է մյուս ճյուղերում դրա ավելացմամբ. «Իրականում տեխնիկական առաջընթացը ձևափոխում է զբաղվածության կառուցվածքը և դրա ընդհանուր մակարդակի վրա չի ազդում»: Ամերիկյան տնտեսագետներ Ի. Բրուլենին և Ս. Ֆաբրիկանտին այս դրույթը ևս չի բավարարում: Նրանք պնդում են, որ ավտոմատացումը բարձրացնում է ընդհանուր զբաղվածությունն արտադրության բնագավառում: Նոր մեքենաներ ու սարքավորումներ արտադրող ճյուղերն ավելի մեծ թվով բանվորներ են ընդգրկում, քան դրանց կիրառումից արտամղված բանվորները:

Ամերիկյան բուրժուական տնտեսագետ Շելենբերգն ավելի մեծ ընդհանրացում է անում. տեխնիկական առաջընթացը ստեղծում է անընդհատ ընդլայնվող էկոնոմիկա, որը «ավելի շատ բանվորներ է ընդգրկում, քան դուրս մղում»: Կապիտալիզմի այս գովերգուները, սակայն, աչքերը փակում են նույնիսկ այն հանրահայտ փաստի առաջ, որ արտադրության նոր ճյուղերը ստեղծվում են նորագույն ավտոմատ սարքավորումների բազայի վրա, որոնց սպասարկում են ավելի ու ավելի փոքրաթիվ բանվորներ:

Այս և նման մերկապարանոց հայտարարությունները, անշուշտ, կարող են բավարարել ոչ բոլոր բուրժուական տնտեսագետներին: Եվ նրանցից ոմանք «փոխհատուցման» հին տեսության հիմնավորման համար նոր ուղիներ են որոնում: Հայտնի է, որ արտադրաուժերի զարգացման, հասարակության առաջընթացի հետ միաժամանակ աճում է զբաղվածությունը ոչ-նյութական արտադրության ոլորտներում: Բավական է նշել, որ ԱՄՆ-ում ոչ-նյութական արտադրության ոլորտներում (ներառյալ պետական մարմիններում աշխատողները) զբաղվածները կազմում են վարձու աշխատողների ընդհանուր թվի 55 տոկոսը: Ժամանակակից քաղաքակրթության պայմաններում, ոչ-նյութական արտադրության ոլորտների ընդլայնմանը զուգընթաց, անշուշտ, ավելա-



նում է նաև այդ բնագավառներում զբաղվածների թիվը: Այս հանգամանքը «հիմք» է տվել բուրժուական տնտեսագետներին պնդելու, որ արտադրապրոցեսների ավտոմատացմամբ արդյունաբերությունից ու գյուղատնտեսությունից դուրս մղված աշխատողներն ընդգրկվում են սպասարկման ոլորտները, «որտեղ մեքենաները դեր չեն խաղում» (Ֆուրաստյե):

Բայց կյանքը ժխտում է «փոխհատուցման» տեսության ներկայացուցիչների նաև այս փաստարկը, քանի որ աշխատանքային պրոցեսների ավտոմատացումը վերջին տասնամյակի ընթացքում մեծ մասշտաբներով ընդգրկել է նաև սպասարկման բնագավառները: ԱՄՆ-ի ֆինանսների մինիստրության աշխատանքների մեքենայացմամբ, աշխատանքի ծավալի 14 տոկոսով ավելացման հետ միաժամանակ, աշխատողների թիվը կիսով չափ կրճատվել է: Էլեկտրոնային հաշվիչ մեքենաները փոխարինում են բազմահազար հաշվային աշխատողների, իսկ առևտրի բնագավառում օգտագործվող ավտոմատները գրեթե ավելորդ են դարձնում սպասարկող անձնակազմը: Հետևաբար, գործազրկությունն ահավոր սպառնալիք է նաև սպասարկման բնագավառի աշխատողների համար, որը կապիտալիստական հասարակությանը կանգնեցնում է նոր դժվարությունների առաջ:

Մարքսիզմի հակառակորդների հարվածի սուր ծայրը միշտ ուղղված է եղել նրա սոցիալիստական հեղափոխության ուսմունքի դեմ: «Ինդուստրիալ սիստեմի» տեսաբաններն այդ տեսակետից բացառություն չեն կազմում: Գելբրեյթը փորձում է հավատացնել, որ հասարակության զարգացման ժամանակակից տենդենցները թուլացրել են բանվորական շարժումը, «զրկել արհմիություններին առավել կարևոր ֆունկցիաներից, նեղացրել նրանց գործունեության շրջանակները, իսկ պահպանված ֆունկցիաները նշանակալից չափերով ենթարկել իրենց կարիքներին» (նույն տեղը, էջ 334): Արհմիություններին վերաբերող ասույթներում որոշ իրողություն կա այն առումով, որ ԱՄՆ-ի արհմիութենական մի քանի աջ լիդերներ (Մինի, Ռեյտեր) հաճախ են աշխատում արհմիութենական կազմակերպությունները գործիք դարձնել խոշոր մոնոպոլիստների և պետության քաղաքականության իրականացման համար: Իսկ ինչ վերաբերում է բանվորական շարժման թուլացմանը, ապա այն հերքում է բանվորական շարժման պատմությունն իսկ: Դա ապացուցելու համար բերենք, նախ, բուրժուական տնտեսագետների օգտագործած տվյալները:

Պ. Սամուելսոնը նշում է, որ պատերազմից անմիջապես հետո գործադուլների հզոր ալիքը ցնցեց երկիրը: «Միայն 1946 թ. համազգային գործադուլներն ընդգրկեցին ածխի, պողպատաձուլման, մսի ու պահածոների արդյունաբերությունը և երկաթուղին»: Հեղինակի կազմած գրաֆիկը ցույց է տալիս, որ 1946 թ. գործադուլների հետևանքով մարդ-օրերի կորուստը կազմել է 115 միլիոն, իսկ հիսունական թվականներին կուլմինացիոն կետը եղել է տասնամյակի վերջին տարին՝ շուրջ 75 միլիոն մարդ-օր: Գործադուլավորների թիվը, ողջ կապիտալիստական աշխարհում, եթե 1965 թ. հասել է 36 միլիոն մարդու, 1968-ին՝ 57, ապա 1970-ին՝ 64 միլիոն մարդու («Правда», 31 հուլիսի, 1971):

Գելբրեյթը պնդում էր, որ այժմ բանվորների աղքատացումը կապիտալի աշխարհում չքացել է: Սակայն իրականում բանվոր դասակարգի դրության վատթարացման պրոցեսը հարատևում է ողջ կապիտալիստական իրականության մեջ: Բավական է նշել, որ արտադրության ավտոմատացման պայմաններում մեծ չափերով բարձրանում է աշխատանքի լարվածությունը, որը խիստ կրճատում է բանվորի կենսագործունեության ժամանակաշրջանը: Ուժերի ծայրահեղ լարման հետևանքով քառասնամյա բանվորն արդեն «ծերանում է» և նրա առջև փակվում են գործարանների դռները: Ժամանակակից սարքավորումների վրա իր ողջ կյանքում միապաղաղ լարված աշխատանք կատարելով, բանվորը «վաստակում» է զանազան պրոֆեսիոնալ հիվանդություններ և դառնում հոգեպես ու ֆիզիկապես հաշմանդամ:

Ամերիկյան վիճակագրության պաշտոնական հաղորդումների համաձայն, արտադրապրոցեսում տեղի ունեցած դժբախտ դեպքերի միջին տարեկան թիվը 2 միլիոն է, որից 15 հազարը՝ մահացու: Դրա հետևանքով, ըստ բուրժուական

վիճակագրության տվյալների, բանվորների կյանքի միջին տևողությունը ունևոր դասակարգի համեմատ կրճատվում է երկու անգամ (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. I 1954, էջ 672)։ Այս օրինաչափությունը ներկայումս շարունակում է վերարտադրվել ավելի լայն չափերով։

Աշխատավորների համար, սակայն, ամենամեծ աղետը իմպերիալիստական պատերազմներն են, երբ թանկանում են կենսամիջոցները, բարձրանում հարկերն ու տուրքերը, կրճատվում է անձնական սպառումը, երկարացվում աշխատօրը և իջեցվում աշխատավարձը։ Բայց ամենաահավորը աշխատունակ երիտասարդների ոչնչացումն է պատերազմների ժամանակ։ Բավական է նշել, որ առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների ընթացքում զինված էր 170 միլիոն մարդ, իսկ սպանվածների ու վիրավորների ընդհանուր թիվը 121 միլիոն էր։

Ուստի, անհերքելի է, որ աշխատավորների ֆիզիկական ու հոգեկան այս խոշտանգումները ոչ մի կերպ փոխհատուցվել չեն կարող, և Մարքսի կապիտալիստական կուտակման ուսմունքի «հնացման», աշխատավորության բարեկեցության բարձրացման վերաբերյալ բուրժուական տնտեսագետների տեսությունններն ստահոզ բարբաջանքներ են միայն։

Տեսությունների գիտականության ստուգման չափանիշը բուն կյանքն է, հասարակական պրակտիկան։ Նշենք, որ մեր հարյուրամյակի 70 տարիներից (չհաշված համաշխարհային երկու պատերազմի ժամանակաշրջանները), կապիտալիստական աշխարհում 27-ը եղել են ճգնաժամային, 9-ը՝ լճացման և միայն 26-ը՝ աշխուժացման և վերելքի տարիներ, որոնք գերազանցապես կապված են էկոնոմիկայի ռազմականացման հետ։

Տնտեսական ճգնաժամերից հետո, էկոնոմիկային զուգընթաց, լճացում է սկսվում նաև բուրժուական իդեոլոգիայի բնագավառում, և ճգնաժամային երևույթներից խամրում են նրա ներկայացուցիչների ծիածանագույն եզրակացությունները։

Վրա հասավ 1969—70 թթ. հերթական կրախը։ Կապիտալիստական աշխարհի հիմքերը ցնցող վերջին երկու տարիների վալյուտա-ֆինանսական և գերարտադրության տնտեսական ճգնաժամերը տակնուվրա արին նաև բուրժուական տնտեսագիտական ուղղությունների եյակետային սկզբունքներն ու դրանց վրա խարսխված տեսական ընդհանրացումները։ Զարգացած կապիտալիստական երկրներում արդյունաբերական արտադրանքի աճը 1970 թ. կազմեց ընդամենը 2,1 տոկոս, որը պահպանվեց նաև 1971 թ.։ Երկու տարիների ընթացքում արդյունաբերության այսպիսի լճացումը կապիտալիզմի հետպատերազմյան ժամանակաշրջանի պատմության մեջ բացառիկ երևույթ է։

ԱՄՆ-ում տնտեսական ճգնաժամի նշանները երևացին դեռ 1967 թ., իսկ 1969 թ. կեսերին արդեն արդյունաբերական արտադրանքի տեմպերն սկսեցին իջնել։ 1970 թ. կապիտալ ներդրումների ծավալը տնտեսության բոլոր գլխավոր ճյուղերում խիստ կրճատվեց, բաժնետոմսերի կուրսի անկման հետևանքով սնանկացան բազմաթիվ ձեռնարկություններ, աճեց գործազրկությունը, սրվեց դասակարգային պայքարը։ Ծանր արդյունաբերության արտադրանքը 1970 թ., նախորդ տարվա համեմատությամբ, իջավ 6 տոկոսով, իսկ դրա առանձին ճյուղերում անկումը հասավ 16—21 տոկոսի (տրանսպորտային մեքենաշինություն և ավիահրթիռային արդյունաբերություն), խոշորագույն կորպորացիաների շահույթներն իջան 40—80 տոկոսով («Կայզեր-ստիլ», «Կրայսլեր»)։ Բորսային ճգնաժամն ընդգրկեց ամերիկյան արդյունաբերության 76 ճյուղերի ընկերությունները։ Բաժնետոմսերի կուրսը, 1968 թ. դեկտեմբեր ամսվա համեմատությամբ, 1970 թ. իջավ 50—70 տոկոսով (ավտոմոբիլային, հաստոցաշինական, ավիառակետային)։

Տնտեսական ճգնաժամի հետ աճռելի ուժով բռնկվեց նաև վալյուտային ճգնաժամը, որն առանձնապես սուր բնույթով արտահայտվեց ԱՄՆ-ում։ Դոլարի գնողունակությունը 1970 թ. կազմեց 1957—1959 թթ. մակարդակի 73 տոկոսը։ Սպառման ապրանքների գների ինդեքսը նույն ժամանակաշրջանում բարձրացավ 36,5 տոկոսով։ Վերջին տասնամյակի ընթացքում ԱՄՆ-ի ոսկու



պաշարները 17,8 մլրդ-ից իջան մինչև 11,1 մլրդ դոլարի։ Կառավարության մշակած հակաճգնաժամային միջոցառումներից կարևոր է բնակչությունից գանձվող հարկերի ավելացումը, որը 1970 թ. կազմեց 90,4 մրլդ դոլար՝ 1960 թ. 40,7 մլրդ դիմաց։

Բուրժուական տեսաբանների պատրանքները բնակչության բարօրության բարգավաճման վերաբերյալ հօդս են ցնդում ամեն անգամ, երբ թափանցում ենք կապիտալի տիրապետության կյանքի խորքերը։

Զննենք իրական փաստերը։ Պաշտոնական գրանցված անգործների տարեկան միջին թիվը կապիտալիստական աշխարհում հետևյալ պատկերն ունի (հազար մարդ)

| | 1965 թ. | 1970 թ. | 1971 թ. սկիզբը |
|---|---|---|---|
| Ընդամենը | 11.672 | 14.353 | |
| այդ թվում | | | |
| Կապիտալիստական զարգացած երկրներ | 6600 | 7940 | 9958 |
| այդ թվում | | | |
| ԱՄՆ | 3366,0 | 4088,0 | 5800,0 |
| Ճապոնիա | 390,0 | 593,0 | 660,0 |
| Մեծ Բրիտանիա | 360,0 | 639,8 | 835,0 |
| Կանադա | 280,9 | 495,0 | 675,0 |
| Իտալիա | 1285,5 | 960,9 | 1020,0 |
| Ֆրանսիա | 142,1 | 262,1 | 345,7 |
| ԳՖՀ | 139,2 | 144,0 | 277,0 |
| Զարգացող երկրներ | 5072 | 6415 | |

Այս փաստերը չեն կարող հերքել կապիտալիզմի ջատագովները։ Կենսարժեքի թանկացում, հարկերի ավելացում, բնակարանային վարձի բարձրացում, ֆինանսների արժեքազրկում, պրոֆեսիոնալ հիվանդությունների աճ և ապրանքների գների բարձրացում. միայն սրանք չեն ճգնաժամում մխրճված կապիտալիստական երկրների անբուժելի խոցերը։ Գործազուրկների թիվը 1970 թ. ԱՄՆ-ում հասավ 3,3 մլն, Ճապոնիայում՝ 2,75, Արևմտյան Եվրոպայում՝ 29 մլն (1968—1969 թթ.), գործադուլային մարդ-օրերի թիվը 1970 թ. ԱՄՆ-ում 62 մլն էր, իսկ բոլոր զարգացած կապիտալիստական երկրներում 1968—1969 թթ.՝ 330 մլն։

ԱՄՆ-ի պրեզիդենտ Նիքսոնը նույնիսկ ընդունում է, որ 60-ական թվականների սոցիալական ընդվզումները եղել են ամենահզորը վերջին 100-ամյակի ընթացքում։ Հենց այդ սոցիալական ընդվզումներն են, որ պատմության երկաթյա տրամաբանությամբ հերքում են կապիտալիստական կարգերի, բուրժուական ջատագովների ստահոզ պնդումները։





Ս.. Ն. ԱԿՈՊՈՎ

Հայկական ՍՍՀ ԳԱ արտասահմանյան բաժնի վարիչ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱՊԵՐԸ

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի գործունեության ասպարեզում կարևոր դեր են խաղում միջազգային գիտական կապերը։ Ակադեմիան ձգտում է առավել չափով օգտագործել այդ կապերն իր առջև դրված գիտական խնդիրների լուծման նպատակով։ Այդ տեսակետից առավել մեծ նշանակություն ունեն օտարերկրյա հաստատություններում աշխատելու համար լավ պատրաստված գիտաշխատողների տևական գործուղումներն արտասահմանյան երկրներ և արտասահմանյան ականավոր գիտնականների ընդունելության կազմակերպումը։

Բյուրականի աստրոֆիզիկական աստղադիտարանի օրինակով կարելի է ցույց տալ, որ այդպիսի գործուղումների և փոխազդեցությունների շնորհիվ ո՛չ միայն հաջողվում է ուսումնասիրել ու յուրացնել արտասահմանյան առավել հաջողված աստղադիտարանների մեթոդիկան և գործիքակազմը, այլև դիտարկումների համար օգտագործել դրանց սարքավորումը՝ լրացնելու նպատակով այն հետազոտությունները, որպիսիք կարելի է կատարել սովետական աստղադիտակների օգնությամբ։

Այսպես, գալակտիկաների միջուկների և դրանց ակտիվության մասին կարևոր տվյալներ ստանալու համար անհրաժեշտ էր օգտագործել ավստրալիական օպտիկական և ռադիոաստղադիտական հնարավորությունները, մասնավորապես, Ավստրալիայի հռչակավոր խոշորագույն աստղադիտակները։ Այդ առաջադրանքը հաջողությամբ կատարեց Բյուրականի աստղադիտարանի աշխատակից Հ. Մ. Թովմասյանը՝ այդ երկրում իր իննամսյա գործուղման ընթացքում։

Բյուրականի աստղադիտարանում հայտնագործված՝ ուլտրամանուշակագույն էքսցես ունեցող գալակտիկաների (որոնք ստացել են Մարգարյանի գալակտիկաներ անունը) լիակատար ուսումնասիրության համար անհրաժեշտ էր օգտագործել Ամերիկայի Միացյալ Նահանգների խոշորագույն օպտիկական աստղադիտակները։ Բյուրականի աստղադիտարանի աշխատակից Է. Ե. Խաչիկյանին (որ երկարատև գործուղման մեջ էր ԱՄՆ-ում) հաջողվեց կատարել այդ աշխատանքը։ Նա ծանոթացավ նաև Կիտ-Պիկ աստղադիտարանի սարքերին, ուր մինչ այդ սովետական աստղագետները մուտք չունեին։ Է. Ե. Խաչիկյանն իր աշխատանքների համար օգտագործեց նաև Փալոմարի աստղադիտարանի՝ աշխարհում ամենախոշոր— 5 մետրանոց աստղադիտակը, որի վրա նոր էր տեղակայվել էլեկտրոնային-օպտիկական նոր վերափոխիչը։

Մի այլ կարևոր պրոբլեմի լուծման՝ ոչ ստացիոնար աստղերի ուսումնասիրության համար Բյուրականի աստղադիտարանի դիրեկտորի տեղակալ Լ. Վ. Միրզոյանը, ֆրանսիական աստղագետների հետ միասին, շատ հետաքրքրական լուսապատկերային դիտարկումներ կատարեց Սեն-Միշելի (Ֆրանսիա) աստղադիտարանի լավագույն սարքավորման օգնությամբ։ Մեր աստղագետները սերտորեն համագործակցում են և ԳԴՀ ԳԱ գիտնականների հետ. այսպես, Է. Ե. Խաչիկյանը, Է. Ս. Պարսամյանը և Կ. Ա. Սահակյանը շատ արժեքավոր դիտարկումներ են կատարել Տաուտենբուրգի (ԳԴՀ) աստղադիտարանի մեծ աստղադիտակով։

Սովետական աստղագետների նախաձեռնությամբ Բյուրականի աստղադիտարանը և Մեքսիկայի, Հունգարիայի ու Իտալիայի աստղադիտարանները համատեղ ուսումնասիրում են աստղասփյուռների և աստղակուտակումների մեջ բռնկվող աստղերի պրոբլեմը։ Աստղային բռնկումները դիտելու համար Բյուրականի աստղադիտարանի աշխատակցուհի Է. Ս. Պարսամյանը երկար ժամանակ օգտագործել է Տոնանցինլայի (Մեքսիկա) աստղադիտարանի աստղադիտակը և հայտնաբերել բռնկվող շատ նոր աստղեր։ Կարելի է համոզված ասել, որ Բյուրականի աստղադիտարանն այս խնդրում առաջատար դեր է խաղում։ 1970 թ. Մեքսիկայից Բյուրականում աշխատելու եկավ պրոֆ. Գ. Հարոն. Տոնանցինլայում կուտակած իր դիտողական հարուստ փորձը նա հաղորդեց սովետական երիտասարդ աստղագետներին։ Ճիշտ այդպես էլ, բայց այլ պրոբլեմների կապակցությամբ, արդյունավետ օգտագործվեցին պրոֆ. Դ. Շալոնժի (Ֆրանսիա) և դոկտոր Վիդմարի (ԱՄՆ) այցելությունները Հայաստան։

Բյուրական են հրավիրվել ֆրանսիական աստղագետներ, ֆրանսիական գիտությունների ակադեմիայի անդամներ, պրոֆեսորներ Ա. Լալեմանը և Շ. Ֆերենբակը։ Քննարկումների արդյունքը եղավ այն, որ պայմանավորվեցին՝ մեզ մոտ կառուցվող ՀՀԱ—2,6 մ (հայկական հայելավոր աստղադիտակ՝ 2,6 մ տրամագծով) աստղադիտակով կատարվող դիտարկումների համար օգտագործել Ֆրանսիայում նախագծված՝ Լալեմանի կամերաները։ Այդ, անտարակույս, գիտական մեծ արդյունք կտա։ Ուշագրավ է, որ, երբ Բյուրական են ժամանում արտասահմանյան խոշոր գիտնականները, միջոցներ են ձեռնարկվում, որպեսզի նրանց փորձը հաղորդվի ինչպես Բյուրականի, նույնպես և սովետական այլ գիտնականների։ Այսպես, երբ Բյուրականում էր պրոֆ. Շ. Ֆերենբակը, լուսապատկերագրումների հնարավոր կառուցվածքների քննարկմանը մասնակցելու հրավիրվեցին նաև Ղրիմի աստղադիտարանի օպտիկա-մեխանիկական արդյունաբերության ներկայացուցիչները։ Բյուրականի աստղադիտարանի ՀՀԱ—2,6 մ աստղադիտակի պատրաստման առնչությամբ ևս մեծ նշանակություն ունի արտասահմանյան արդի աստղադիտակի կառուցման էական նվաճումների յուրացումը։

Բյուրականի աստղադիտարանը մշտական կապ է պահպանում Բուդապեշտի աստղադիտարանի հետ։ Ամենամյա փոխայցելությունները նպաստում են փորձի փոխանակմանը. Բուդապեշտի աստղադիտարանը նույնպես մասնակցում է բռնկվող աստղերի դիտարկումներին։ Մեր աստղադիտարանը մեծ դեր է խաղում արտասահմանում սովետական գիտության հեղինակության բարձրացման համար։ Այդ տեսակետից նշանակալից ու նոր է այն փաստը, որ օտարերկրյա շատ խոշոր գիտնականներ իրենց աշխատությունները հրապարակում են Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի կողմից հրատարակվող «Աստրոֆիզիկա» հանդեսում։ Չպետք է տարակուսել, որ սովետական գիտության հեղինակության բարձրացմանը զուգընթաց ավելի ու ավելի մեծ թվով գիտնականներ կձգտեն իրենց հետազոտությունների արդյունքները տպագրել սովետական հանդեսներում։

Հայկական ՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի ու մեխանիկայի ինստիտուտի աշխատակիցները մասնակցեցին այնպիսի կարևորագույն միջոցառումների, ինչպիսիք են՝ մեխանիկայի հարցերին նվիրված միջազգային կոնգրեսը ԱՄՆ-ում (1968 թ.) և մաթեմատիկոսների միջազգային կոնգրեսը Ֆրանսիայում (1970 թ.)։ Նրանք ստացան արժեքավոր ինֆորմացիա ժամանակակից մաթեմատիկայի ու մեխանիկայի վիճակի մասին։ Մաթեմատիկական կոնգրեսի նյութերին ծանոթանալուն հաջորդեցին տոպոլոգիական-հանրահաշվային մեթոդների հետազոտությունները մեզ մոտ, որոնց նպատակն էր՝ ծավալել դրանք ինչպես զուտ տոպոլոգիայի, այնպես և արդի ֆիզիկայի տոպոլոգիական-հանրահաշվային մեթոդների հետ կապված պրոբլեմների ուսումնասիրման բնագավառում։ Ծանոթանալով 1970 թվականի օգոստոսին Ֆինլանդիայում կայացած մաթեմատիկական վերլուծության՝ միջազգային համազրույցին ներկայացված նորագույն ուսումնասիրություններին, Հայկ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Մ. Մ. Ջրբաշյանը պլանավորեց մոտավորությունների տեսության բնագավառում մի նոր թեմայի մշակումը։

Մեր մեխանիկների ուղևորությունը ԱՄՆ, Լեհաստան, Ֆրանսիա, Ռումինիա, ինչպես և մեխանիկայի հարցերին նվիրված կոնգրեսի նյութերի հանգամանալի ուսումնասիրությունը նպաստեցին մեր ինստիտուտում բիոմեխանիկական հետազոտությունների դրվածքին։

Մաթեմատիկայի և մեխանիկայի ինստիտուտի ավագ գիտաշխատակից Վ. Ս. Տոնոյանի՝ Լեհաստան կատարած ուղևորությամբ կապեր հաստատվեցին լեհական գիտությունների ակադեմիայի և Պոզնանի պոլիտեխնիկական ինստիտուտի մի շարք գիտնականների հետ։ Բացահայտվեց հայ գիտնականների մշակած՝ կոնսոլիդացիայի տեսության մեջ կրկնակի և եռակի ինտեգրալ հավասարումների լուծման մեթոդի կիրառման հնարավորությունը և այդ տեսության բնագավառում լեհական գիտնականների հետ համատեղ հետազոտությունների նպատակահարմարությունը։ Սերտ կապեր են հաստատվել հունգարական մաթեմատիկոսների՝ մասնավորապես օրթոգոնալ շարքերի տեսության հարցերով զբաղվող խմբի հետ։

Ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտի (ՌՖԷԻ) լաբորատորիայի վարիչ Ռ. Մ. Մարտիրոսյանը Գրենոբլի համալսարանում (Ֆրանսիա), ծանոթանալով քվանտային ռադիոֆիզիկայի ասպարեզում ծավալված աշխատանք-

ներին, վերադառնալուն պես մեզ մոտ կազմակերպեց միլիմետրանոց դիապազոնի քվանտային ուժեղացուցիչների ստեղծման գործը:

ՌՖԷԿ-ի IV կոնգրեսում ներկայացված աշխատությունների (Ա. Ռասելի, Ի. Օշիմի և Բ. Ս. Յանգի) մանրամասն ուսումնասիրությունը հնարավորություն ընձեռեց լրացնելու տեղափոխումների գերճշգրիտ չափումների թվային սխեմների ասպարեզում արտասահմանում կատարվող աշխատանքների վերլուծությունը, նպաստեց տեղափոխումների նոր՝ ֆոտոընդունիչների ազդանշանների բազայի մետաղյա ցանցավոր տվիչի մշակմանը:

Հայկական ՍՍՀ ԳԱ հաշվողական կենտրոնում, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի համագործակցությամբ, շատ բան է արվել «Հրազդան—3» ԷՀՄ-ի մաթեմատիկական ապահովումը ստեղծելու համար: Նշված տիպի երկու մեքենաներ կան Բուդապեշտի համալսարանի և Հունգարիայի էներգետիկայի ինստիտուտի հաշվիչ կենտրոններում: Մաթեմատիկական ապահովության սիստեմի միջուկը ծրագրավորման լրիվ ալգորիթմային լեզվի՝ ԱԼԳՕԼ—60-ի փոխհաղորդիչն է: Սիստեմի մեջ մտնում են գրադարանային ստանդարտ ծրագրերի ավտոմատ միացման մեկնաբանող ու բանաքաղ ենթասխեմները, ալգոծրագրերի կարգավորման ու շտկման ենթասխեմները և մի շարք օժանդակ միջոցներ:

Այդ սիստեմը մշակելիս շատ հարցեր քննարկվեցին հունգարական վերոհիշյալ հիմնարկությունների ներկայացուցիչների հետ միասին: Սիստեմի մշակումն ավարտելուց հետո Հայկ. ՍՍՀ ԳԱ հաշվողական կենտրոնի 4 աշխատակիցներ երկու ամսով գործուղվեցին Բուդապեշտ, այդ սիստեմը վերոհիշյալ հաշվողական կենտրոններում արմատավորելու և այն համատեղ գործարկելու նպատակով: 1970 թ. Երևան ժամանեցին Բուդապեշտի համալսարանի հաշվողական կենտրոնի ներկայացուցիչները՝ սիստեմի շահագործման փորձի փոխանակման և այդ ընթացքում ծագած մի շարք պրոբլեմների քննարկման համար:

Մշակված սիստեմի փոխքննարկումների շնորհիվ ստեղծվեց մաթեմատիկական ապահովության լայն սիստեմ և հնարավոր եղավ ճշգրտել այդ սիստեմի հետագա զարգացման ու ընդլայնման ուղիները, ինչպես նաև առաջադրվեցին ԷՀՄ-երի արտաքին հիշողության դինամիկ բաշխման հետ կապված մի շարք նոր խնդիրներ:

Հայկական ՍՍՀ ԳԱ հաշվողական կենտրոնի և Բուդապեշտի համալսարանի ու Հունգարական Ժողովրդական Հանրապետության էներգետիկայի ինստիտուտի հաշվողական կենտրոնների գիտնականների համագործակցությունը նպաստեց ժողովրդական տնտեսության մեջ մաթեմատիկական ապահովության սիստեմի արմատավորմանը, որը տարեկան կտա մոտ երկու միլիոն ռուբլու տնտեսական շահ:

Կարևորագույն միջոցառումներից մեկը Հայկ. ՍՍՀ ԳԱ ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտի (ՖՀԻ) և Հունգարիայի գիտությունների ակադեմիայի ֆիզիկական հետազոտությունների կենտրոնական ինստիտուտի համագործակցությունն էր: Համակողմանի՝ և՛ տեսականորեն, և՛ փորձնականորեն ուսումնասիրվում էին բարձր ինտենսիվության լուսային ճառագայթման և ատոմների (կամ մոլեկուլների) փոխազդեցությունը, նյութի մագնիսականությունը:

Փորձնականորեն ուսումնասիրված են սնդիկի գոլորշիներում ռեզոնանսային եռաֆոտոն կլանման պրոցեսի դիտարկման հնարավորությունները: Հավաքված է լազերային սարքավորում, ինչպես և լազերային հաճախականության նուրբ վերասարք՝ ռեզոնանսային պայմանների կատարման համար, մշակված են արդյունքի դիտարկման տարբեր եղանակներ: Ստացված են եռաֆոտոն կլանման պրոցեսի գրանցման նախնական արդյունքները:

Ջրածնի գոլորշիներում բազմաֆոտոն ռեզոնանսային երևույթների համատեղ հետազոտման նպատակով Հունգարիայի գիտությունների ակադեմիայի ֆիզիկական հետազոտությունների կենտրոնական ինստիտուտ (ՀԳԱ ՖՀԿԻ) գործուղվեց Հայկ. ՍՍՀ ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտի (ՖՀԻ) աշխատակցուհի Կ. Բ. Պետրոսյանը: Փորձնականորեն հետազոտվեց նեոդիմի լազերի ճառագայթման ազդեցությամբ տեղի ունեցող պարպման դեպքում մետակայուն վիճակի բերված հելիումի ատոմների բազմաֆոտոն իոնացումը: Աշխատանքի արդյունքը եղավ այն, որ գրանցվեց հելիումի բազմաֆոտոն իոնացում և պարզվեց, որ իոնացման հավանականությունը պայմանավորված է լազերային ճառագայթման ինտենսիվությամբ:

Իր հերթին Հայկ. ՍՍՀ ՖՀԻ-ն ընդունեց ՀԳԱ ՖՀԿԻ աշխատակիցներ Գ. Ռեզնիկովին, Լ. Շանդորին, Դ. Ամրոզիին. նրանք ծանոթացան ռադիոտեխնիկայի և էլեկտրոնիկայի ասպարեզում կատարած մեր աշխատանքներին: Համատեղ քննարկումների շնորհիվ ճշգրտվեցին մի շարք հարցեր ֆիզիկական հետազոտություններում հաշվողական տեխնիկայի կիրառման, հատկապես «Նաիրի—2» հաշվողական մեքենան ձևափոխիչով (ամպլիտուդկոդ) և համապատասխան ծրագրերով ապահովելու վերաբերյալ, այդ մեքենաները, որպես բազմականալ անալիզատորներ, ֆիզիկական փորձարկումներում օգտագործելու նպատակով:

Հայկ. ՍՍՀ ԳԱ ՖՀԻ աշխատակիցների արտասահմանյան գործուղումների արդյունքը եղավ այն, որ ՖՀԻ աշխատակիցները ներկայացրին մի շարք արժեքավոր առաջարկություններ նոր հետազոտական աշխատանքների կազմակերպման ոլորտում, որոնց մեծ մասը ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունի: Դրա հիման վրա հետազոտություններ են կատարվում ֆոտոնների բաբախման մեթոդի օգնությամբ ցրված ճառագայթման լայնությունը չափելու վերաբերյալ. աշխատում են հաճախականությունների գումարման միջոցով բյուրեղում ստեղծել զգայուն ինֆրակարմիր ընդունիչներ, որոնք լայնորեն կկիրառվեն ֆիզիկայում և աստրոֆիզիկայում:

Հայկ. ՍՍՀ ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտի դիրեկտոր Զ. Գ. Աֆրիկյանի գործուղումը Կանադա հնարավորություն ընձեռեց գիտա-տեխնիկական ինֆորմացիա ստանալու ընդհանուր և տեխնիկական միկրոբիոլոգիայի հրատապ հարցերի վերաբերյալ: Դրա հիման վրա ստեղծված է մի խումբ, որը ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող ուսումնասիրություններ է կատարում բույսերի բջիջների ֆերմենտացման ասպարեզում: Կանադայից բերվել են հատուկ մանրէներ, որոնք օգտագործվում են գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարի բակտերիական միջոցների արտադրության համար և նպաստում գունավոր մետաղների հանքաբիոլոգիական տարալվացմանը: Գործուղումը Կանադա օգնեց նաև հանրապետությունում միկրոբիոլոգիական արդյունաբերության օբյեկտների ստեղծման նախագծերի մշակմանը:

Նույն ինստիտուտի խմորող միկրոօրգանիզմների լաբորատորիայի վարիչ, տեխնիկական գիտությունների թեկնածու Լ. Ա. Երզնկյանը գործուղվել էր Բուլղարիա: Այդ գործուղման արդյունքը եղավ այն, որ ստացվեց կայուն բակտերիական մերանի՝ բուժա-դիետիկ նյութ՝ յուղուրտի, արտադրության համար: Այժմ կատարվում են մանրէական կաթնախմորման ֆերմենտների՝ պրոպլազների, ակտիվ պրոդուցենտների ընտրության որոնումներ:

Քիմիական գիտության ամենահրատապ ուղղություններից են ՀՍՍՀ ԳԱ օրգանական քիմիայի ինստիտուտում տարվող հետազոտությունները ացետիլենի քիմիայի բնագավառում: Բնական պոլիացետիլենների ուսումնասիրման ֆիզիկոքիմիական նորագույն մեթոդների մշակման գործում նշանակալի հաջողությունների են հասել անգլիական գիտնականները: Նրանց փորձն ուսումնասիրելու նպատակով քիմիական գիտությունների թեկնածու Շ. Օ. Բադանյանը գործուղվեց Անգլիայի «Քվին Մերի» կոլեջի (Լոնդոն) քիմիական դեպարտամենտը և «Դայսոն Փերիքս» լաբորատորիան (Օքսֆորդ). դրա արդյունքը եղավ այն, որ Հայկ. ՍՍՀ ԳԱ օրգանական քիմիայի ինստիտուտի բարձր, ոչ-սահմանային միացությունների քիմիայի լաբորատորիայում լայնորեն կիրառվեցին հետազոտման քրոմատոգրաֆիական և սպեկտրալ մեթոդներ, որոնք նպաստում են աշխատանքների ստույգ ու որակյալ կատարմանը, քիմիական ռեակտիվների տնտեսմանը, աշխատաժամկետների կրճատմանը:

Վերջին տարիներս Անգլիայում լայնորեն զարգացել է ֆիզիոլոգիական ակտիվ նյութերի հետազոտման կարևոր բնագավառներից մեկը՝ բիոգենային ամինների բիոքիմիական դեղագործությունը: Դա հնարավորություն ընձեռեց նշանակալի հաջողությունների հասնելու նյարդային գործունեության բիոքիմիական մեխանիզմների ուսումնասիրման, նորմալ կենսագործունեության մեջ և պաթոլոգիայում ադրեներգիական պրոցեսների պարզաբանման ասպարեզում. հանգամանքներ, որոնք շատ կարևոր են ֆիզիոլոգիական ակտիվ միացությունների սինթեզի համար: Ահա թե ինչու Անգլիա գործուղվեց կենսաբանական գիտությունների թեկնածու Հ. Մ. Ավագյանը: Նա աշխատեց և շատ բան սովորեց Բիրմինգհամի կենդանիների ֆիզիոլոգիայի ինստիտուտում, Քեմբրիջի համալսարանի և Գլազգոյի դեղագործական լաբորատորիաներում:

Այդ գործուղման արդյունքը եղավ այն, որ Հայկ. ՍՍՀ ԳԱ Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտում կազմակերպվեց ՍՍՀՄ-ում առաջին մասնագիտացված խումբը, որը հետազոտություններ է կատարում ադրեներգիական մեխանիզմների դեղագործության կարգավորման վերաբերյալ: Մշակված են մի շարք մոդելային մեթոդներ, որոնց շնորհիվ հնարավոր է բազում քիմիական միացություններից բացահայտել ակտիվ պրեպարատները (ադրենոլիտիկներ, սիմպատոլիտներ, նորադրենալին կլանող բլոկատորներ և այլն) և ուսումնասիրել դրանց ներգործության մեխանիզմները: Մասնավորապես ուսումնասիրված է մեծ թվով նոր միացությունների քիմիական կառուցվածքի սիմպատոլիտիկական և ադրենոլիտիկական ներգործության կապը, առաջարկված է սիմպատոլիտիկների ներգործության մեխանիզմի նոր կոնցեպցիա. ստացված են տվյալներ բոլորովին նոր, որոշակի օրգանների սիմպատիկ նյարդերի վրա ներգործող պրեպարատների մասին: Այդ արդյունքները ելակետային են այն պրեպարատների հետազոտության համար, որոնք հիպերտոնիայի, էնդարտերիդների և այլ դեպքերում ընտրողաբար են կարգավորում սիմպատիկ նյարդային համակարգության գործունեությունը:

Ժամանակակից դեղագործական քիմիայի

Ծ. Ս. ՉՈԲԱՆՅԱՆ

# ԸՆԴԴԵՄ ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆԻ ԿԱՄԱՅԻՆ ԸՄԲՌՆՄԱՆ

Ժամանակակից գաղափարական պայքարում տեսական թեժ վիճաբանությունների թիրախ է դարձել հասարակության հեղափոխական վերափոխումների պրոբլեմը: Բուրժուական կարգերի պաշտպանները, որպեսզի բըրվածին ներարկեն իրենց դարն ապրած սոցիալական գոյաձևին, ձգտում են ամեն կերպ նենգափոխել ու նսեմացնել սոցիալիստական հեղափոխությունների դերը հասարակության կյանքում: Ըստ նրանց դատողության՝ սոցիալիստական հեղափոխությունն իր բնույթով ժողովրդային չէ, այլ պալատական հեղաշրջման, իշխանությունը բռնագրավելու կամային ակտ է:

Մեր գաղափարական ընդդիմախոսները ձգտում են լենինիզմը ներկայացնել որպես բլանկիզմի ու անարխիզմի տարբերակ, իսկ Լենինին՝ Տկաչևի, Բակունինի ու Նեչաևի հետևորդ: Հեղափոխության սուբյեկտիվ գործոնի դերի լենինյան ըմբռնումը նրանք բացահայտորեն նույնացնում են վոլյունտարիզմի հետ: Հակակոմունիզմի տեսաբանները, կորցնելով օբյեկտիվության ամեն մի նշույլ, գրում են. որ, իբր, Հոկտեմբերյան հեղափոխությունը ոչ թե օբյեկտիվ օրինաչափությունների, այլ լենինյան սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի հետևանք է, որ եթե չլիներ այդ «ապակողմնորոշող» ուսմունքը, պատմությունը կընթանար իր բնական հունով:

Հագնելով դետերմինիզմի դիմակ, իմպերիալիզմի վարձու գրչակները լենինիզմն առնչում են ինդետերմինիզմի հետ: Բուրժուական գաղափարախոսների այդօրինակ «ողջախոհությունը» ձախողված դոգմատիկների ու ռեֆորմիստների համար քաղաքական վարկի նշանակություն է ստանում: Բոլոր երանգի օպորտունիստները օբյեկտիվորեն ծառայում են բուրժուազիային: Արդի պայմաններում իմպերիալիստները բանվորական շարժման մեջ եղած օպորտունիստական տարրերին հրում են յուրօրինակ գաղափարական գործարքի: Վերջիններին, ինչպես նշվեց 1969 թ. Մոսկվայում կայացած խորհըրդակցությունում, իմպերիալիստներն ասում են. փորձեցեք ապացուցել, որ դուք հակահեղափոխական եք և դա բավական է հռչակվելու իսկական «մարքսոլոգներ» և կգրավեք միանգամայն ինքնուրույն դիրքեր:

Թե դատապարտված դասակարգերն ինչպիսի տեղ են հատկացնում մարքսիզմի դավաճաններին, այդ նույն խորհրդակցությունում մատնանշեց նաև Ֆրանսիայի կոմկուսի գլխավոր քարտուղար Վ. Ռոշեն. «Բացահայտ է, որ ֆրանսիական բուրժուազիան իր ուժերը չի խնայում տարբեր «ձախ» խմբավորումների մասսայականացման համար և առանձնապես այնպիսիներին է վեր հանում, որոնք իրենց տրոցկիստներ ու մաոիստներ են համարում: Ինչպես երևում է, ռեակցիոն իմպերիալիստական շրջանները ենթադրում են, որ



մաոիստական ուղղությունը, ընդդեմ գիտական սոցիալիզմի, մեր և մյուս կոմունիստական կուսակցությունների և ընդդեմ Սովետական Միության արժեքավոր օգնություն է իրենց համար՝ ընդդեմ ողջ աշխարհի հեղափոխական շարժումների» («Правда», № 165, 1969 г.):

Առանձնապես արդի պայմաններում, երբ մաոիստական աղանդավորականությունը «թարմ» սնունդ է մատակարարում հակակոմունիզմի տեսաբաններին՝ նորաթուխ աղանդի տրոցկիստական էության մերկացումը առավել կարևոր է դառնում:

Հակակոմունիզմի ուժերի համալրումը, ի հաշիվ «նոր» աղանդավորականության, առավել արդիական է դարձնում այն «պրոբլեմների» բացահայտումը, որոնք բուրժուական, կիսաբուրժուական և «դեմոկրատական» դոկտրինյորների կողմից դիտվել ու շարունակում են հրամցվել որպես հակասություններ մարքսիզմում: Բուրժուազիան միշտ էլ պատրաստակամորեն օգնել ու խրախուսել է առանձնապես այն բոլոր գրչակներին, որոնք մարքսիզմի վրա գրոհել են «մարքսիզմի» դրոշով: Ռեակցիան բնավ պահանջ ու կարիք չի զգացել կասկածելու հակահեղափոխական որևէ «իզմի» վրա և հարկ չի համարել «ձախերին» տարբերել աջերից, բացի այն, որ նրանց միշտ գնահատել է, ինչպես հատուկ է իրեն, հանդեպ կոմունիզմը ունեցած նրանց ատելության աստիճանով և ըստ մատուցած ծառայությունների:

Բավական է հետադարձ ու թռուցիկ հայացք ձգել բոլշևիզմի պայքարի պատմության վրա և ակնառու կդառնա, որ հակակոմունիզմի հորինումները և՛ հին են, և՛ «նոր», այնտեղ քանիցս անգամ կրկնվում են վաղուց արդեն հերքված դոգմաները:

Հայտնի է, որ Էնգելսը «Կոմունիզմի սկզբունքներ»-ում ժխտում էր սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հնարավորությունը մեկ առանձին վերցրած երկրում, իսկ Վ. Ի. Լենինը «Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը» հոդվածում ուղղակի նկատում է՝ «սոցիալիզմը չի կարող հաղթել բոլոր երկրներում միաժամանակ»: Դոգմատիկների համար այս «հակասությունը» ճակատագրական է դառնում, և բուրժուազիան, օգտագործելով այն, զենք է դարձնում ու ճոճում ընդդեմ Հոկտեմբերյան հեղափոխության օրինականության:

Անշուշտ, ըստ ձևական տրամաբանության, Էնգելսի և Լենինի դիրքորոշումները կարծես իրարամերժ են: Բայց բավական է այս «շփոթեցնող հանգույցին» մոտենալ դիալեկտիկորեն, քննարկել այն ժամանակի և տարածության մեջ և՝ «հակասությունները» անմիջապես կվերանան: Հասարակական առաջընթացը հաստատում է, թե՛ առաջին և թե երկրորդ թեզի ճիշտ լինելը: Ե՛վ Էնգելսի, և՛ Լենինի մոտ հետևությունները օբյեկտիվ են, առարկայական, կոնկրետ, անհակադրելի, որովհետև նրանցից յուրաքանչյուրը ելնում էր կապիտալիզմի զարգացածության իր ժամանակի առանձնահատկություններից: Լենինի ապրած ժամանակաշրջանում մոնոպոլիստական կապիտալիզմն արդեն առավել համակողմանի էր դրսևորում արտադրաուժերի և արտադրահարաբերությունների անհամապատասխանությունն ու դրանով իսկ ավելի ակներև էր մարքսյան հետևությունների գիտականությունը: Իմպերիալիզմին հատուկ օրինաչափությունները կապիտալիզմի զարգացման վաղ շրջանում որոշակիորեն նշմարվել չէին կարող, մի բան, որ ապացուցման կարիք չունի: Կապիտալիզմի բարձրագույն էտապի ճգնաժամից բխող հետևությունների լույսի տակ ոչ թե ժխտվում են, այլ կրկնակի անգամ իրենց հաստատումն են ստանում Մարքսի-Էնգելսի թեզերը: Լենինի մեկ առանձին վերցրած երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հնարավորության դրույթը չի բացասում հասարակության զարգացման նախորդ փուլերին հատուկ օրինաչափությունների իսկությունը:

Կրկնելով եվրոպական օպորտունիստներին՝ ժամանակին ռուսական դոգմատիկներն «ապացուցում» էին, թե իբր սոցիալիզմը պետք է գա ուրիշ, ավելի զարգացած արդյունաբերություն ունեցող երկրներից: Այդ միտքը ոչ պակաս կրքոտությամբ հոլովում էին և «բոլշևիզմով» քողարկվող որոշ օպորտու-



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀՈՒԺԿՈՏ ՏԱՂԱՆԴԸ*

Է. Մ. ՄԻՐԶՈՅԱՆ

*Հանրապետության ժողովրդական արտիստ, Հայաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ*

Հայ ազգային կոմպոզիտորական դպրոցի ակունքի մոտ կանգնած էին երկու հսկաներ՝ Կոմիտասը և Սպենդիարյանը: Նրանց ստեղծագործությունն էր, որ դարձավ հայ երաժշտության մեջ ամենաարժեքավորի ու հեռանկարայինի հիմքը և կանխորոշեց այդ երաժշտության հետագա զարգացումը:

Դեռևս կենդանության օրոք Սպենդիարյանն արդեն հայտնի էր լայնորեն, նրա երաժշտական գործերը հնչում էին աշխարհի շատ երկրներում:

«Ես Ալեքսանդր Սպենդիարյանին համարում եմ մեր ժամանակի ամենաականավոր կոմպոզիտորներից մեկը,— գրել է Գլազունովը:— Սպենդիարյանի ստեղծագործությունները, ինչպես՝ *Երեք արմավենին*, *Ղրիմի էսքիզները*, նրա օպերան ու ռոմանսները վիթխարի փառք բերեցին նրան արդի երաժշտական գրականության մեջ՝ ինչպես մեզ մոտ, նույնպես և Արևմուտքում»:

Սպենդիարյանը երեք անգամ արժանացել է Ռուսաստանի բարձրագույն երաժշտական պարգևին՝ Գլինկայի անվան մրցանակին: Նա առաջիններից մեկն էր, որ կամուրջ գցեց «եվրոպական» ու «արևելյան» երաժշտությունների միջև, Արևելքի ժողովուրդների երաժշտական մշակույթի ինքնատիպ ավանդությունների մեջ տեսավ այն սկզբնաղբյուրը, որը կարող էր հարստացնել ու թարմացնել համաշխարհային երաժշտական արվեստը: Լինելով աշխարհասփյուռ մի ժողովրդի զավակը, երկար տարիներ ապրելով հայրենիքից հեռու, նա համառորեն որոնում էր երաժշտության մեջ ազգայինը գտնելու և արտահայտելու ուղիներ: Այդ որոնումներն Սպենդիարյանի համար երբեք էլ նեղ, զուտ տեղային նշանակություն չեն ունեցել: Սպենդիարյանական երաժշտական կերպարների միջով միշտ էլ թափանցել է համամարդկային խոր բովանդակությունը:

Սպենդիարյանը, որ բարձր կուլտուրայի տեր, հույժ զարգացած կոմպոզիտոր էր, հարազատ ժողովրդի երաժշտական արվեստը, ասես, հզոր թռիչքով բարձրացրեց միանգամայն նոր որակական աստիճանի: Նրա ստեղծագործությունը հայ երաժշտություն բերեց գեղարվեստական կոնցեպցիաների խոր գաղափարներ, սիմֆոնիկ մտածողություն, ժանրային բազմազանություն, երաժշտական ներկապնակի հարստություն ու գունեղություն:

Ինչ խոսք, շատ բան այստեղ պայմանավորված էր Սպենդիարյանի ստեղծագործական հազվագյուտ ձիրքով: Սակայն նշանակություն ուներ նաև այն միջավայրը, որտեղ հղկվել ու ձևավորվել էր կոմպոզիտորի տաղանդը: Դա բացառիկ բարենպաստ մի միջավայր էր: Տակավին երիտասարդ, Սպենդիարյանը բախտ ունեցավ շփվելու, մտերմական կապեր հաստատելու իր ժամանակի ականավոր շատ դեմքերի հետ: Նա ինքը շարունակ մղվում էր դեպի հետաքրքիր ու տաղանդավոր մարդիկ, այնպես, ինչպես նրանք էին ձգտում հանդիպել Սպենդիարյանի հետ:

Ժամանակակիցները պատմում են, թե Յալթայում իրենք հաճախ են Սպենդիարյանին ու Չեխովին տեսել մի նստարանի վրա նստած, զրուցելիս: Սպենդիարյանը հանդիպել է և Մաքսիմ Գորկուն: «Գորկին 1902-ի ամռանն ապրում էր Ղրիմում,— գրում է Սպենդիարյանն իր հուշերում:— Տանտիրոջ նրա սրտաբացությունն անսահման էր... Այն ժամանակ Յալթան գրական ու երաժշտական ուժերի կենտրոնատեղն էր: Տոլստոյ, Չեխով, Շալյապին, Լեոնիդ Անդրեև, Տելեշև, Բունին, Շմելյով, Սկիտալեց,— հիշե՞լ կլինի այն բոլոր մարդկանց, ում հանդիպել եմ Գորկու տանը: Ես ինքս էի հաճախ լինում նրա մոտ, Գորկին էլ ինձ մոտ էր գալիս Յալթա, որտեղ ես ապրում էի իմ հայրական տանը»:

Հանդիպումներից մեկի ժամանակ Գորկին կարդաց իր «Ձկնորսն ու փերին»: Սպենդիարյանն այնքան ոգևորվեց, որ շուտով մի հրաշալի բալլադ գրեց ձայնի ու նվագախմբի համար և նվիրեց տեքստի հեղինակին: Գորկին շատ հավանեց բալլադը: Կոմպոզիտորի երևանյան արխիվում պահպանվում է *Քաղքենիներ* պիեսը, հետևյալ ընծայականով՝ «*Երգ փերու մասին* բալլադի տաղանդավոր հեղինակ Ալեքսանդր Սպենդիարյանին, ի հիշատակ: Մ. Գորկի»:

Սպենդիարյանն այն կոմպոզիտորներից է, ովքեր առաջինն են դիմել պրոլետարական գրականության հիմնադրի ստեղծագործությանը: Բայց, թերևս,

* *Զեկուցում՝ կարդացված Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի հանդիսավոր նիստում՝ նվիրված Ալ. Սպենդիարյանի ծննդյան 100-ամյակին:*

ավելի կարևոր է այն, որ նրա այդ քայլով քաղաքացիական թեմատիկան մուտք գործեց կոմպոզիտորի ստեղծագործություններում, նրան անմիջականորեն առնչելով դարաշրջանի առաջավոր գաղափարներին:

Սպենդիարյանի համար որոշիչ է եղել նաև հանդիպումը Հովհաննես Թումանյանի հետ, որը նրան օգնել է ավելի սերտորեն հաղորդակցվելու հայ իրականությանը, ավելի խոր ըմբռնելու ժողովրդայինն արվեստում:

* * *

Սպենդիարյանի կենսագրության մեջ հետաքրքրական է նրա կապը ռուս կոմպոզիտորների ու երաժիշտների հետ: Պատանեկան տարիներից նրա կուռքն է եղել Ռիմսկի-Կորսակովը: Եվ սա էլ հենց վճռական դեր է խաղացել Սպենդիարյանի կոմպոզիտորական ճակատագիրը որոշելու գործում: Պետք է նկատել, որ Սպենդիարյանը մանուկ և պատանի հասակում սիստեմատիկաբար չի զբաղվել երաժշտությամբ: Չնայած շատ երաժիշտների, ինչպես և հայտնի կոմպոզիտոր Կլենովսկու գովեստներին, նա երկար ժամանակ չի համարձակվել ամբողջովին նվիրվել կոմպոզիտորական գործունեությանը (այդ ժամանակ նա արդեն ավարտել էր Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը): Միակ հեղինակությունը, որին նա կարող էր վստահել այդ հարցի լուծումը, Ռիմսկի-Կորսակովն էր: «Եվ ահա,— գրում է Սպենդիարյանն ինքնակենսագրության մեջ,— ես սկսեցի երազել երբևիցե իմ գործերը նրան ցույց տալու հնարավորության և, դրվատական կարծիքի դեպքում՝ նրա աշակերտը դառնալու մասին: Իմ երազանքները իրականացան: 1896-ի գարնանը մեծ հուզմունքով ներկայացա Նիկոլայ Անդրեևիչին: Աշխատանքներս աչքի անցկացնելուց հետո նա իմ մեջ տեսավ կոմպոզիտորական շատ լուրջ պարապմունքների նվիրվելու բոլոր տվյալները և համաձայնեց դառնալու իմ ուսուցիչը: Մեծ ուրախություն և անասելի բավականություն զգացի և միայն դրանից հետո սկսեցի հավատալ իմ ուժերին»:

Շուտով աշակերտի և ուսուցչի հարաբերությունները վերածվեցին սրտագին բարեկամության: «Աշակերտության» շրջանից հետո էլ Սպենդիարյանը մշտապես օգտվում էր Ռիմսկի-Կորսակովի խորհուրդներից և իր նշանակալի աշխատանքները հասարակության դատին հանձնում միայն նրա հայրական օրհնությունն ստանալուց հետո:

Սպենդիարյանն անկեղծ բարեկամությամբ էր կապված Գլազունովի, Լյադովի, Արենսկու, Գրեչանինովի, Բյումենֆելդի, Չերեպնինի և այլոց հետ:

Հայ և ռուս երաժշտական դպրոցների եղբայրական կապի խորհրդանիշն է Սպենդիարյանը: Մեծ ներշնչանքով ստեղծելով իր ազգային արվեստը, որն ամուր թելերով կապված էր հարազատ հայ մշակույթի հետ, Սպենդիարյանը հենվում էր արդի համաշխարհային երաժշտության և, ամենից առաջ՝ ռուս դասական երաժշտության հարուստ փորձի վրա:

Նրանից առաջ էլ շատ հայ կոմպոզիտորներ դիմել էին ռուսական երաժշտությանը, բայց Սպենդիարյանին էր վիճակված իր ստեղծագործությամբ բացահայտելու ժողովրդայնության ու ռեալիզմի վրա հիմնված ռուս դասական երաժշտության արգասալի գաղափարների ողջ ուժն ու նշանակությունը հայ ազգային երաժշտական մշակույթի զարգացման համար: Մեր հետագա կոմպոզիտորները պատվով շարունակեցին այդ լավ ավանդույթը: Առանց ռուսական երաժշտական դպրոցի հետ ամենասերտ կապերի և առանց այդ



դպրոցի փորձի կիրառման հնարավոր չէ պատկերացնել Ա. Խաչատրյանի, Հ. Ստեփանյանի, Լ. Խոջա-Էյնաթյանի, Գ. Եղիազարյանի, Ա. Բաբաջանյանի, Ա. Հարությունյանի, Ղ. Սարյանի, Է. Հովհաննիսյանի և շատ ուրիշների ստեղծագործությունը:

Մեծ կոմպոզիտորի ժամանակակիցները մեզ են հասցրել Սպենդիարյանի կենդանի կերպարը, նրա հոգու ազնվությունն ու մաքրությունը, մարդկային բացառիկ հմայքը: Սպենդիարյանի կերպարում չեխովյան շատ բան կա: Նրանք երկուսն էլ անսահման բարի են, բարեկիրթ, մեղմ, անկեղծ ու պարզ վարվեցողությամբ, բայց այս բարությունը երբեք էլ կյանքի նկատմամբ պասիվ-հայեցողական վերաբերմունքի հետևանք չէ, այլ մարդկանց նկատմամբ տածած խորագույն սիրո, նրանց կյանքը լուսավոր ու գեղեցիկ դարձնելու ձգտման արգասիք:

Այս մեղմ ու համեստ մարդու կրծքի տակ կատարյալ քաղաքացու սիրտ էր տրոփում: 1905-ին, երբ Պետերբուրգի կոնսերվատորիայում ուսանողական հուզումներ են բռնկում, և նրանց համախոհ Ռիմսկի-Կորսակովը հանվում է պրոֆեսորական կազմից, Սպենդիարյանն անհապաղ բողոքի ձայն է բարձրացնում այդ խայտառակ որոշման դեմ: Մամուլում նա հրապարակում է Ռիմսկի-Կորսակովին ուղղված բաց նամակ.

«Թանկագին Նիկոլայ Անդրեևիչ,— գրում է Սպենդիարյանը:— Ձեր մեջ բարձր գնահատելով ազնվագույն ու արդարամիտ մարդուն և ակնածանքով խոնարհվելով ռուս արվեստում Ձեր վիթխարի նշանակության առաջ, անկեղծ համակրանքս եմ հայտնում Ձեր արդարացի ու ազնիվ բողոքի հանդեպ, որ արտահայտել եք կոնսերվատորիայի դիրեկտորին հղած նամակում: Ես չեմ կարող խեղդել իմ մեջ խոր զայրույթի զգացումը, որ հարուցել է այդ բողոքի առթիվ կոնսերվատորիայից Ձեզ ազատելու փաստը: Մի փաստ, որն ամոթալի է ազատողների համար, անհավատալի ու աննախընթաց:

Ձեր աշակերտ Ս. Սպենդիարյան:

Յալթա, 29 մարտի, 1905 թ.»:

Ամեն մի անարդարություն— և՛ մեծ, և՛ փոքր, խորապես խոցում էր նրան, և նա արձագանքում էր անմիջապես: Հայտնի է, որ օգնության համար շարունակ նրան էին դիմում շատերը, այդ թվում և երաժիշտներ, արտիստներ, ուսանողներ: Նա միշտ որևէ մեկին աշխատանքի էր տեղավորում, օժանդակում նյութապես, կամ օգնում բարի խոսքով: Նրան հանգիստ չէր տալիս այն միտքը, որ աչքաթող է արված Կալիննիկովի շիրիմը. նա կարողացավ հասարակական կարծիք ստեղծել, հանգանակություն կազմակերպել և մի քանի տարվա անդուլ ջանքերով հասավ այն բանին, որ պատշաճ հուշարձան կանգնեցվեց ռուս տաղանդավոր կոմպոզիտորի շիրմին:

Մարդուն, արվեստին անշահախնդիր նվիրվելու նման օրինակներն այնքան էլ շատ չեն: Անշուշտ, այս ամենը նրանից խլում էր բավականին թանկագին ժամանակ, որ կոմպոզիտորը կարող էր հատկացնել ստեղծագործական աշխատանքին: Սակայն, առանց հոգեկան այդպիսի շռայլության և ինքնանվիրման, կոմպոզիտորի ստեղծագործությունը չէր լինի այն, ինչ է: Համենայն դեպս, կկորցներ իր շատ կարևոր ու թանկ հատկանիշը:

Սպենդիարյանը ջերմորեն ողջունեց Հոկտեմբերյան հեղափոխությունը և մեկընդմիշտ կանգնեց ժողովրդի կողմը: Եվ այդ բնական է: Իր քաղաքացիա-

կան պարտքն այդպես խորությամբ զգացող արվեստագետը չէր կարող հոգով չփարել փրկարար Հոկտեմբերին։ Այդ փոթորկահույզ ժամանակները նա ապրեց գրեթե տենդագին խանդավառությամբ, մշակեց հեղափոխական երգեր, եռանդուն մասնակցեց Ղրիմի երաժշտական հասարակական կյանքին։

Արձագանքելով Սովետական Հայաստանի կառավարության հրավերին՝ Սպենդիարյանը 1924-ին եկավ Երևան՝ մշտապես բնակվելու այնտեղ և ղեկավարելու հանրապետության երաժշտական կյանքը։ Այժմ, ժամանակի հեռավորությունից, առավել ցայտուն է երևում կոմպոզիտորի այդ քայլի մեծությունը։ Չէ՛ որ այն ժամանակ նա արդեն երիտասարդ չէր, խախտվել էր նրա առողջությունը և, թողած ընտանիքը, սովորական կենցաղը, նա հաստատվեց մի քաղաքում, որ նոր էր միայն սկսել բուժել պատերազմի հասցրած ծանր վերքերը, գրեթե զուրկ էր կենցաղային տարրական հարմարություններից, դեռևս չէր ապրում կուլտուրական լիարյուն կյանքով։

Սպենդիարյանը, անշուշտ, լավ էր հասկանում այս ամենը։ Սակայն ողջ կյանքում նա երազել էր իր ստեղծագործությունը «տանել հարազատ Հայաստանին ակտիվ ծառայելու ուղիով»։ Եվ այժմ, երբ ստեղծվել էր երազն իրականացնելու ռեալ հնարավորություն, կարո՞ղ էին արդյոք նրան արգելք լինել դժվարություններն ու զրկանքները։ Սպենդիարյանը պատանեկան կրքով նվիրվեց Սովետական Հայաստանի երաժշտական նոր կյանքի ստեղծմանը։

Սպենդիարյանը բոլոր ուժերը ներդնում է մանկավարժական աշխատանքում, իր վիթխարի փորձը հաղորդում երիտասարդ երաժիշտներին, դառնում սիմֆոնիկ նվագախմբի և առաջին երաժշտական հրատարակչության հիմնադիրը։ Տքնաջան աշխատելով, նա ուսումնասիրություններ է կատարում, ունկնդրում է, զննում...

Ժամանակակիցները պատմում են, որ Սպենդիարյանը կարող էր ժամերով կանգնել որևէ նրբանցքում ու լսել ծերունի դուդուկահարի նվագը, կամ հրավիրել նրան տուն ու երկար լսել նրան։ Ժողովրդի ծոցից ելած երաժիշտների հետ անմիջական շփման արգասիքն էին լինում նրա նոր, հիանալի ստեղծագործությունները։

Հայաստանում Սպենդիարյանը մոտիկից ծանոթացավ Կոմիտասի ստեղծագործությանը, որը մեծ տպավորություն գործեց նրա վրա։ Այստեղ նա շփվեց նաև հայ մտավորականության ականավոր ներկայացուցիչների հետ։ Նրա մտերիմներից ու արվեստակիցներից էին Ավետիք Իսահակյանը, Հովհաննես Հովհաննիսյանը, Ալեքսանդր Թամանյանը, Մարտիրոս Սարյանը, Ռոմանոս Մելիքյանը։ Նրանց հետ մեկտեղ Սպենդիարյանն ակտիվ մասնակցում էր իր ժողովրդի վերածննդին, նրա մշակույթի վերածննդին։

Պատահական չէ, որ այժմ այսքան մեծ տեղ ենք հատկացնում Սպենդիարյան-մարդուն, Սպենդիարյան-քաղաքացուն։ Անխզելի կապ կա արվեստագետի անձնավորության ու նրա ստեղծած արվեստի միջև։ Կյանքից, հասարակությունից կտրված սովորական մարդը չի կարող ստեղծել գեղարվեստական չխամրող արժեքներ։ Մեծ արվեստի երկերի անկրկնելի հմայքի մեջ մենք միշտ զգում ենք արվեստագետի ներաշխարհի հարստությունը, ներաշխարհ, որ ասես իր մեջ է ժողովել դարաշրջանի ուրախությունն ու վիշտը։

Այդպես է և Սպենդիարյանի երաժշտությունը, որն իսկույն դյութում է իր հոգեկան անաղարտությամբ, հստակությամբ, ներքին ազնվությամբ, մտքի ու զգացմունքների կատարյալ ներդաշնակությամբ։ Այս հատկանիշները պարզ-



որոշ դրսևորվում են նրա՝ դեռևս առաջին սիմֆոնիկ պիեսներում՝ *Օրորոցայինում* և *Հինավուրց պարում*՝ գրված 1895—1896-ին։ Այս հատկանիշներն ունի նաև նրա վերջին նշանակալից գործը՝ *Երևանյան էտյուդները*, այս անգամ արդեն բոլորովին այլ մակարդակով ու որակով։ Այստեղ կա ո՛չ միայն զգացմունքների անաղարտություն, այլև արտահայտչական միջոցների ինչ-որ ինքնատիպ մաքրություն։ Ցուցադրական, շինծու, արտաքուստ էֆեկտավոր ոչ մի բան։ Սպենդիարյանի լեզուն խիստ է, հակիրճ և, միաժամանակ, այնքան ճշգրիտ, որ որոշակի կերպարների և իրական կյանքի պատկերների տպավորություն է ստեղծում։ Դա Սպենդիարյանի ռեալիստական արվեստի ամենացայտուն առանձնահատկություններից է։

Հիշենք, օրինակ, նշանավոր *Ղայթարման*, *Ղրիմի էսքիզները*՝ դանդաղ, թախծոտ-հուզական նախերգով, *Երեք արմավենու* անծայր անապատի և մոտեցող քարավանի պատկերները, *Բեդա-քարոզիչ* սիմֆոնիկ բալլադի խստաշունչ, միաժամանակ վեհ ու հանդիսավոր կոլորիտը։

Կոմպոզիտորի վաղ շրջանի գործերում արդեն Արևելքը ներկայանում է առանց որևէ էկզոտիկ զունազարդման, իր ողջ հավաստիությամբ, կենսական որոշակիությամբ։ Հենց սա էլ նկատի ուներ Լյադովը՝ ասելով. «Սպենդիարյանի երկերում Արևելքը նոր է, դեռ չօգտագործված հայրենական ստեղծագործողների կողմից»։

*Ղրիմի էսքիզների* զմայլելի երկու շարքերում կենդանանում են Ղրիմի բնության, ժողովրդական կենցաղի բանաստեղծական պատկերները։ Որքա՜ն լույս, բերկրանք, հումոր կա այստեղ, որքա՜ն նրբորեն է դրսևորվում ժողովրդական մեղեդիների իսկական գեղեցկությունը։ Եվ, պատահական չէ, որ այս սիմֆոնիկ գործը մինչև օրս էլ համերգային բեմահարթակներում ամենից շատ կատարվող ստեղծագործություններից է։

Բոլորովին այլ բնույթի է *Երեք արմավենի* սիմֆոնիկ պատկերը, որի երաժշտության դրամատիկական պաթոսի մեջ յուրօրինակ ձևով արտացոլվել են 1905 թվականի հեղափոխությանը նախորդած ժամանակաշրջանի տրամադրությունները։ Իր ազատասիրական գաղափարները, ճնշման ու բռնության դեմ ուղղված բողոքը կոմպոզիտորն այստեղ արտահայտել է գեղարվեստական մեծ ուժով։ *Երեք արմավենին* հաստատուն դարձրեց կոմպոզիտորի փառքը, լայն ճանաչում բերեց նրան։ Հետաքրքրական է նշել, որ այդ ստեղծագործությանը դիմեց ռուս հայտնի բալետմեյստեր Ֆոկինը և 1912 թվականին բալետը բեմադրեց Բեռլինում։ Բալետին մասնակցում էր ռուս մեծ պարուհի Պավլովան։ Սպենդիարյանի երաժշտությամբ բալետը ներկայացվեց նաև Միլանի Լա-Սկալա թատրոնում։ Ժամանակի ամենահռչակավոր դիրիժոր Արտուր Նիկիշն այդ օրերին ասաց. «Այս ստեղծագործությունն իր թարմությամբ հիշեցնում է Գրիգին և, միևնույն ժամանակ, սա ձեր հրաշալի Արևելքն է»։

Արևելքն աստիճանաբար ավելի ազգային կերպարանք է առնում Սպենդիարյանի ստեղծագործություններում, նրա երաժշտությունն առավել սերտորեն և անմիջականորեն է կապվում հայ ժողովրդական արվեստի ակունքներին։

Դեռևս Ալեքսանդր Ծատուրյանի *Ալ վարդ* և Ռափայել Պատկանյանի *Արևելյան օրորոցային* բանաստեղծությունների հիման վրա գրված ռոմանսներում, որոնք Սպենդիարյանի վաղ շրջանի գործերն են և մեծ մասսայականություն են վայելում հայկական միջավայրում, մենք, ասես, տեսնում ենք այն

պագա ստեղծագործությունների նախատիպերը, որոնցում այնպիսի ուժով արտացոլվեց մեծ հայրենասեր արվեստագետի հոգին:

Այդ ստեղծագործությունների մեջ առանձնահատուկ տեղ գրավեցին *Այնտեղ, այնտեղ՝ դեպ վեհ այն դաշտը* հայրենասիրական երգը և *Առ Հայաստան* կոնցերտային արիան: Դիմելով Խաչատուր Աբովյանի և Հովհաննես Հովհաննիսյանի գործերին, Սպենդիարյանը գրեց խորապես հուզիչ ստեղծագործություններ, որոնցում արտացոլեց հարազատ ժողովրդի արիությունը, անընկուն կամքն ու հայրենասիրությունը, արտահայտեց իր մեծ հավատը հայրենիքի պայծառ գալիքի նկատմամբ:

Ազգային ինքնատիպ արվեստի ստեղծման բնագավառում կոմպոզիտորի փառապսակն եղավ *Ալմաստ* օպերան, որը ծնվեց Հովհաննես Թումանյանի հետ ստեղծագործական սերտ համագործակցությունից: Երբ Սպենդիարյանը Թիֆլիսում էր, մեծ բանաստեղծը և կոմպոզիտորը ամեն օր հանդիպում էին, ոգևորված աշխատում ապագա օպերայի սցենարի վրա:

Հայկական օպերաների շարքում *Ալմաստը* բացառիկ տեղ ունի և՛ գաղափարական-գեղարվեստական սկզբունքի խորությամբ ու համարձակությամբ, և՛ երաժշտական հարուստ արտահայտչականությամբ, և՛ դասական կատարյալ վարպետությամբ. պարտիտուրան գրված է ժամանակի համաշխարհային օպերային արվեստի լավագույն նվաճումների մակարդակով:

*Ալմաստի* մեջ նվագակցությունը ո՛չ միայն արտահայտիչ է, այն առաջատար դեր է խաղում օպերայի հոգեբանական բարդ բովանդակությունը բացահայտելու գործում: Երբեմն հենց նվագախմբում է ծավալվում հիմնական երաժշտական գործողությունը, իսկ վոկալ դերերգը հանդես է գալիս միայն որպես բազմաշերտ երաժշտական հյուսվածքի «գույներից» մեկը:

Սրանով է արտասովոր *Ալմաստ* օպերան, և այս անսովորությունը լրիվ չի բացահայտված: Ա. Սպենդիարյանը գրել է երաժշտական դրամա՝ միջանցիկ, անընդմեջ զարգացող երաժշտական գործողությամբ: Դրամատիկ իրավիճակների սրությունն ու բնավորությունների բարդությունը նա ձգտել է ներկայացնել վոկալի և նվագախմբի նոր հարաբերակցությամբ, ուր նրանք հանդես են գալիս անխախտ միասնությամբ, ուր օգտագործվում են ժամանակակից սիմֆոնիկ նվագախմբի արտահայտչական ամենահարուստ հնարավորությունները:

*Ալմաստ* օպերայի այս նպատակայնությունն անտեսելն անհնար է: Մեր կարծիքով, հնարավոր չէ և նեղացնել ու սահմանափակել օպերայի կերպարների բովանդակությունը: Ազգային էությունն *Ալմաստում* արտահայտված է գեղարվեստական մեծ ուժով, վառ ցուցադրված է հայերի հերոսական պայքարը պարսիկ նվաճողների դեմ: Բայց այս ամենի մեջ պարզորոշ ի հայտ է գալիս նաև օպերայի համամարդկային փիլիսոփայական իմաստը: Այստեղ մարդկային մեծ կրքեր են բորբոքվում, և կոմպոզիտորը սևեռուն խորհում է մարդու, աշխարհի մասին: Արտակարգ բազմակողմանի են բացահայտված առաջատար գործող անձանց՝ Ալմաստի, Նադիր շահի, Թաթուլի կերպարները: Ամենևին պատահական չէ, որ այդ հերոսների մասին մինչև օրս էլ վիճում են այնպես, ինչպես կվիճեն կենդանի մարդկանց մասին: Եվ սա լավագույն հաստատումն է օպերայի կենսունակության:

Սպենդիարյանը, ինչպես և Կոմիտասը, խորապես գնահատում էր ժողովրդական երաժշտությունը, այն համարում կոմպոզիտորական ստեղծագործության հիմքը: Բուն ժողովրդական շատ մեղեդիներ է օգտագործել նա



*Ալմաստ* օպերայում: Զարմանալի շատ բան կա ժողովրդական նյութին դիմելու սպենդիարյանական սկզբունքներում, որ դեռ կարոտ է ուսումնասիրության ու լրջմիտ վերլուծության: Սպենդիարյանը, որպես կանոն, փոխակերպում է ժողովրդական նյութը:

Ժողովրդական նյութի նկատմամբ ստեղծագործական մոտեցման, ժողովրդական մեղեդիների ներքին հնարավորությունների բացահայտման և դրանք գեղարվեստական խոր ընդհանրացումների հասցնելու ունակությունն է հենց Սպենդիարյանի հանճարի, նրա վարպետության «գաղտնիքներից» մեկը:

* * *

Վերջերս հրատարակվեցին Ղրիմի քաղաքացիական կռիվների մասնակից Լ. Լենցերի հուշերը, որոնցում նա պատմում է համառուսաստանյան պարենամթերային III խորհրդակցության մասին, որ տեղի է ունեցել 1921-ի հուլիսի 16-ին, Վ. Ի. Լենինի մասնակցությամբ: Խորհրդակցության վերջում Վլադիմիր Իլյիչը Լենցերին հարցրեց.

— Թեոդոսիայի մոտակայքում մտավորականների մի հինավուրց առողջարան կա: Այժմ այնտեղ ապրում են բժիշկ Վերեսաևը, բանաստեղծ ու նկարիչ Վոլոշինը, դերասանուհի Մասալիտինովան, իսկ Սուդակում՝ կոմպոզիտոր Սպենդիարյանը: Ինչպե՞ս են նրանց մատակարարում:

— Առաջ նրանք ստանում էին ծառայողի մթերաբաժին, իսկ այժմ պարենամթերքի ժողովրդական կոմիսարիատի կոլեգիան որոշել է նրանց ապահովել ակադեմիական մթերաբաժնով, պատասխանեց Լենցերը:

— Ա՛յ, դա լավ է,— ասաց Լենինը գոհունակությամբ»:

Մեծ առաջնորդի ուշադիր վերաբերմունքը Ալ. Սպենդիարյանի նկատագրի նկատմամբ՝ արտահայտված այսքան մարդկայնորեն, պարզ ու հուզիչ, խորապես խորհրդանշական է: Այս փաստի մեջ երևում է, թե որքան բարձր է գնահատվում հասարակական կյանքում արվեստագետի բացառիկ դերը, արտացոլվում է մշակույթի համակողմանի զարգացման համար ամենանպաստավոր պայմաններ ստեղծելու մտահոգությունը: Եվ, պատահական չէ, որ հենց սովետական տարիներին լիովին բացահայտվեց Սպենդիարյանի՝ որպես ազգային մեծ կոմպոզիտորի, դերն ու նշանակությունը, և նրա ստեղծագործությունն իրոք համաժողովրդական ճանաչում ստացավ:

1933 թ. *Ալմաստ* օպերայով բացվեց Երևանի օպերայի և բալետի թատրոնը, որին հետագայում շնորհվեց Սպենդիարյանի անունը:

Սպենդիարյանի անունը մշտապես հնչում է համերգասրահներում, ռադիոյով ու հեռուստատեսությամբ: Կոմպոզիտորի ժառանգությամբ դաստիարակվել են Սովետական Հայաստանի երաժիշտների շատ սերունդներ:

Սպենդիարյանի հոբելյանի օրերին երաժշտական հասարակայնությունը լավ նվեր ստացավ. հրատարակվեց *Ալմաստ* օպերայի կլավիրը. հրատարակման է պատրաստված այդ օպերայի պարտիտուրան: Դրանով իսկ ավարտվում է հայ մեծ կոմպոզիտորի բոլոր երկերի ակադեմիական հրատարակությունը:

Սպենդիարյանի հոբելյանը մեծ և ուրախառիթ տոն դարձավ ո՛չ միայն հայ երաժշտական արվեստի, այլև Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների երաժշտական արվեստի համար: Ժողովրդի սրտում միշտ անմար կմնա երախտագիտությունն ու սերը իր մեծ զավակի՝ հայրենասեր ու արվեստագետ, կախարդական հնչյունների արարիչ, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության անմահ երգիչ Ալեքսանդր Սպենդիարյանի հանդեպ:

# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՌՀԱՎԱՏՉՅԱՆ

Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Այս տարի լրանում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ պատմության մեջ առաջին աշխատավորական պետությունների միավորման 50-ամյակը:*

*Պետության գոյության համար կես դարն, անշուշտ, առանձնապես երկար մի ժամանակաշրջան չէ, քանի որ քաղաքակրթության պատմության մեջ բազմաթիվ պետություններ են եղել (և դեռ կան), որոնք գոյատևել են հարյուրամյակներ և այս կամ այն չափով իրենց կնիքը դրել մարդկության զարգացման վրա: Սակայն նրանցից և ոչ մեկը համաշխարհային զարգացման վրա այնպիսի խոշոր և արմատական ազդեցություն չի ունեցել, որքան լոկ կես դար հարատևող ՍՍՀՄ-ը:*

*Եվ դա միանգամայն օրինաչափ է ու ակնհայտ: Նախորդ կամ անցյալից՝ ստրկատիրության, ֆեոդալիզմի ու կապիտալիզմի դարաշրջաններից սերող բոլոր պետություններից ՍՍՀՄ-ը արմատապես տարբերվում է իր սոցիալ-քաղաքական որակով: Եթե դրանք բոլորը շահագործողական տիպի պետություններ են, այս կամ այն երկրի շահագործող փոքրամասնության ձեռքին բնության ապարատ աշխատավոր մեծամասնությանը հնազանդության մեջ պահելու, և, հետևաբար, նաև այլ երկրների ժողովուրդներին նվաճելու ու ենթարկելու համար, ՍՍՀՄ-ը հիմնադրվել է որպես բոլորովին նոր տիպի՝ աշխատավոր մեծամասնության, բանվորների և գյուղացիների պետություն, որպես նրանց ձեռքին մարդու շահագործումը վերացնելու, մարդկանց սոցիալական՝ տնտեսական, քաղաքական, մշակութային հավասարությունը, տարբեր ազգերի ու ազգությունների, տարբեր ռասաների մարդկանց հավասարությունը և եղբայրական համագործակցությունը ապահովելու մի հզոր ապարատ:*

*Սա մի համաշխարհային-պատմական խնդիր էր, մի գերազույն առաքելություն, որի իրականացումը շրջադարձային նշանակություն ունեցավ մարդկության հետագա զարգացման, նրա բուն իսկ մարդկային գոյության համար: Եվ ահա կես դար անընդմեջ ՍՍՀՄ-ը անսերեր ու հաստատակամորեն իրականացնում է այդ համաշխարհային-պատմական առաքելությունը, անշեղորեն քայլում մարդկային առաջընթացի ավանգարդում, իրականացնում աշխարհին օրինակ ու հույս տվող արմատական սոցիալական վերափոխումներ, իր հզորությամբ և անօրինակ-եռանդով ձախողում իմպերիալիստների և բոլոր մնացած սև ուժերի մարդատյաց ձեռնարկումները, թև ու թիկունք հանդիսանում իրենց սոցիալական ու ազգային ազատագրության համար պայքարող բոլոր ժողովուրդներին:*

*ՍՍՀՄ-ը աշխատավոր մարդկության դարավոր երազանքը՝ արդարացի սոցիալիստական հասարակության ստեղծման ու զարգացման անմիջական ներդրությունն է աշխարհում:*

*Դրա համար ահա ամբողջ կես դար դեպի ՍՍՀՄ-ն են ձգտում բոլոր նրանք, ովքեր պայքարում են առաջադիմության, խաղաղության և ամենաարդարացի կոմունիստական հասարակության կառուցման համար: Այդ միտումով ՍՍՀՄ շուրջը համախմբվում են իրենց սոցիալական ազատագրության համար պայքարող աշխատավորական կանգվածները հողագնդի բոլոր ծայրերում, բոլոր այն երկրները, որոնց ժողովուրդները թոթափել են կապիտալիստական բռնատիրության դարավոր լուծը և կանգնել սոցիալիստական զարգացման ուղու վրա, բոլոր ժողովուրդները, որոնք տանջալից ճիգերով կարողացել են ազատագրվել իմպերիալիստների գաղութատիրական կապանքներից կամ դեռ պայքարում են այդ կապանքները փշրելու համար: ՍՍՀՄ գոյությունն ու օրավուր հզորացումը նրանց բոլորի համար մարդկության երջանիկ կոմունիստական գալիքին հասնելու իրական երաշխիքն է:*

*Եվ հենց դրա համար էլ ահա կես դար անընդմեջ ՍՍՀՄ դեմ կենաց ու մահու զոտեմարտ են մղում աշխարհի բոլոր մութ ուժերը, իմպերիալիզմի ու միլիտարիզմի ներկայացուցիչներն ու նրանց պնակալեզները, մարդկության տականքները: ՍՍՀՄ-ը եղել ու մնում է նրանց բոլորի աչքի փուշը, նրանց սև գործերի ու չարանենգ նպատակների օրավուր ահագնացող արգելակը: Դրա համար էլ նրանք ՍՍՀՄ հիմնադրման առաջին իսկ օրից անդադար դավեր են նյութում, հազար ու մի տեսակ քայլեր ձեռնարկում նրա կործանման կամ գոնե ինչ որ չափով թուլացման համար:*

*Բայց ո՛չ մի ուժ աշխարհում, ո՛չ մի դավ, ո՛չ մի խարդավանանք և նույնիսկ ռազմական հարձակում չի կարողացել սասանել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության գոյությունն ու առաջընթացը: Ի հեճուկս այդ բոլոր սև ուժերի ՍՍՀՄ-ը տարեցտարի, օր առ օր ավելի է հզորանում և ավելի ու ավելի լայն չափեր է ընդունում նրա բարերար ազդեցությունը աշխարհի և նրա ժողովուրդների բախտի վրա:*

### ՍՍՀՄ-Ը ՈՐՊԵՍ ՊԱՏՄԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԱՐԴՅՈՒՆՔ

*ՍՍՀՄ հանդես գալը պայմանավորված էր ոչ թե հանգամանքների պատահական զուգադիպությամբ, այս կամ այն անհատների ցանկությամբ, այլ մարդկային պատմության զարգացման, մասնավորապես վերջին դարերի օրինաչափ ընթացքով:*

*Սեփական ու օտար բռնապետների, արտադրության միջոցների տերերի*

ճնշման ու շահագործման տակ տառապող աշխատավոր զանգվածները դարեր շարունակ երազել են այնպիսի արդարացի հասարակարգի մասին, ուր մարդիկ ազատ ու հավասար լինեին: Դրան հասնելու ոչ մի իրական հնարավորություն չունենալով, նրանք անդադրում պայքարից հուսահատ միայն երազել են, իրենց ձգտումներն արտահայտելով ժողովրդական բանահյուսության ստեղծագործություններ՝ հեքիաթների ու էպոսի մեջ: Մեծն Թումանյանի խոսքերով ասած նրանք տենչում էին «Երկրի մեջ երջանիկ հաշտ ու խաղաղ մարդկություն»:

Բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ազատագրությունը շահագործումից ու ճնշումից, ինչպես ցույց տվեցին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, հնարավոր է միայն սոցիալիստական հեղափոխության միջոցով արտադրության միջոցների մասնավոր սեփականության վերացման ու համաժողովրդական սեփականություն հաստատելու ճանապարհով: Բայց դրա համար բավական չէին առանձին երկրների բանվորների մեկուսացած ջանքերը, որովհետև կապիտալը ոչ միայն միջազգային ուժ էր, այլև բազմաթիվ ժողովուրդների բռնի միավորել էր բուրժուական գաղութային կայսրությունների լծի տակ: Դրա համար էլ բանվորների ազատագրությունը հնարավոր էր նրանց միջազգային համերաշխության, միավորման ուղիով: Բանվորների սոցիալական ազատագրությունն էլ իր հերթին պետք է հանգեցներ նաև ժողովուրդների ազատագրմանը գաղութատիրական կապանքներից, որովհետև, ինչպես նշում էին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, «Չի կարող ազատ լինել մի ժողովուրդ, որը ճնշում է ուրիշ ժողովուրդներին», «Այն ժողովուրդը, որը հարստահարում է մի ուրիշ ժողովրդի, կռում է իր սեփական շղթաները» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին,— Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, Եր., 1960, էջ 208, 115): Եվ նոր, սոցիալիստական հասարակարգում բնականաբար «Ինչ չափով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից, այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից:

Ազգերի ներսում եղած դասակարգերի անտագոնիզմի հետ միասին կվերանան նաև թշնամական հարաբերությունները ազգերի միջև» (նույն տեղում, էջ 44):

Մարդկության հետագա զարգացումն ապացուցեց պրոլետարիատի մեծ առաջնորդների այս գիտական կանխատեսումների ճշմարտացիությունը:

Տակավին անցյալ դարի վերջերից Ռուսաստանում բանվոր դասակարգի ազատագրական շարժումը գլխավորեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հանճարեղ աշակերտ Վ. Ի. Լենինի հիմնադրած նոր տիպի կոմունիստական ինտերնացիոնալ կուսակցությունը, որն իր հետևից տարավ բազմաթիվ ազգերի միլիոնավոր աշխատավորական զանգվածներին:

Վ. Ի. Լենինը զարգացրեց և նոր աստիճանի հասցրեց մարքսիստական ուսմունքը, և, մասնավորապես, մշակեց տվյալ կոնկրետ ժամանակաշրջանում ու որոշակի երկրում պրոլետարիատի սոցիալիստական հեղափոխության կոնկրետ ուղիները, ստրատեգիան ու տակտիկան և, որպես դրա կարևոր կողմերից մեկը, ազգերի ազատագրության և նրանց համերաշխության հաստատման հարցը: Ո՛չ թե ազգերի մեկուսացում ու հակադրություն, ո՛չ թե նրանց միջև բռնի կապերի պահպանում, այլ նրանց իրական հավասարություն՝ սոցիալական ազատագրության, սոցիալիզմի հաստատման հողի վրա,— սա էր այդ հարցի մեխը: Եվ Վ. Ի. Լենինը շեշտում էր. «Ազգերի լիակատար իրավահա-



վասարություն, ազգերի ինքնորոշման իրավունք, բոլոր ազգերի բանվորների միաձուլում,— ազգային այս ծրագիրն է ուսուցանում բանվորներին մարքսիզմը, ուսուցանում ամբողջ աշխարհի փորձը և Ռուսաստանի փորձը» (Երկեր, հ. 20, էջ 569):

Այդ ծրագրին համապատասխան կոմունիստական կուսակցությունը պայքարում էր ցարական կայսրության կազմի մեջ բռնությամբ միավորված բոլոր ժողովուրդների ինքնորոշման՝ ընդհուպ մինչև անջատվելու և ինքնուրույն պետություն կազմելու իրավունքի անվերապահ ճանաչման համար, միաժամանակ նպատակ ունենալով ոչ թե այդ ազգերի մեկուսացումը, հեռացումը իրարից, այլ նրանց հետագա կամավոր միավորումը պրոլետարիատի դիկտատուրայի, ազատության ու հավասարության հիմքի վրա:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Ռուսաստանում 1917 թվականին հաղթանակած սոցիալիստական հեղափոխությունը հնարավորություն տվեց ստեղծելու ժողովուրդների կամավոր միավորման քաղաքական-սոցիալական ու տնտեսական ամրակուռ հիմքերը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն սկսվեց և իրականացավ ոչ միայն որպես մեկ ժողովրդի, այլ որպես ռուսական կայսրության կազմում գտնվող տասնյակ ժողովուրդների աշխատավորների սոցիալական արմատական հեղաշրջում, որի հիմնական ուժը, անտարակույս, ռուս մեծ ժողովրդի բանվորական զանգվածներն էին:

Եվ Ռուսաստանի հաղթանակած բանվորների ու աշխատավոր գյուղացիների պետությունն իր առաջին իսկ դեկրետներով հռչակեց ոչ միայն արտադրության բոլոր հիմնական միջոցների մասնավոր սեփականության վերացում և դրանց հանձնումն անմիջական արտադրողներին, այլև ռասայական ու ազգային բոլոր արտոնությունների և սահմանափակումների վերացում և նախկին ցարական կայսրության սահմաններում ապրող բոլոր ազգերի, ազգությունների և ազգագրական խմբերի լիակատար իրավահավասարություն, իրենց բախտն ինքնուրույն տնօրինելու իրավունք:

Այդ սկզբունքներին համապատասխան՝ Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության կառավարությունը ոչ միայն ճանաչեց Ֆինլանդիայի, Լեհաստանի, Մերձբալթյան երկրների, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Անդրկովկասի, Միջին Ասիայի ժողովուրդների պետական ինքնուրույնությունը, հրաժարվեց առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում ցարական կառավարության նվաճած բոլոր տերիտորիաներից, այլև պետական ինքնավարություն հռչակեց բուն Ռուսաստանի տերիտորիայի վրա ապրող բազմաթիվ ազգերի ու ազգությունների համար՝ ռուսաստանյան սովետական հանրապետությունը հռչակելով ֆեդերատիվ սովետական սոցիալիստական հանրապետություն:

Այս բոլորի հետևանքով ռուս ժողովուրդը դարձավ համաշխարհային պատմության մեջ առաջին մեծ ժողովուրդը, որը կամավոր հրաժարվեց շահագործողների դարավոր իշխանությամբ հաստատված իր արտոնություններից, քանդեց մյուս ժողովուրդներին բռնությամբ իրեն հետ կապող կապերը և վերածվեց ժողովուրդների ազատագրման ու նրանց եղբայրական համագործակցության հաստատման համաշխարհային գործոնի:

1922 թ. ստեղծվեց իրար սահմանակից և բարեկամական ամենասերտ կապերով կապված սովետական սոցիալիստական հանրապետությունների մի

ամբողջ համակարգ: Այդ հանրապետությունների քաղաքական կարգի միասնությունը (պրոլետարիատի դիկտատուրա), տնտեսական շահերը, միջազգային իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ միասնական ուժերով դիմակայելու անհրաժեշտությունը, հրամայաբար պահանջում էին ավելի սերտ, պետական-քաղաքական միավորում: 1922 թ. սկզբին միասնական ֆեդերացիայի մեջ միավորվեցին Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի սովետական սոցիալիստական հանրապետությունները՝ ստեղծվեց պատմության մեջ երկրորդ (ՌՍՖՍՀ-ից հետո) սոցիալիստական հանրապետությունների ֆեդերատիվ միավորումը՝ ԱՍՖՍՀ-ն:

1922 թ. դեկտեմբերին սոցիալիստական չորս պետությունների՝ Ռուսաստանյան ֆեդերացիայի, Անդրկովկասյան ֆեդերացիայի, Ուկրաինայի և Բելոռուսիայի սովետների միացյալ համագումարը (սովետների առաջին համամիութենական համագումարը) ընդունեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմակերպման դեկլարացիան և միութենական դաշինքի Պայմանագիրը: Այդ պայմանագրով՝ պահպանելով իրենց պետական ինքնիշխանությունը, միավորվող հանրապետությունները ստեղծեցին նաև ընդհանուր-միութենական իշխանության գերագույն օրգաններ՝ ՍՍՀՄ Կենտրոնական գործադիր կոմիտե, որը հետագայում փոխարինվեց ՍՍՀՄ Գերագույն սովետով, և միութենական կառավարություն:

Սովետների առաջին համամիութենական համագումարի փաստաթղթերում նշված են անկախ սովետական հանրապետությունների միութենական բազմազգ պետություն միավորելու անհրաժեշտության երեք հիմնական շարժառիթները. ժողովրդական տնտեսության վերականգնում և սոցիալիզմի կառուցում, կապիտալիստական շրջապատման պայմաններում երկրի պաշտպանության ամրապնդում և սովետական իշխանության ինտերնացիոնալ բնույթը:

Այսպիսով, ՍՍՀՄ կազմակերպումը հասարակության զարգացման անհրաժեշտ և անխուսափելի արդյունքն էր, տարբեր ազգերի բանվորների և աշխատավորական հոծ զանգվածների միավորման ձգտումի օրինաչափ ձևավորումը պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում, կապիտալիզմի ստեղծած ազգերի բռնի միավորմանը հակադրվող նրանց կամավոր դաշինքը, անդասակարգ կոմունիստական հասարակության կառուցման հուժկու լծակը, որն իրականություն դարձավ բազմաթիվ ազգերի բանվորների միացյալ կոմունիստական կուսակցության անդուլ ջանքերով: Դրա համար էլ Վ. Ի. Լենինը հատկապես նշում էր, որ սոցիալիստական հանրապետությունների միությունը հարկավոր է մեր երկրի ժողովուրդներին, ինչպես «հարկավոր է համաշխարհային կոմունիստական պրոլետարիատին՝ համաշխարհային բուրժուազիայի դեմ պայքարելու և նրա ինտրիգներից պաշտպանվելու համար» (Երկեր, հ. 36 էջ 704—705):

Սոցիալիստական հասարակարգի զարգացումով ՍՍՀՄ դերը ոչ թե նվազում, այլ անընդհատ աճում է, դրանով իսկ հանգեցնելով նրա անշեղ ամրապնդմանն ու հզորացմանը:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՄՐԱԿՈՒՌ ԴԱՇԻՆՔԸ

Անցյալ և ներկա բոլոր բազմազգ պետություններից ՍՍՀՄ տարբերվում է ոչ միայն իր սոցիալ-քաղաքական բնույթով, այլև իր կազմակերպման սկզբունքով: Նա միաժամանակ և՛ ինքնիշխան ազգային սոցիալիստական պետու-



թյունների դաշնադրային միավորում է, և՛ այդ պետությունների ընդհանրական շահերն արտահայտող միասնական պետություն: Այդպիսի կառուցվածքը նրան հնարավորություն է տալիս հետևողականորեն զուգակցելու նրա կազմի մեջ մտնող բոլոր սոցիալական և ազգային խմբերի ընդհանրական և յուրահատուկ շահերը, ապահովելու նրանց ոչ միայն իրավական, այլև փաստական (քաղաքական, տնտեսական, մշակութային) հավասարության հաստատումը:

ՍՍՀՄ-ում իրականացված ազգային ինքնորոշման ամենաբազմազան ձևերը հնարավորություն ընձեռեցին կազմակերպելու զարգացման տարբեր աստիճանների վրա գտնվող, իրենց քանակով իրարից խիստ տարբեր ազգերի, ազգությունների և ազգագրական խմբերի ազգային-պետական միավորումներ, վերականգնելու մի շարք ազգերի դարեր առաջ կորցրած ինքնուրույն պետականությունը, ինչպես և վերջին դարերում կազմավորված մի շարք ազգություններին նրանց պատմության մեջ առաջին անգամ տալու ազգային պետականություն:

ՍՍՀՄ գոյության անցած կես դարում այդ ձևերն անընդհատ ամրապնդվել ու կատարելագործվել են, ընդլայնելով ազգերի անկախության, նրանց դաշինքի ու համերաշխության շրջանակները: Միութենական դաշինքի մեջ մտնող հանրապետությունների թիվն այդ ժամանակաշրջանում աճել է ինչպես մի շարք ինքնավար հանրապետությունների՝ միութենականի վերածվելու (Ղազախստան, Ուզբեկստան, Տաջիկստան, Թուրքմենստան, Կիրգիզիա, Մոլդավիա), մի քանի հանրապետությունների անմիջականորեն միութենական հռչակվելու (Ադրբեջան, Հայաստան, Վրաստան), ինչպես և մի շարք երկրներում սոցիալիստական կարգեր հաստատելու և կամավոր ՍՍՀՄ մեջ մտնելու (Լատվիա, Լիտվա, Էստոնիա) ճանապարհով: Չորս միութենական հանրապետության փոխարեն այժմ ՍՍՀՄ-ն են կազմում 15 ազգային հանրապետություններ, որոնց ներսում ազգային պետականության տարբեր ձևերով (ինքնավար հանրապետություն, ինքնավար մարզ, ազգային շրջան) հանդես են գալիս ևս 38 ազգություններ ու ազգեր:

Այսպիսով, ՍՍՀՄ-ը բազմաթիվ ազգերի ու ազգությունների մի՛ ամրակուռ դաշինք է, սոցիալիստական ազգային պետությունների մի միջազգային համակարգ, որտեղ իրենց արժանավոր ավանդն են ներդնում բոլոր մեծ ու փոքր ժողովուրդները: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում «Սոցիալիզմի ուղին բռնած իրավահավասար ժողովուրդների այդ հզոր միության կազմավորման, ամրապնդման և զարգացման գործում իրենց դերը խաղացին մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները և առաջին հերթին ռուս մեծ ժողովուրդը: Իր հեղափոխական եռանդի, անձնվիրության, աշխատասիրության, խոր ինտերնացիոնալիզմի շնորհիվ նա իրավամբ արժանացել է մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների անկեղծ հարգանքին» (Լ. Ի. Բրեժնև,— ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարին, Եր., 1971, էջ 118):

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԻՋՆԱԲԵՐԴԸ

ՍՍՀՄ-ը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով սկսված նոր սոցիալական կարգի անմիջական իրականացումն ու զարգացումն է:

ՍՍՀՄ շրջանակներում կյանք առավ ու առնացավ արտադրության սոցիալական եղանակը՝ իր նո՛ր հասարակական հարաբերություններով, նո՛ր սոցիալական կառուցվածքով: Լինելով բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի վրա հենվող աշխատավորական պետություն, նա արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը փոխարինեց համաժողովրդական սեփականությամբ, շահագործման ու ենթարկման արտադրական հարաբերությունները՝ փոխադարձ օգնության և համագործակցության հարաբերություններով և դրանով իսկ հիմնովին փոխեց հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը, վերացնելով շահագործողական դասակարգերն ու նրանց մնացուկները և արմատականորեն փոխելով աշխատավորական դասակարգերի ու խավերի բնույթը:

Այժմ ՍՍՀՄ բնակչության մեջ բոլորովին չկան մասնավոր սեփականատեր, շահագործողներ: Բնակչության 78,4 տոկոսը կազմում են բանվորներն ու ծառայողները, 21,6 տոկոսը կոլտնտեսային գյուղացիությունը և կոոպերացված արհեստավորները: Ընդ որում, արտադրության մեջ զբաղվածների 65,3 տոկոսն արդեն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն:

ՍՍՀՄ-ն աշխարհում առաջին երկիրն է, որտեղ իրականացվեցին 8-ժամյա բանվորական օրը, վճարովի արձակուրդները, ձրի կրթությունն ու ձրի բուժօգնությունն ամբողջ բնակչության համար: Այժմ էլ ՍՍՀՄ-ում սոցիալական ապահովության համակարգը ամենաբարձրն ու համընդգրկողն է աշխարհում: Արտադրության անշեղ աճի հետ միասին այն մշտապես ընդլայնվում և կատարելագործվում է: Ժողովրդական տնտեսության զարգացման 9-րդ հնգամյա պլանով արդեն իրականացվում են մի շարք կարևոր սոցիալական ձեռնարկումներ՝ աշխատավարձի, կենսաթոշակների, ուսանողության կրթաթոշակների հետագա բարձրացում, վճարովի արձակուրդների երկարացում, բնակարանային և բուժման ու հանգստյան հիմնարկների շինարարության հետագա ընդլայնում և այլն:

Սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաստատումը, տնտեսության պլանային վարումը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ամբողջ երկրի ինդուստրացման ու գյուղատնտեսության կոլեկտիվացման իրականացումը հանգեցրին աշխատանքի արտադրողականության աննախընթաց աճին: Այժմ ՍՍՀՄ-ն ավելի շատ արդյունաբերական արտադրանք է տալիս, քան Անգլիան, Ֆրանսիան և Իտալիան միասին վերցրած: Անշեղորեն աճում է ՍՍՀՄ բաժինը համաշխարհային արտադրության մեջ. եթե 50 տարի առաջ դա կազմում էր ընդամենը 3 տոկոս, ապա այժմ 25 տոկոս, այսինքն՝ ամբողջ համաշխարհային արտադրանքի մեկ քառորդ մասը:

ՍՍՀՄ տնտեսական զարգացման կարևոր արդյունքներից մեկը նրա կազմում մտնող բոլոր ժողովուրդների տնտեսական զարգացման հավասարության ստեղծումն է: Սոցիալիստական հանրապետությունների փոխադարձ օգնության շնորհիվ անցյալում հետամնաց ծայրամասերը զարգացել են ավելի արագ տեմպերով, դարձել են ժամանակակից արդյունաբերության զարգացած կենտրոններ և այժմ կարող են համեմատվել ամենազարգացած կապիտալիստական երկրների հետ:

Վիթխարի է ՍՍՀՄ առաջխաղացումը ոչ միայն նյութական, այլ նաև հոգևոր արտադրության բոլոր բնագավառներում: Գիտության, գրականության ու արվեստի, ամբողջ հոգևոր մշակույթի զարգացումով ՍՍՀՄ-ն այժմ քայլում է



համաշխարհային առաջընթացի առաջին շարքում: Դա այն իսկական մշակութային հեղափոխության հետևանքն էր, որն իրականացվեց կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության շնորհիվ:

Մշակութային հեղափոխությունն ամենից առաջ նշանավորվեց լայն զանգվածների անգրագիտության վերացումով և նրանց կրթական մակարդակի անհամեմատ բարձրացումով: ՍՍՀՄ-ն այժմ բնակչության ամենաբարձր կրթական մակարդակ, գիտական աշխատողների և ուսանողության ամենամեծ քանակ ունեցող երկիրն է աշխարհում: Նրա բնակչության մեկ քառորդը սովորում է տարբեր տիպի ուսումնական հաստատություններում:

Այնուհետև, մշակութային հեղափոխությունը նշանավորվեց գրականության ու արվեստի սոցիալական բովանդակության փոփոխությամբ և գրահրատարակության աննախընթաց աճով: ՍՍՀՄ ժողովուրդների բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային արվեստն ամենահումանիստականն է և ամենալայն ճանաչում է գտել ամբողջ աշխարհում: Գրքերի, թերթերի և ամսագրերի հրատարակությամբ ՍՍՀՄ-ը վաղուց անցել է բոլոր զարգացած երկրների մակարդակից և գրավում է աշխարհում առաջին տեղը:

Մշակութային հեղափոխությունը նշանավորվեց նաև զարգացման տարբեր մակարդակների վրա գտնվող ազգերի ու ազգությունների մշակութային փաստական հավասարության ստեղծումով: Նախկինում գիր ու գրականություն չունեցող 40-ից ավելի ազգությունների համար մշակվեց սեփական այբուբեն, որի հիման վրա զարգացավ նրանց մայրենի լեզվով կրթությունը, գրականությունը և արվեստը:

Այդ բոլորի շնորհիվ չտեսնված չափով աճեց գիտության դերը ժողովրդի կյանքում: ՍՍՀՄ-ը քայլում է այժմ գիտության զարգացման ավանգարդում, մի շարք կարևորագույն բնագավառներում տոն տալով ամբողջ համաշխարհային գիտական մտքին: Ավելին, բնակչության կրթական-մշակութային մակարդակի և գիտության աննախընթաց վերելքի շնորհիվ ՍՍՀՄ-ն արդի գիտա-տեխնիկական հեղափոխության, գիտության նորագույն նվաճումները արտադրության մեջ ներդնելու և դա հասարակության առաջընթացին, մարդկանց կենսապայմանների բարձրացմանն ի սպաս դնելու առաջամարտիկն է:

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՕՐՐԱՆԸ

ՍՍՀՄ կես դարյա զարգացման ամենակարևոր արդյունքներից մեկը նոր, սովետական մարդու ձևավորումն է: Սոցիալական արմատական վերափոխումները, կրթության ու մշակույթի անշեղ զարգացումը նոր, ավելի բարձր աստիճանի հասցրին մարդկանց քաղաքական-բարոյական ըմբռնումները, նրանց ամբողջ աշխարհայացքը: Սովետական մարդուն բնորոշ են աշխատանքի նկատմամբ նոր, սոցիալիստական վերաբերմունքը, բարոյական բարձր սկզբունքները, հումանիզմը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը: Սոցիալիզմի շինարարության պրոցեսում մարդկանց և ազգերի փոխհարաբերությունների վերափոխման հետևանքը մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումն էր: ՍՄԿԿ XXIV համագումարում իրավացիորեն նշվեց, որ «Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի և սոցիալական խմբերի, ազգերի և ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության և համագործակցության հարաբերու-

թյուններ: Մեր մարդիկ կոփված են մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ նպատակների ընդհանրությամբ: Սովետական բազմազգ ժողովուրդը այդ միաձույլ համախմբվածությունը ցուցադրում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականությանը միահամուռ հավանություն տալով» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարին, էջ 119):

Սովետական մարդկանց հատուկ է՝ սերն իրենց ծնող ազգության, համաշխարհային քաղաքակրթության մեջ նրա ավանդի, նրա ծոցից սերած գիտության ու մշակույթի ականավոր գործիչների, բանվոր դասակարգի ազատագրման հեղափոխական պայքարի հերոսների, մայրենի լեզվի ու գրականության գանձերի նկատմամբ: Բայց նրանց հատուկ է նաև սերն ու հպարտությունը իրենց միասնական նոր հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության վիթխարի նվաճումների համար, սոցիալիզմի ամբողջ համաշխարհային համակարգի առաջընթացի և աշխարհում խաղացած նրա առաջադիմական դերի համար: Սովետական մարդիկ օրինականորեն հպարտանում են, որ իրենց մեծ հայրենիքը՝ ՍՍՀՄ-ը հայտնի է ոչ թե բռնություններով ու ժողովուրդների գաղութակալումով, այլ սոցիալական ու ազգային ազատությամբ, գիտության ու արվեստի ծաղկումով, երկրի առաջին արհեստական արբանյակի արձակումով, Տիեզերքի անհունների ուսումնասիրության իր առաջաքայլերով, ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու առաջնությամբ, աշխարհում ամենահզոր Ենիսեյի հիդրոէլեկտրակայանի գործարկումով, նոր, վիթխարի դոմենյան հնոցներով: Նրանով, որ սովետական երկիրը բոլորից առաջ է ժողովրդական լուսավորության ու առողջապահության համար իր հատկացումներով, բնակչության 10000 հոգուն ընկնող գիտնականների և ուսանողների թվով, հրատարակվող գրքերի ու պարբերականների քանակով:

Եվ մեծ խորհուրդ կա այն բանի մեջ, որ սովետական մարդիկ հպարտանում են մարդկության առաջընթացն ապահովող, մարդկանց կենսամակարդակի բարձրացումը, նրանց բազմակողմանի զարգացումը, ժողովուրդների հավասարությունն ու բարեկամությունը, աշխարհի խաղաղությունն ամրապնդող գործերով: Բարի և ազնիվ գործերով: Այդպիսին է իր բնույթով ՍՍՀՄ-ը և այդպիսին են սովետական մարդիկ:

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՏՎԱՐԸ

Սոցիալիստական կարգն իր գոյությունն սկսեց հաշտության լենինյան դեկրետով: Մարդկանց ու ժողովուրդների միջև հաշտ ու խաղաղ հարաբերությունների հաստատումը նրա համար ոչ թե մի ինչ որ անցողիկ լոզունգ էր, տակտիկական խուսանավում, ինչպես դա հատուկ է նվաճողական քաղաքականություն վարող իմպերիալիստական պետություններին, այլ նրա հումանիստական խորն էության, ազատագրված ժողովուրդների եղբայրական համագործակցության նոր, կոմունիստական աշխարհի ստեղծելու նրա անսասան ձգտման դրսևորում:

Սոցիալիստական կարգի ու սովետական իշխանության ներքին սոցիալական էությունից բխող այդ միտումը դարձավ ՍՍՀՄ արտաքին քաղաքականության հիմնական առանցքը:



50 տարի ՍՍՀՄ-ն իր տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով անդադրում պայքարում է խաղաղության պահպանման, ժողովուրդների նկատմամբ ամեն տեսակ բռնության ու անարդարության վերացման համար: Դա ակտիվ ու գործնական պայքար է, որը գնալով ավելի ու ավելի է հզորանում, ավելի ուժեղ սանձ է դառնում ժողովուրդներին ստրկացնելու և աշխարհը նոր պատերազմի հորձանուտը ներքաշելու ձգտող իմպերիալիստների համար:

ՍՍՀՄ-ի պայքարը խաղաղության, տարբեր սոցիալական երկրների խաղաղ գոյակցության և դիվանագիտական, տնտեսական ու մշակութային լայն համագործակցության համար վկայում է ոչ թե նրա թուլության, այլ հզորության և ուժի մասին: Այդ ուժի աղբյուրներից մեկը ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամությունն է:

ՍՍՀՄ-ը կարողացավ ոչ միայն դիմակայել այնպիսի ծանր փորձության, ինչպիսին ֆաշիստական պետությունների մինչև ատամները սպառազինված հորդաների ուխտադրուժ հարձակումն էր, այլև սոցիալիստական հայրենիքի համար համաժողովրդական անձնազոհ պայքարի շնորհիվ գլխովին ջախջախել ֆաշիզմը՝ իմպերիալիզմի այդ առաջատար ջոկատը և տասնյակ ժողովուրդների օգնել ֆաշիզմի լծից ազատագրվելու, իրենց երկրներում նոր սոցիալական կարգեր հաստատելու գործում:

Հետևողականորեն պայքարելով ֆաշիզմի, գաղութարարության, ռասիզմի ու ազգային խտրականության բոլոր դրսևորումների դեմ, ՍՍՀՄ-ը անկեղծ ու արդյունավետ օգնություն է ցույց տալիս իրենց ազատագրության համար բոլոր ժողովուրդների արդարացի պայքարին: Առաջավոր մարդկությունը միշտ էլ երախտագիտությամբ է նշում Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազատության ու անկախության պայքարում ՍՍՀՄ ներդրած վիթխարի ավանդը: Վիետնամի և արաբական երկրների ժողովուրդները իմպերիալիստական ագրեսիայի դեմ իրենց այսօրվա հերոսական պայքարում վստահորեն հենվում են ՍՍՀՄ ամենալայն տնտեսական ու ռազմական անշահախնդիր օգնության վրա:

Սրբությամբ պահպանելով խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքները, ՍՍՀՄ-ը երբեք ոչ մի զիջում չի արել իմպերիալիզմի դեմ մղվող գաղափարական պայքարում, վճռականորեն հակահարված է տվել սոցիալիստական երկրների գործերին միջամտելու միջազգային իմպերիալիզմի բոլոր փորձերին:

Մարդկության առաջընթացի մեջ ՍՍՀՄ վիթխարի դերի փայլուն վկայություններից մեկը սոցիալիստական երկրների համաշխարհային համակարգի ստեղծումն ու ամրապնդումն է: ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ «Մենք ուզում ենք, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը լինի նոր հասարակարգը համատեղ կառուցող ու պաշտպանող, փորձով ու գիտելիքներով միմյանց հարստացնող ժողովուրդների համերաշխ ընտանիք՝ համախմբված և ամուր ընտանիք, որի մեջ երկրագնդի մարդիկ տեսնեն ապա ժողովուրդների ապագա համաշխարհային միության նախատիպը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարին, էջ 21):

ՍՍՀՄ-ը՝ իր օրավուր աճող հզորությամբ, իր վիթխարի նվաճումներով այդ միջազգային սոցիալիստական համախմբության ամրակուռ միջուկն է, մարդկության առաջընթացի ու երջանիկ ապագայի հաստատուն երաշխիքը:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՌ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՄԲ

Հանրապետության սկզբնական կուսկազմակերպություններում ավարտվեցին հաշվետու-ընտրական ժողովները: Դրանք կարևոր իրադարձություն էին հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում: Ամենուրեք ժողովներն անցան Սովետական Հայաստանի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնելու՝ ՍՄԿԿ XXIV պատմական համագումարի և Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV համագումարի որոշումներն անշեղորեն կիրառելու նշանաբանով:

Կոմունիստների բարձր կազմակերպվածություն և քաղաքական ակտիվություն— ահա 4551 սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների բնորոշ առանձնահատկությունը: Այդ ժողովներին մասնակցել է հանրապետության՝ հաշվառման մեջ եղած կոմունիստների 92,7 տոկոսը: Հաշվետու զեկուցումների շուրջ ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ են ունեցել 29.784 մարդ կամ կոմունիստների 29,4 տոկոսը:

Հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները համոզիչ կերպով ցույց տվին, որ Հայաստանի՝ նոր հնգամյա պլանով խանդավառված կոմունիստները, բոլոր աշխատավորները միահամուռ ու լիովին հավանություն են տալիս և ջերմորեն պաշտպանում ՍՄԿԿ և սովետական կառավարության արտաքին քաղաքական կուրսը, այն դիտում են որպես վառ ապացույց կոմունիստական կուսակցության խաղաղասիրական քաղաքականության, որն ուղղված է ամբողջ աշխարհի խաղաղության և անվտանգության ամրապնդմանը:

Կոմունիստները նշում էին, որ վերջին ժամանակներս արտաքին քաղաքականության ասպարեզում Սովետական Միության կոմկուսակցության ձեռնարկած գործողությունները ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կոնկրետ, պրակտիկ կենսագործումն են: Հաշվետու- ընտրական ժողովների մասնակիցներն իրենց ելույթներում բարձր էին գնահատում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ն. Վ. Պոդգոռնու և ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն.



Կոսիգինի՝ ինչպես սոցիալիստական համագործակցության, այնպես էլ մի շարք այլ երկրներ կատարած այցելությունների արդյունքները:

Անցկացված հաշվետվությունների և ընտրությունների գլխավոր առանձնահատկությունն այն է, որ դրանք ՍՄԿԿ XXIV համագումարից հետո առաջինն են: Եվ, չնայած մեր կուսակցության բարձրագույն համաժողովի ավարտումից այնքան էլ շատ ժամանակ չի անցել, համագումարի գաղափարները, նրա որոշումներն ու փաստաթղթերը, նրա ստեղծագործական լենինյան ոգին ունեցել են և շարունակում են վիթխարի ազդեցություն ունենալ կուսակցության ու երկրի ողջ կյանքի վրա: Գործարարությունը, սկզբունքայնությունը, մասսաների մեջ տարվող քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացման առավել ճիշտ ուղիներ գտնելու ձգտումը— ահա թե ինչն էր բնորոշ հաշվետու-ընտրական ժողովների մեծամասնության համար: Սակայն ի՞նչ խորհրդածությունների առիթ է տալիս ընտրություններից հետո գործերի եղած ընթացքը:

Իմաստավորելով հաշվետվությունների և ընտրությունների ընթացքը, կուսակցական կոլեկտիվների գործնական աշխատանքի արդյունքները, վստահ կարելի է ասել, որ ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում նկատելիորեն բարձրացել է սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, աճել է նրանց դերը հասարակական ու տնտեսական կյանքում:

Հաշվետու-ընտրական ժողովները, ճնշող մեծամասնությամբ անցնելով ձեռք բերած հաջողությունների խելամիտ գնահատման իրադրության մեջ, ցույց տվեցին, որ կոմունիստների ուշադրության կենտրոնում է գտնվում հարցերի մի այնպիսի կոմպլեքս, ինչպիսիք են հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը, նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավումը, սոցիալիստական մրցության լայն ծավալումը, գիտա-տեխնիկական առաջադիմության արագացումը, արտադրանքի որակի բարձրացումը և ինքնարժեքի իջեցումը, կուսակցական կազմակերպությունների կազմակերպական և գաղափարական աշխատանքի ոճի ու մեթոդների հետագա կատարելագործումը: Անհրաժեշտ է նշել, որ դրանց առթիվ ծավալված մտքերի փոխանակությունը վերածվեց աշխատավորական կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծման արդյունավետ միջոցների և ուղիների իսկական ստեղծագործական կոլեկտիվ որոնման:

Կուսակցական ժողովներում քննարկված հարցերի մի այլ կոմպլեքս վերաբերում էր այն բանին, թե կազմակերպություններում ինչպե՞ս է դրված ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերի պարզաբանման աշխատանքը, գործնականորեն ի՞նչ է արվում կոլեկտիվի ուժերը մոբիլիզացնելու՝ առաջադրված խնդիրների հաջող կենսագործման համար, այսօրվա պահանջներին համապատասխանո՞ւմ է արդյոք կուսկազմակերպության կազմակերպչական ու գաղափարական աշխատանքի մակարդակը:

Բնական է, որ հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները նշում էին ձեռք բերված հաջողությունները, ընդհանրացնում կուտակված փորձը, խորապես վերլուծում թերություններն ու բացերը՝ դրանք վերացնելու, արտադրության մեջ և հասարակական կյանքում իրենց ավանգարդային դերը, իրենց կազմակերպության մարտունակությունը ավելի բարձրացնելու, Սովետական Սո-

ցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը արժանավայել գործերով դիմավորելու համար:

Հաշվետու-ընտրական ժողովներում արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտի կոմունիստները հատուկ ուշադրություն էին դարձնում արտադրության զարգացման, հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների շահավետ օգտագործման, տեխնիկական առաջադիմության և աշխատանքի գիտական կազմակերպման արմատական հարցերին: Հարցերի այս կոմպլեքսը դարձել է Երևան, Լենինական, Կիրովական, Հրազդան, Արթիկ, Ղափան քաղաքների մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների կոմունիստների քննարկման առարկան: Այսպես, Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի՝ կոմունիստների փոխադարձ խստապահանջության, ծավալուն քննադատության և ինքնաքննադատության իրադրության, կուսկազմակերպությունների առջև ծառացած բոլոր հարցերի շուրջը մտքերի ազատ փոխանակության մթնոլորտում անցած արտադրամասային կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների բնորոշ առանձնահատկությունն էր նրանց մասնակիցների ձգտումը՝ ոչ թե սահմանափակվել աշխատանքի արդյունքների ընդհանրացմամբ, այլ նոր հնարավորություններ փնտրել արտադրության զարգացման համար, ձգտել նվաճելու նոր բնագծեր:

Լենինականի երկաթուղային հանգույցի, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի, Քաջարանի պղնձի-մոլիբդենի կոմբինատի կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում բազմիցս ընդգծվում էր, որ այդ ձեռնարկությունների կոլեկտիվների ջանքերը կապված են, մասնավորապես, սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի վերաբերյալ մանրամասն հաղորդումների հետ, որը շատ բանով նպաստում է հանձնարարված գործի համար պատասխանատվության բարձրացմանը: Այդ կոլեկտիվներում, ինչպես և այլ առաջավոր կոլեկտիվներում, մշակվում են արտադրության կատարելագործման հեռանկարային պլաններ, մեծ ուշադրություն է հատկացվում կադրերի տնտեսագիտական ուսուցմանը, բանվորներին արտադրության կառավարմանը մասնակից անելուն, աշխատանքի նկատմամբ գիտակից վերաբերմունքի դաստիարակմանը:

«Էլեկտրոն» գործարանի կոմունիստները նշում էին, որ կուսակցական բյուրոն պլանների մշակման ժամանակ մեծ ուշադրություն է դարձնում արտադրության կուլտուրայի բարձրացմանը, արտադրամասերում ու տեղամասերում արդյունաբերական էսթետիկայի արմատավորմանը: Եվ պատահական չէ, որ այն արտադրամասերը, ուր արմատավորվել է արդյունաբերական էսթետիկան, այսօր բարձր կուլտուրայի օրինակ են ծառայում: Այնտեղ լուծված են սարքավորման ճիշտ տեղաբաշխման, առաջավոր տեխնիկայի արմատավորման, ձեռքի աշխատանքի մեքենայացման հարցերը:

Կուսակցական ժողովներում բազմիցս արծարծվել է այն միտքը, թե արտադրության վրա խոր ու նպատակասլաց կուսակցական ներգործությունը, տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարում սկզբնական կուսկազմակերպությունների դերի բարձրացումը արդյունաբերության, տրանսպորտի, շինարարական կազմակերպությունների հաջող աշխատանքի կարևորագույն պայմանն են:

Արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտային կազմակերպությունների կոմունիստները նշում էին, որ տնտեսական ռեֆորմը,



զգալիորեն բարձրացնելով կուսակցական կազմակերպությունների դերն արտադրության մեջ, պահանջեց լրջորեն կատարելագործել աշխատանքի ոճն ու մեթոդները, գիտականորեն հիմնավորված մոտենալ էկոնոմիկայի հարցերին և հասարակական կյանքի երևույթներին, կոնկրետություն ու գործարարություն, անհաշտելիություն ցուցաբերել պարապայնության ու աղմկարարության ամեն մի դրսևորման դեմ: Հենց այս դիրքերից էին դիտում ու գնահատում իրենց աշխատանքը և իրենց ղեկավար մարմնի գործունեությունը Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կոմունիստները: Աշխատավորական այդ կոլեկտիվի կուսակցական ժողովում դրված էր էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական ղեկավարության ուժեղացման, կադրերի նկատմամբ պահանջկոտության բարձրացման անհրաժեշտության հարցը:

Ինչպես ցույց տվեցին հաշվետու-ընտրական ժողովները, արտադրության վրա բազմաթիվ սկզբնական կուսկազմակերպությունների հաջող ներգործումը հնարավոր է դարձել այն բանի շնորհիվ, որ հաշվետու ժամանակաշրջանում նրանք մեծ աշխատանք են կատարել կոմունիստների մոտ ակտիվության և հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացմունքի դաստիարակման գործում: Այդ աշխատանքն ընթացել է տարբեր միջոցներով՝ կուսակցական ժողովների մոբիլիզացնող և կազմակերպող դերի բարձրացմամբ, այդ ժողովներում քննադատության և ինքնաքննադատության ծավալմամբ, կոմունիստների գաղափարական-քաղաքական կոփվածության բարելավմամբ, նրանց ուժերի ավելի ճիշտ տեղաբաշխմամբ և կուսակցական հանձնարարությունների ավելի խելամիտ բաշխմամբ, կոմունիստների կողմից իրենց կանոնադրական պարտականությունների կատարման նկատմամբ կուսկազմակերպությունների վերահսկողության ուժեղացմամբ, արտադրության մեջ և հասարակական-քաղաքական կյանքում նրանց ավանգարդային դերի բարձրացմամբ:

Իրենց հաշվետու-ընտրական ժողովներում գյուղական կուսակցական կազմակերպության կոմունիստները պատրաստակամություն էին հայտնում գյուղի աշխատավորների ջանքերն ուղղել գյուղատնտեսական աշխատանքների հաջող կատարմանը, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների իրականացմանը, գյուղատնտեսական արտադրության մյուս կարևոր հարցերի ժամանակին լուծմանը:

Վերլուծելով ընթացիկ տարվա իրենց գործունեությունը, գյուղի կուսակցական կազմակերպությունները միաժամանակ մշակում էին հետագա աշխատանքի ծրագիրը՝ գյուղատնտեսական արտադրության վերելքի, դաշտավարության ու անասնապահության ինտենսիվացման, հողագործության կուլտուրայի, տնտեսությունների շահութաբերության բարձրացման համար:

Հանրապետության Արտաշատի, Արարատի, Ախուրյանի, Ստեփանավանի, Կալինինոյի, Մասիսի, Էջմիածնի և նախորդ տնտեսական տարում նկատելի հաջողություններ ձեռք բերած մի քանի այլ շրջաններում տեղի ունեցած ժողովներում նշվում էր կոլտնտեսությունների ու սովխոզների կուսակցական կազմակերպությունների դրական աշխատանքը, որոնք կարողացել էին ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերն արտադրության վճռական տեղամասերում, զգալի աշխատանք էին կատարել արտադրության ինտենսիվացման բնագավառում:

Բնորոշ է, որ գյուղական կոմունիստներն իրենց ելույթներում հիմնական

շեշտը դնում էին ոչ թե ձեռք բերված արդյունքների, այլ այն խնդիրների վրա, որոնք պետք է լուծվեն նոր հնգամյակում:

Մարտունու շրջանի Երանոսի սովխոզի կուսակցական ժողովում ունեցած ելույթներում կոմունիստները կոնկրետ միջոցառումներ էին նշում հողագործության կուլտուրան բարձրացնելու, հողային ու ջրային ռեսուրսների օգտագործումը բարելավելու, անասնապահության վերելքի, գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման համար: Սովխոզի կոմունիստները նշեցին նաև արտադրության ներքին ռեզերվներն ավելի լավ օգտագործելու, նյութական ռեսուրսների և դրամական միջոցների նկատմամբ խնայողական ու հոգատար վերաբերմունք ցուցաբերելու անհրաժեշտությունը:

Կազմակերպչական, գաղափարա-դաստիարակչական լավ մտածված աշխատանքի օգնությամբ անպայման պետք է կատարել պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները: Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսության կուսակցական կազմակերպության՝ այդ նպատակով կատարած աշխատանքն արժանացավ կոմունիստների միահամուռ հավանությանը: Կուսակցական ժողովներում ընդունվեց որոշում՝ այսուհետև ևս ծավալել այդ գործունեությունը, դաշտերի ու ֆերմաների աշխատավորների ջանքերն ուղղել սոցիալիստական մրցության հետագա զարգացմանն ու կատարելագործմանը, պայքարել մարդկանց ու տեխնիկայի պարապուրդների դեմ, զարգացնել կոմունիստների և բոլոր կոլտնտեսականների նախաձեռնությունն ու հասարակական բարձր ակտիվությունը:

Կալինինոյի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսության կոմունիստները, ամփոփելով կուսակցական կազմակերպության աշխատանքի արդյունքները, նշում էին ընթացիկ տարում տնտեսության ձեռք բերած հաջողությունները: Աշնանացան ցորենի 208 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը կազմել է 36,7 ցենտներ, պլանով նախատեսված 22,2 ցենտների դիմաց: Նույնիսկ անցած տարվա կլիմայական բարդ պայմաններում կոլտնտեսությունը կարողացավ 85 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ապահովել 191,3 ցենտներ կարտոֆիլի բերքի ստացումը՝ պլանային 160 ցենտների դիմաց:

Կոլտնտեսության կոմունիստները դարձան աշխատանքային արժեքավոր նախաձեռնության հեղինակները, որոշվեց ձմեռային շրջանում կովերից ստանալ նույնքան կաթ, որքան ամռանը: Տասն ամսում յուրաքանչյուր կովից ստացվեց 2.338 կիլոգրամ կաթ՝ 2.308 կիլոգրամ տարեկան պլանի փոխարեն: Կոլտնտեսության կուսակցական կազմակերպության ջանքերով շահութաբեր դարձան տնտեսության բոլոր ճյուղերը:

Գյուղական կուսկազմակերպությունների ղեկավար օրգանների հաշվետու զեկուցումներում և կոմունիստների ելույթներում նշվում էին կոնկրետ միջոցառումներ, որոնց կենսագործումը կօգնի բարձրացնելու հողագործության կուլտուրան, բերքատվությունը, ավելացնելու անասնապահության մթերքների արտադրությունը, ավելի ինտենսիվացնելու գյուղատնտեսական արտադրությունը:

Կոմունիստներն ամենայն սկզբունքայնությամբ և լիակատար անկեղծության մթնոլորտում քննարկում էին, թե կուսակցական կազմակերպությունները ինչպես են պայքարում կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահությունը խախտողների դեմ, շռայլությունների և անտնտեսվարության դեմ, սոցիալիստական սեփականությունը պահպանելու, վատնումներն ու հա-



փշտակումները լիովին արմատախիլ անելու համար: Այս առումով ընդգծվում էր կուսակցության շարքերի մաքրության, կոմունիստների ակտիվության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումների խստիվ կատարման անհրաժեշտությունը:

Հաշվետու-ընտրական ժողովների ընթացքում քննադատական բազմաթիվ դիտողություններ են արվել կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների հասցեին, ինչպես նաև կոնկրետ առաջարկություններ:

Հաշվետու-ընտրական ժողովներում սկզբունքային քննադատության ենթարկվեցին արդյունաբերական շինարարության և գյուղական շինարարության մինիստրությունները, որոնք տարեցտարի կառույցները չեն ապահովում անհրաժեշտ մեխանիզմներով ու շինանյութերով, օբյեկտները շահագործման են հանձնում անհանդուրժելի ցածր որակով: Նշվում էր նաև, որ այդ մինիստրությունների ղեկավարությունը պատշաճ ուշադրություն չի դարձնում կադրերի ընտրությանն ու տեղաբաշխմանը, որի հետևանքով շինարարական օբյեկտներում հաճախ լինում են սոցիալիստական սեփականության հափշտակման փաստեր: Այդպիսի դիտողություններ արվեցին, մասնավորապես, Երևան քաղաքի, հանրապետության Արթիկի, Նոյեմբերյանի, Շամշադինի, Գուգարքի շրջանների սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովներում:

Ինչպես ցույց տվեցին հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպություններում նկատելիորեն բարձրացել է ներկուսակցական աշխատանքի մակարդակը: Հաշվետու զեկուցումները մեծ մասամբ խարսխվում էին ինչպես դրական, այնպես էլ բացասական երևույթների համակողմանի մանրազնին վերլուծության վրա, պարունակում էին սկզբունքային քննադատություն և գործարար հետևություններ:

Խոր վերլուծության են ենթարկվել կուսակցական շարքերի աճի, երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցերը:

Հաշվետու-ընտրական ժողովներում լուրջ ուշադրություն նվիրվեց կուսակցական կազմակերպությունների գաղափարական աշխատանքին: Նշվում էին կոմունիստների կողմից կատարվող կանոնադրական այնպիսի պարտականությունների մասին, ինչպիսիք են՝ գաղափարական-տեսական մտահորիզոնի սիստեմատիկ ընդլայնումը, մասսաներին կուսակցության քաղաքականության պարզաբանումը, աշխատավորների պահանջմունքներին ու կարիքներին զգոնությամբ արձագանքելը: Խոր վերլուծության էին ենթարկվում կուսակցական կրթության վիճակը, քաղդպրոցների և սեմինար պարապմունքների, մասսայական-քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Հաշվետվությունները և ընտրությունները մեծ իրադարձություն էին հանրապետության կուսակցական կազմակերպությունների կյանքում: Դրանք եղան կուսակցական մասսաների կողմից ընտրովի մարմինների աշխատանքի ստուգման գործուն ձևը և, միաժամանակ, յուրատեսակ մի ստուգում ու դպրոց հանդիսացան ամեն մի կոմունիստի համար:

Ժողովները ցուցադրեցին կուսակցական շարքերի միասնությունը, համախմբվածությունը, կոմունիստների ձգտումը՝ կենսագործելու ՍՄԿԿ XXIV համագումարի, Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները:

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆ ԵՐԱՇԽԻՔԸ


Վ. Ֆ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար


*ՀԿԿ Աբովյանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները սիս-
տեմատիկ ու հետևողական աշխատանք են կատարում կոմունիստների ակ-
տիվությունը բարձրացնելու, նրանց ստեղծագործական նախաձեռնությունը
զարգացնելու համար, հետևում, որպեսզի նրանք ապահովեն իրենց ավան-
գարդային դերն արտադրության մեջ, մասնակցեն կուսակցական կյանքին,
անշեղորեն կատարեն ՍՄԿԿ կանոնադրության պահանջները։*

*Աբովյանի շրջանն այժմ համարվում է հանրապետության զարգացած
արդյունաբերական շրջաններից մեկը։ Արդյունաբերությունն առանձնապես
մեծ թռիչք ապրեց անցած հնգամյակում։ Եթե շրջանի էկոնոմիկայում մեկ
տասնամյակ առաջ արդյունաբերության տեսակարար կշիռը կազմում էր 15—
20, ապա այժմ այն կազմում է 80—85 տոկոս, թեև գյուղատնտեսական
մթերքների արտադրությունն այդ տարիներին նույնպես զգալիորեն աճել է։
Շրջանում կան 16 ձեռնարկություններ, որտեղ աշխատում են ավելի քան 12
հազար բանվոր-ծառայողներ։ Այստեղ ստեղծվել և կոփվել է հանրապետու-
թյան բանվոր դասակարգի առաջավոր ջոկատներից մեկը, որն իր քանակով
գերազանցում է նախահեղափոխական Հայաստանի բանվորների թիվը։*

*Կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացման ու
ակտիվության բարձրացման գործում լավ օրինակ է տալիս Արզնու «Բյուրեղ»
արդյունաբերական միավորման սկզբնական կուսկազմակերպությունը (քար-
տուղար՝ Ս. Կիրակոսյան)։ Այստեղ ՍՄԿԿ 155 անդամ-թեկնածուներից 123-ն
ընդգրկված են բուն արտադրության ոլորտում, նրանցից շատերը առաջավոր-
ներ են, նորարարներ, 100 կոմունիստներ ունեն կուսակցական ու հասարա-
կական մշտական հանձնարարություններ։ Կոմունիստների գլխավորությամբ
ձեռնարկությունը կատարում ու գերակատարում է ամենամսյա արտադրա-
կան առաջադրանքները, քայլում սոցիալիստական մրցության առջևից։ Անցած
հնգամյակում կուսկազմակերպության և ամբողջ կոլեկտիվի աշխատանքի
արժանի գնահատականը եղավ «Պատվո նշան» շքանշանը։*

*Այժմ Նոր Հաճն ավանը իր գործարանով հանրապետության ամենագե-
ղեցիկ վայրերից է։ Ձեռնարկությունը հսկա քայլերով առաջ է գնում, նրա*



*համբավը դուրս է եկել Հայաստանի սահմաններից։ Առանց չափազանցու-
թյան պետք է ասել, որ գործարանն իր ստեղծման օրից միշտ քայլել է շըր-
ջանի ձեռնարկությունների առջևից։ Ինչպես շրջանում, այնպես էլ հանրապե-
տությունում գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը և կոլեկտիվը
բազմիցս հանդես են եկել հիանալի նախաձեռնություններով։*

*Ո՞ւմ հայտնի չէ, որ մեր երկրի արդյունաբերությունը հասել է մեծա-
գույն հաջողությունների։ Սակայն ղեկավարման և պլանավորման բովանդա-
կությունը չէին համապատասխանում տնտեսական գործունեության մասշ-
տաբներին ու թափին։ «Բյուրեղ» միավորման սկզբնական կուսկազմակեր-
պությունը հանրապետությունում առաջինը հանդես եկավ կուսակցության նոր
կուրսի իրականացման նախաձեռնությամբ։ Գործարանի կոլեկտիվը, հանրա-
պետությունում առաջինն անցնելով պլանավորման և տնտեսական խթանման
նոր սիստեմին, լայն հնարավորություն ստեղծեց արտադրության հետագա
վերելքի և աշխատավորության բարեկեցության բարձրացման համար։ Սկզբը-
նական կուսկազմակերպության և դիրեկցիայի կողմից արտադրության ճկուն
ղեկավարման և կոլեկտիվի հայրենանվեր աշխատանքի արդյունք էր, որ ձեռ-
նարկությունը ժամկետից չորս ամիս շուտ կատարեց հնգամյակի պլանը և
լրացուցիչ տվեց 3 միլիոն 200 հազար ռուբլու արտադրանք։*

*Ընդամենը տասը տարվա պատմություն ունի ՍՍՀՄ կապի մինիստրու-
թյան Ջրվեժի «Արդկապ» գործարանը, բայց շատ բան է կատարվել այստեղ։
Մարդ ակամա դժվարանում է պատկերացնել, թե արդյոք հնարավո՞ր է այդ-
քան կարճ ժամանակում կառուցել միութենական նշանակություն ունեցող
ձեռնարկություն, տալ արտադրանք, ստեղծել ամուր կոլեկտիվ, բարեկարգ
բանվորական ավան։ Թե ինչպիսի թռիչքներով է զարգացել գործարանը, երե-
վում է հետևյալ թվերից։ Եթե 1962 թ. այստեղ թողարկվել է 1.220 հազար
ռուբլու համախառն արտադրանք, 1964 թ. 2.095 հազար, ապա 1970 թվա-
կանին՝ 4.620 հազար, իսկ անցած տարվա 7 ամսում՝ 3.084 հազար ռուբլու։*

*Ո՞րն է հաջողությունների գաղտնիքը։ Վերջին տարիներին, հատկապես
ՍՄԿԿ XXIII համագումարից հետո, ձեռնարկության սկզբնական կուսկազմա-
կերպության բյուրոն (քարտուղար՝ Հ. Միսակյան) խելացիորեն է օգտագոր-
ծում կուսակցական-կազմակերպական աշխատանքի փորձված ձևերն ու մե-
թոդները։*

*Ինչպես ցույց է տալիս փորձը, կուսկազմակերպության առջև դրված
խնդիրների հաջող լուծումը զգալի չափով կախված է կոլեկտիվ աշխատանքի
ապահովումից։ Այժմ պահանջվում է գործերի խոր իմացություն, կոմունիստ-
ների փորձի, գիտելիքների ու կարծիքների առավելագույն հաշվառում։*

*Մեխանիկական արտադրամասը, որը գործարանի հիմնական արտադրա-
մասերից է, սիստեմատիկաբար թերակատարում էր պետական պլանները, իսկ
նրա թողարկած արտադրանքի որակը խիստ ցածր էր։ Կուսբյուրոյի հանձնա-
րարությամբ կոմունիստներ Ս. Բրուտյանը, Ռ. Հակոբյանը, Գ. Մարկոսյանը
ամենայն մանրամասնությամբ ուսումնասիրեցին գործերի վիճակը։ Պարզ-
վեց, որ այստեղ ցածր է աշխատանքային և պետական կարգապահությունը,
ինքնահոսի են մատնված մարդկանց դաստիարակությունը, սոցմրցությունը,
անտեսվում են խրախուսանքի ձևերը։ Հարցը քննարկվեց սկզբնական կուս-
կազմակերպության ղոնբաց ժողովում։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ մե-*

խանիկական արտադրամասը դարձավ առաջավոր, իսկ Հոբելյանական տարում արժանացավ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման։

Հաղթահարելով բազում դժվարություններ, իրոք, հերոսական գործեր կատարեցին «Աբովյանշին» տրեստի կոլեկտիվը, սկզբնական կուսկազմակերպությունը։ Այդ կոլեկտիվի ուժերով վերջին մի քանի տարիների ընթացքում ստեղծվեց հանրապետության ամենագեղեցիկ քաղաքներից մեկը՝ Աբովյանը, որն այժմ ունի ավելի քան 27 հազար բնակիչ։ Տրեստի կուսկոմիտեն իր ամենօրյա ուշադրության կենտրոնում է պահում կառուցվող օբյեկտների ժամանակին շահագործման հանձնելու և շինարարության որակի բարձրացման հարցերը։ Այստեղ կոմունիստների գերակշռող մասը արտադրության առաջավոր է, ակտիվորեն մասնակցում է շրջանի և կոլեկտիվի հասարակական կյանքին։ Տրեստը և շինվարչությունները լավ են կատարում նաև իրենց շեֆական պարտականությունները, բարեխղճորեն օգնում դպրոցներին, կոլտնտեսություններին և սովխոզներին։

Կոմունիստները մեծ ուժ են կոլտնտեսություններում, սովխոզներում, արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում, պետական հիմնարկություններում, ժողովրդական կրթության և առողջապահության բնագավառներում։ Նրանցից շատերը ո՛չ միայն արտադրության առաջավորներ են, այլև հասարակական ակտիվ գործունեություն են ծավալում կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններում, ժողովրդական վերահսկողության տեղական մարմիններում։

Կոմունիստների մի զգալի մասը կոլտնտեսություններում, սովխոզներում, արդյունաբերական ձեռնարկություններում ու կառույցներում ղեկավար աշխատանք է կատարում, արտադրության կազմակերպիչ է ու հրամանատար։ Մոտ 1600 կուսանդամներ ընդգրկված են արդյունաբերության և շինարարության ոլորտում։ Գյուղատնտեսության 150 մասնագետներից 90-ը, 1040 ուսուցիչներից 300-ը կոմունիստներ են։ ՍՄԿԿ 70 անդամ-թեկնածուներ աշխատում են առողջապահության բնագավառում։ Մեծ թվով կոմունիստներ ընդգրկված են կուսակցական կազմակերպությունների ղեկավար օրգաններում, մոտ 600-ը շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային սովետների դեպուտատներ են։ Կոմունիստներից շատ-շատերը հետևողականորեն ուսումնասիրում են մարքս-լենինյան ուսմունքը, բարձրացնում իրենց տեսական-քաղաքական ու կրթական մակարդակը։

Կուսակցության շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները հետևվում են, որպեսզի կոմունիստներն ունենան կուսակցական ու հասարակական հանձնարարություններ։ Բացի ընտրովի օրգաններում ընդգրկվելուց, շատերն ստանում են ժամանակավոր հանձնարարություններ, մասնակցում ժողովներում, բյուրոների նիստերում, սովետների սեսիաներում քննարկվող հարցերի նախապատրաստմանը։ Նման պայմաններում նրանք հնարավորություն են ստանում՝ հանդես բերելու նախաձեռնություն, ակտիվ դեր խաղալու ինչպես որոշումների ընդունման, այնպես էլ դրանց կատարման գործում։

Կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացման և ակտիվության բարձրացման ասպարեզում հետևողական գործունեություն են ծավալում Կոտայքի, Արամուսի կոլտնտեսությունների, Առինջի, Քյուլիջայի, Գառնիի սովխոզների, Ջրվեժի անտառատնկարանային տնտեսության, Արզնու



«Բյուրեղ» միավորման, Աբովյանի կիսահաղորդիչ սարքերի, Ջրվեժի «Արդ-
կապ» գործարանների սկզբնական կուսկազմակերպությունները։
Բնորոշ է Կոտայքի կոլտնտեսության կազմակերպության օրինակը։ Այս-
տեղ ՍՄԿԿ 45 անդամ-թեկնածուներից 42-ը անմիջականորեն աշխատում են
արտադրության վճռական տեղամասերում, օրինակ ծառայում կոլտնտեսա-
կաններին։ Նրանք հանդես են գալիս որպես նորի, առաջավորի նախաձեռնող-
ներ ու արմատավորողներ։
Իհարկե, սխալ կլինի ասել, թե մեր բոլոր կոմունիստներն են անհրաժեշտ
ակտիվություն ցուցաբերում աշխատանքում և հասարակական կյանքում,
հանդես գալիս օրինակելի նախաձեռնություններով։ Դեռևս կան ՍՄԿԿ ան-
դամներ, որոնք պասսիվ են մասնակցում կոմունիզմի նյութա-տեխնիկական
բազայի ստեղծմանը, թերանում ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կա-
տարման գործում, չեն ապահովում իրենց ավանգարդային դերն արտադրու-
թյան մեջ։ Առանձին կոմունիստներ խուսափում են շարքային գործ կատա-
րելուց, որոնում են փափուկ տեղեր և թեթև պաշտոններ։ Իսկ սկզբնական կուս-
կազմակերպությունները, փոխանակ պայքարելու նման երևույթների դեմ, հա-
ճախ տեղի են տալիս, նմաններին տեղավորում երկրորդական, երբեմն՝ հնա-
րովի պաշտոններում։ Միմիայն դրանով կարելի է բացատրել, որ Գյամրեզի,
Ջովաշենի, Քյանքյանի կոլտնտեսություններում, Հացավանի սովխոզում,
Արզնու հանքային ջրերի գործարանում, 5-րդ մեքենայացված շարժական շա-
բասյունում շատ քիչ թվով կոմունիստներ են աշխատում արտադրության
մեջ։ Գյամրեզ գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության
36 անդամներից միայն 15-ն են ընդգրկված անմիջական արտադրության
ոլորտում, մնացածները պահակներ են, հաշվային աշխատողներ, հսկիչներ,
պահեստապետներ, զբաղեցնում են զանազան պաշտոններ։ Քյանքյանի կոլ-
տնտեսությունում 18 կոմունիստներից ընդամենը 6-ն է զբաղված նյութական
բարիքների արտադրությամբ։ Կոմունիստները քիչ տոկոս են կազմում շրջանի
անասնապահական ֆերմաների աշխատողների մեջ, մինչդեռ այդ ճյուղում
գործերն այնքան էլ բարեհաջող չեն։
Առանձին տեղերում սկզբնական կուսկազմակերպությունները, նրանց
բյուրոները, քարտուղարները, ինչպես նաև տնտեսությունների ղեկավարներն
անհրաժեշտ պահանջկոտություն հանդես չեն բերում կոմունիստների նկատ-
մամբ, չեն ուզում փչացնել հարաբերությունները, չեն հետևում, որպեսզի
նրանք և նրանց ընտանիքների անդամներն ընդգրկվեն արտադրության ոլոր-
տը, ապահովեն իրենց ավանգարդային դերը։ ՍՄԿԿ անդամ Գ. Վարդանյանը
միշտ պաշտոններ է վարել Գյամրեզ գյուղում։ Եվ երբ նրան պաշտոն չեն
տվել, լքել է կոլտնտեսությունը։ Դրա համար կուսշրջկոմի բյուրոն նրան են-
թարկեց կուսակցական խիստ պատասխանատվության։ Զարմանալին այն է,
որ Գյամրեզի կոլտնտեսության կուսկազմակերպությունը հարկ չի համարում
անդրադառնալու նման կոմունիստների հարցին, արժանի գնահատական չի
տալիս նրանց վարքագծին։
Քիչ չեն փաստերը, երբ առանձին մարդիկ հրաժարվում են շարքային
աշխատանքից, պաշտոն են պահանջում և, որքան տարօրինակ է, նմաններին
կուսկազմակերպությունները հանդուրժում են։ Բնորոշ է Ակունքի կոլտնտե-
սության կուսկազմակերպության անդամ Հ. Աբրահամյանի օրինակը։ Նա
երեք տարի առաջ լքեց կոլտնտեսությունը, քանի որ, գործը չգլխավորելու հա-

մար, հեռացվել էր գյուղական սովետի գործկոմի նախագահի պաշտոնից։ Հետո նա նորից ցանկություն հայտնեց վերադառնալ գյուղ, բայց դարձյալ ոչ շարքային աշխատանքի։ Շրջանային կոմիտեն, իհարկե, չէր կարող համաձայնել նրա ցանկության հետ։ Ի վերջո Աբրահամյանն սկսեց շարքային գործ կատարել գյուղում։ Սկզբնական կուսկազմակերպության սկզբունքային դիրքը, անկասկած, դաստիարակչական նշանակություն կունենա մյուս կոմունիստների համար։

Կոմունիստը գաղափարի մարդ է։ Կուսակցության մեջ գտնվելը նա պետք է համարի ո՛չ թե արտոնություն, այլ կամովին ստանձնած մի մեծ պարտավորություն և պատրաստ լինի անթերի կատարելու այն։ Կոմունիստի կոչումը կրող մարդու համար բավական չէ միայն լավ աշխատել ինչ-որ բնագավառում, նա պետք է հանդես գա լավ նախաձեռնություններով, ակտիվ մասնակցի հասարակական-քաղաքական կյանքին, կուսակցական, սովետական, արհմիութենական և մյուս կազմակերպությունների գործունեությանը։ Այնինչ Գառնիի, Արզնու, Պտղնու սովխոզներում, Ջառի, Գեղաշենի, Գյամրեզի կոլտնտեսություններում, երկաթբետոնյա կոնստրուկցիաների, հանքային ջրերի գործարաններում և մի շարք այլ տեղերում շատ կոմունիստներ պասիվ են մասնակցում կուսակցական և հասարակական աշխատանքներին, չունեն մշտական և ժամանակավոր հանձնարարություններ, ժողովներում ելույթներ չեն ունենում, անտարբեր վերաբերմունք են ցուցաբերում քննարկվող հարցերի նկատմամբ։ Վերը նշված կազմակերպություններում, ինչպես նաև Ջրվեժում և Բալահովիտում, կոմունիստների զգալի մասը չունի ոչ մշտական, ոչ էլ ժամանակավոր հանձնարարություն։ Գառնիից Կ. Սարգսյանը, Հ. Հովհաննիսյանը, Թ. Հարությունյանը, Ն. Հակոբյանը և ուրիշներ վերջին տարիներս գրեթե ոչ մի անգամ ժողովներում ելույթ չեն ունեցել։

ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում ուղղակի նշված է. «ՍՄԿԿ ուժը նրա անդամների բարձր գաղափարայնության, ակտիվության, անձնվիրության մեջ է. կուսակցությունը չի հանդուրժում պասիվությունը, անտարբերությունը, աբսոլյուտիզմը։ Զարգացնելով կոմունիստների ակտիվությունը, հարկավոր է բարձրացնել նրանց պատասխանատվությունը ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման համար»։

Կոմունիստների պասիվությունը մի քանի պատճառներ ունի։ Առաջինն այն է, որ մի շարք տեղերում խախտում են ժողովների հրավիրման ժամկետները, ճիշտ չեն ընտրում օրակարգի հարցերը, վատ են նախապատրաստում ժողովները, որոնց հետևանքով դրանք անցնում են անհետաքրքրական ու ցածր մակարդակով, նրանցում չի ապահովվում կոմունիստների ներկայությունը։ Ջառի, Գյամրեզի, Գեղաշենի կոլտնտեսությունների, Զորաղբյուրի, Քանաքեռավանի սովխոզների և մի շարք այլ սկզբնական կուսկազմակերպություններում ժողովներից սիստեմատիկ բացակայում են մեծ թվով կոմունիստներ, ներկա գտնվողների մի մասը չի մասնակցում հարցերի քննարկմանը, թերությունների բացահայտմանը։ Մյուս պատճառն այն է, որ սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոները և քարտուղարները, ինչպես հարկն է, չեն հետևում որոշումների կատարմանը, կոմունիստների քննադատական դիտողությունների կենսագործմանը, նրանց առաջ քաշած հարցերի լուծմանը։ Նման հանգամանքը թուլացնում է կոմունիստների հետաքրքրա-



սիրությունը քննարկվող հարցերի նկատմամբ, թերահավատություն առաջացնում նրանց մոտ, նրանց դատապարտում պասիվության։

Կուսկազմակերպությունը ո՛չ միայն պետք է հաշվի առնի ու կատարի կոմունիստի առաջարկությունն ու դիտողությունը, այլև քննադատության ու ինքնաքննադատության ծավալման համար ստեղծի բոլոր պայմանները։ Կապի հանգույցի և կենցաղսպասարկման կոմբինատի սկզբնական կուսկազմակերպությունները բազմիցս քննարկել են բնակչության սպասարկման բարելավման հարցերը, ընդունել որոշումներ։ Բայց այդ որոշումների մի մասը չի կենսագործվել։ Մի՞թե պարզ չէ, որ նման պայմաններում ժողովը կամ նրա քննարկած հարցերը կոմունիստի համար որևէ հետաքրքրություն չեն կարող ներկայացնել։ Տեղին է հիշել մեծ Լենինի այն ցուցումը, որ անհրաժեշտ է կուսակցության ներքին կյանքում իրագործել կուսակցության ինչպես տեղական, այնպես էլ կենտրոնական հիմնարկությունների ավելի լայն քննադատությունը։ Մեծ առաջնորդը սովորեցնում էր, որ, խոսելով երեկվա սխալների մասին, վերլուծելով դրանք, մենք սովորում ենք այսօր և վաղը խուսափում սխալներից։

Առանձին կոմունիստների պասիվության պատճառներից մեկն էլ այն է, որ կուսկազմակերպություններն ու նրանց բյուրոները հասարակական հանձնարարությունները հավասար չեն բաշխում ՍՄԿԿ անդամների միջև։ Մեկը ծանրաբեռնվում է մի քանի հանձնարարություններով, մյուսը ոչ մի հանձնարարություն չի ստանում և աստիճանաբար պասիվանում է։ Հացավանի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Ա. Մարգարյանը միաժամանակ ՀԿԿ շրջկոմի կուսակցական հանձնաժողովի անդամ է, ագիտխմբի ղեկավար, պրոպագանդիստ, ՀԿԿ շրջանային վերստուգիչ հանձնաժողովի անդամ, դասախոսական խմբի անդամ, գյուղսովետի դեպուտատ։ Հասկանալի է, որ նա անգամ ֆիզիկապես հնարավորություն չի ունենա այսքան հանձնարարություններ կատարելու։ Հինգ-վեց հանձնարարություն ունեն նաև ուրիշ կոմունիստներ։ Մինչդեռ տասնյակ կոմունիստներ ոչ մի հանձնարարություն չունեն։

Հասարակական կյանքում կոմունիստի ակտիվությունը բնորոշվում է նաև նրանով, թե նա ինչպես է իրեն պահում կենցաղում, ինչպես է դրսևորում որպես ծնող, ընտանիքի հայր և այլն։ Կուսկազմակերպությունները հաճախ հաշտվում են այն երևույթի հետ, երբ առանձին կոմունիստներ կենցաղում իրենց վատ են պահում, զբաղվում են հարբեցողությամբ, խանգարում կարգ ու կանոնը, կատարում հանցանքներ ու զանցանքներ։

Կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացումն ու նրանց ակտիվության աճը սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության, դերի ու հեղինակության բարձրացման կարևորագույն պայմանն են, տնտեսական խնդիրների հաջող լուծման գրավականը։ Կուսակցության շրջանային կոմիտեն ամենօրյա աշխատանքում կվերացնի վերը հիշատակված թերությունները, մշտապես իր ուշադրության կենտրոնում կպահի ներկուսակցական կյանքի այդ կարևոր բնագավառը։



# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐՄԱՎՈՐՈՒՄԸ

*ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում պահանջվում է բարելավել աշխատանքի նորմավորումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ավելի լայնորեն ներդնել աշխատանքի գիտական կազմակերպումը, որպեսզի յուրաքանչյուր աշխատողի աշխատանքի վարձատրությունը համապատասխանի հանրային արտադրության մեջ ներդրված նրա աշխատանքային ավանդին։*

*Արտադրանքի համար ծախսվող աշխատաժամանակի կրճատման կարևոր գործոններից մեկն է գիտականորեն հիմնավորված նորմաների մշակումը, որովհետև դրանց միջոցով հնարավոր է դառնում աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործումը։*

*Ժամանակի նորմայի հակադիր մեծությունն է արտադրանքի նորման, որը միավոր ժամանակում արտադրվող արտադրանքի չափն է։ Չնայած այդ հակադրությանը, արտադրանքի և ժամանակի նորմաները համատեղ են բնութագրում աշխատանքի արտադրողականության դինամիկայի, շարժման տարբեր կողմերը։ Ժամանակի նորմայի կրճատմամբ աշխատաժամանակի տնտեսումն անմիջականորեն է արտահայտվում, իսկ արտադրանքի քանակի աճը միավոր ժամանակում աշխատաժամանակի տնտեսումն անուղղակի է ցուցադրում։*

*Աշխատանքի նորմավորման կատարելագործումը հնարավոր է իրագործել միայն նորմավորման գիտական մեթոդով, երբ աշխատանքի նորմավորման տվյալները տեխնիկապես և տնտեսապես հիմնավորում են։ Այսպես կոչված, փորձա-վիճակագրական նորմաները, աշխատանքի նորմավորման կատարելագործման հետ առնչություն չունեն։ Այդ մեթոդը պրակտիկայից պետք է դուրս մղվի։ Գիտականորեն հիմնավորված նորմավորման առավելությունն այն է, որ այս դեպքում շահագրգռված օրգանները, գիտական կազմակերպությունները, ձեռնարկությունները, իրենց առջև խնդիր են դնում նորմավորումը կատարելագործել այնպես, որ այն համարեցվի արտադրության մեջ տեղի ունեցող տեխնիկատեխնոլոգիական և կազմակերպչական փոփոխություններին։*

*Աշխատավարձի կարգավորմամբ աշխատանքի նորմավորման կատարելագործումը որոշ չափով բարելավվեց՝ բարձրացավ գիտականորեն հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը, դրանք ունիֆիկացվեցին, խոշորացան, արտադրության ճյուղերում ավելի շատ ներդրվեցին միութենական, համաարդյունաբերական, ճյուղային տիպական նորմաներ և այլն։ Սակայն, պետք է նշել, որ այսօր աշխատանքի նորմավորման բնագավառում եղած որոշ հաջողությունների կողքին դեռ կան զգալի թերություններ։ Ընդ որում, այդ ընդհանուր օրինաչափություն է, որը հատուկ է ինչպես ՍՍՀՄ, նույնպես և հանրապետական արդյունաբերությանը։*

*Հանրապետության արդյունաբերության հիմնական ճյուղերի օրինակով համառոտակի վերլուծենք աշխատանքի նորմավորման գոյություն ունեցող վիճակը։*

*ՀՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր ԿՎՎ տվյալների հիման վրա նորմավորման կատարողականը կարելի է դասակարգել երեք տարբերակներով։*

*Առաջինի մեջ մտնում են այն բանվորները, որոնք չեն կատարում պլանները։ Ճիշտ է, այդպիսի բանվորների տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության բանվորների թըվում մեծ չէ, բայց դրանց բացարձակ մեծությունը զգալի է։ Այսպես, 1969 թ. ապրիլ ամսվա տվյալներով հանրապետության արդյունաբերության բանվորների 9 տոկոսը նորմաների պլանը չի կատարել, այդ բանվորները բացարձակ թվով կազմել են 10375 հոգի, իսկ 1969 թ. հոկտեմբերին՝ համապատասխանաբար՝ 9,6 տոկոս և 11175 հոգի։*



*Պլանները չկատարելու պատճառները բազմաթիվ են, բայց ընդհանրացրած ձևով՝ սուբյեկտիվ և օբյեկտիվ բնույթ ունեն։*

*Սուբյեկտիվ պատճառներից է այն, որ աշխատանքի նոր նորմաներ սահմանելիս բանվորների որակավորումը համապատասխանաբար չի բարձրացվում, որի հետևանքով նրանք չեն կարողանում արտադրանքի բարձր նորմաները կատարել։ Այդ առաջանում է և նրանից, որ բանվորները լարված չեն աշխատում։*

*Օբյեկտիվ պատճառները վերաբերում են՝ արտադրության մեքենայացման աստիճանին, արտադրության և աշխատանքի կազմակերպման վիճակին, աշխատանքի պայմաններին և այլն։ Այս գործոնները վճռական նշանակություն ունեն պլանների կատարման բնագավառում։ Նոր, գիտականորեն հիմնավորված նորմաների ներդրումը պետք է զուգակցվի նշված օբյեկտիվ գործոնների կատարելագործման հետ։*

*Գործարքով աշխատող բանվորների երկրորդ տարբերակի մեջ են մտնում նրանք, ովքեր կատարում են գիտականորեն հիմնավորված նորմաների պլանները, անգամ գերակատարում են դրանք, որոշ ընդունելի սահմանափակ շրջանակներում։*

*Այսպես, երբ իրականում գիտականորեն հիմնավորված նորմաների գերակատարման շրջանակները կազմում են 10—20 տոկոս, ապա չի կարելի ենթադրել, որ տվյալ պայմաններում նորմաները հարկ եղած աշխատանքային լարվածություն չեն առաջացնում։ Այդ տարբերակով նորմաները կատարող բանվորները ՀՍՍՀ արդյունաբերության մեջ կազմել են, 1969 թ. ապրիլ ամսվա տվյալներով, գործարքով աշխատող բանվորների 34,9 տոկոսը։ Այլ կերպ ասած, հանրապետության արդյունաբերության ճյուղերում գիտականորեն հիմնավորված նորմաներով աշխատել են բանվորների 1/3 մի քիչ ավելի։ Իսկ ինչ վերաբերում է փորձա-վիճակագրական նորմաներին, ապա այդպիսի պլանները ո՛չ միայն հեշտությամբ են կատարվում, այլև գերակատարվում են 150 և ավելի տոկոսով։*

*Վերջին տարբերակով նորմաներ կատարող բանվորների տեսակարար կշիռը 1969 թ. ապրիլ ամսում կազմել է ողջ գործավարձով աշխատողների 56,1 տոկոսը։ Այլ կերպ ասած, հանրապետության բանվորների գերակշռող մասն աշխատել է փորձա-վիճակագրական նորմաներով։ 1969 թ. հոկտեմբերին էական փոփոխություններ չեն եղել։ Գիտականորեն հիմնավորված նորմաներով աշխատող բանվորների տեսակարար կշիռը հոկտեմբերին կազմել է 34,1, իսկ փորձա-վիճակագրական նորմաներով աշխատողներինը՝ 56,3 տոկոս։*

*Մեքենաշինության ճյուղում գիտականորեն հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը, մյուս ճյուղերի համեմատությամբ, ավելի ցածր է, իսկ արդյունաբերության միջին ցուցանիշների համեմատությամբ, փորձա-վիճակագրական նորմաներով աշխատողների տոկոսը բարձր է։*

*Չնայած արդյունաբերության բոլոր ճյուղերում, առանց բացառության, նորմաները կատարվում են բարձր տոկոսով, բայց արդյունաբերության ճյուղային հաշվետվություններում գիտականորեն հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը ցուցադրված է չափազանց բարձր։ Այդ երևում է ստորև բերված աղյուսակից։*

Գիտականորեն հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը և դրանց պլանների գերակատարման հարաբերակցությունը[1] (տոկոսներով)

| | Նորմաների տեսակարար կշիռը 1969 թ.[2] | | 120—150 տոկոս և ավելի պլանները գերակատարող բանվորների տեսակարար կշիռը 1969 թ. | |
|---|---|---|---|---|
| | ապրիլ | հոկտեմբեր | ապրիլ | հոկտեմբեր |
| Ամբողջ արդյունաբերությունը | 43,2 | 53,4 | 56,1 | 56,3 |
| Գունավոր մետալուրգիա | 33,3 | 84,2 | 58,2 | 66,0 |
| Քիմիական արդյունաբերություն | 69,2 | 67,8 | 58,0 | 57,1 |
| Մեքենաշինություն | 29,6 | 29,7 | 70,2 | 70,0 |
| Շինանյութերի արդյունաբերություն | 85,3 | 90,7 | 54,2 | 53,4 |
| Թեթև արդյունաբերություն | 77,7 | 81,4 | 46,0 | 46,5 |
| Սննդի արդյունաբերություն | 73,0 | 67,8 | 40,0 | 43,5 |

1 Աղյուսակը կազմվել է ՀՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր ԿՎՎ տվյալներով:
2 Նորմաների ամբողջ թիվն ընդունված է 100 տոկոս:

Այս տվյալներն ապացուցում են, որ հանրապետության արդյունաբերության բոլոր ճյուղերում, առանց բացառության, 150 տոկոս և ավելի պլանները գերակատարող բանվորների տեսակարար կշիռը շատ բարձր է։ Իսկ գիտականորեն հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը, բացառությամբ մեքենաշինության ճյուղի, ցուցադրած է շատ բարձր տոկոսով, բայց դրա ճշտությունը չի հաստատվում նորմաների կատարման ցուցանիշներով։ 150 և ավելի տոկոսներով կատարվող նորմաները չեն կարող գիտականորեն հիմնավորված համարել. ընդհակառակը, դրանց գերակշռող մասը կազմում են փորձա-վիճակագրական նորմաները։

Փորձա-վիճակագրական նորմաների բարձր տոկոսն արդյունաբերության ճյուղերում բացատրվում է ո՛չ միայն նորմավորման աշխատանքում տեղ գտած թերություններով, այլ գլխավորապես մեքենայացման աստիճանի ցածր մակարդակով, արդյունաբերության որոշ ճյուղերում, հատկապես օժանդակ արտադրամասերում, արտադրության և աշխատանքի կազմակերպման թերություններով։

Ինչպես նշեցինք, փորձա-վիճակագրական նորմաները բարձր տոկոսով կատարելը ո՛չ միայն չի նպաստում արտադրության ցուցանիշների բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, այլև դրա հետևանքով խեղաթյուրվում է ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը. բարձր որակավորում ունեցող բանվորը, որ աշխատում է գիտականորեն հիմնավորված նորմաներով, քիչ վարձատրություն է ստանում, քան ցածր որակավորում ունեցողը, որն աշխատում է փորձա-վիճակագրական նորմաներով։ Աշխատանքի նորմավորման կատարելագործման կարևոր ուղիներից է նորմաների վերանայումը։ Աշխատավարձի կարգավորման նախօրյակին (1967 թ.) Միութենական կառավարության որոշմամբ նորմաների վերանայման կարգը փոխվեց։ Մինչ այդ նորմաները վերանայվում էին կենտրոնացված կարգով, միանվագ, այդ աշխատանքները փաստորեն կոմպանիոն բնույթ էին կրում։ Ներկայումս վերը հիշատակված որոշման համաձայն, նորմաները վերանայում են սիստեմատիկաբար և դրանց փոփոխությունները միայն այն դեպքում է հանձնարարվում, երբ ձեռնարկություններում դրանց կատարման համար կիրառում են համապատասխան տեխնիկա-տնտեսական կազմակերպչական միջոցառումներ։

Նորմաների վերանայումը, որպես կանոն, պետք է զուգակցվի դրանց բարձրացման հետ, որովհետև աշխատանքի արտադրողականության աճը կրճատում է հանրորեն անհրաժեշտ աշխատաժամանակը։ Այսպիսով, աշխատանքի արտադրողականության աճի և նորմաների վերանայման միջև անմիջական կապ և պայմանավորվածություն գոյություն ունի։

Սակայն, իրականում նորմաները դանդաղ են վերանայում, իսկ գերակշռող մասը փաստորեն չի վերանայվում։ Այսպես, տվյալներից երևում է, որ հանրապետության արդյունաբերության ճյուղերում նորմաների վերանայման տարեկան միջին ցուցանիշները դեռևս շատ ցածր են։ 1969 թ. ապրիլին վերանայվել է արդյունաբերության ճյուղերի նորմաների 9,1 տոկոսը, իսկ 1969 թ. հոկտեմբերին կազմել է 12 տոկոս[1]։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ՍՍՀՄ մասշտաբով ևս նորմաների վերանայման աշխատանքը համարյա նույն վիճակում է, ինչ առանձին հանրապետություններում։ Որոշ տնտեսագետներ գտնում են, որ անհրաժեշտ է վերականգնել նորմաների վերանայման նախկին կարգը, այսինքն՝ դրանք համատարած, միաժամանակ պետք է վերանայվեն (տե՛ս «Экономическая газета», № 24, 1970)։ Սակայն, այդ տեսակետը տնտեսագետների մեծ մասը չի ընդունում։ Մենք ևս այդ տեսակետը չենք բաժանում։ Այստեղ չի կարելի վերադառնալ անցած էտապներին, այլ պետք է նորմաների վերանայման հարցը գիտական հիմունքների վրա դնել. չի կարելի այդ հարցի լուծումը թողնել միայն ձեռնարկությունների տնօրինությանը։ Հարցի լրջությունը, բարդությունը պահանջում է, որպեսզի վերադաս համապատասխան շահագրգռված օրգանները և գիտական կազմակերպությունները գործուն օգնություն ցույց տան նրանց։

Նորմաների վերանայմամբ նպատակադրվում է հնացած և փորձա-վիճակագրական նորմաները փոխարինել գիտականորեն հիմնավորված նորմաներով։ Սակայն, հարց է առաջանում, ինչո՞ւ են դրանք հնանում, ո՞րն է այդ երևույթների պատճառը։ Պարզ է, որ նորմաների հնանալը պայմանավորվում է արտադրության մեջ տեղի ունեցող այնպիսի փոփոխություններով, որոնք կրճատում են հանրորեն անհրաժեշտ աշխատաժամանակը. այսպիսի դեպքերում անհրաժեշտ է նորմաները վերանայել և արտադրանքի նորման բարձրացնել, համապատասխանաբար կրճատել ժամանակի նորման։ Սակայն, արտադրության մեջ տեղի ունեցած յուրաքանչյուր փոփոխություն թեկուզ և տեխնիկայի, տեխնոլոգիայի, արտադրության և աշխատանքի կազմակերպման բնագավառներում, դեռևս չի կարող հիմք ծառայել նորմաների մասսայական վերանայման համար։

Առհասարակ նորմաների մասսայական, համատարած վերանայումը չի կարելի համարել օրինաչափ, որովհետև արտադրության մեջ տեղի ունեցող փոփոխությունները կատարվում են անհամաչափ։ Այստեղից, արտադրության տարբեր ճյուղերում նորմաների զգալի չափով վերանայելը ևս պետք է կատարվի տարբեր ժամանակներում։

---

[1] Հաշվարկը կատարվել է ՀՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր ԿՎՎ տվյալներով։



Սակայն, ինչպե՞ս որոշել այն պահը, ժամանակը, արտադրության այս կամ այն ճյուղում, նորմավորման վերանայման ձեռնարկումների գիտականորեն հիմնավորվածությունն ապահովելու համար։

Մեր կարծիքով, աշխատանքի նորմավորման պլանավորումը պետք է կատարելագործել երկու գլխավոր ուղղություններով. առաջին՝ արտադրության ճյուղերի համար պետք է կազմել տևական շրջանի (հնգամյակների) համապատասխան խոշորացված, միասնական նորմատիվներ, երկրորդ՝ գիտական նախախմացության միջոցով պետք է կանխատեսել թե արդյունաբերության տարբեր ճյուղերում, հիմնական ուղղություններով, մոտակայում ինչպիսի՞ փոփոխություններ կառաջանան տեխնիկական առաջադիմության բնագավառում։ Անհրաժեշտ է այս բնույթի ուսումնասիրություններն իրագործել գիտա-հետազոտական ինստիտուտներում, որտեղ կան համապատասխան կադրեր և այլ պայմաններ նման ձեռնարկումների հաջող իրականացման համար։

Սակայն, այստեղից բնավ չի հետևում, որ ձեռնարկությունները նորմաների կատարելագործման բնագավառում անելիքներ չունեն, ընդհակառակը, այստեղ են իրագործվում, ներդրվում նորմաները. այդ պատճառով կատարվող աշխատանքները գլխավորապես տարվում են այն ուղղությամբ, որպեսզի գիտականորեն հիմնավորված նորմաները ժամանակին ներդրվեն արտադրապրոցեսներում և ապահովեն դրանց կատարումը։

Ձեռնարկություններում կատարվող նորմատիվ աշխատանքի կատարելագործման տեսակետից կարևոր նշանակություն ունի այն, թե որքանով են ձեռնարկությունների ղեկավարները, արտադրության ծառայությունները նպաստում, օգնում աշխատանքի և աշխատավարձի բաժիններին ու նորմավորողներին, որպեսզի նրանք նորմավորման աշխատանքը կատարեն ժամանակին և բարձրորակ։

Աշխատանքի նորմավորման պրոցեսը, ինարկե, աշխատանքի և աշխատավարձի բաժինների ծառայողների անմիջական ֆունկցիան է, բայց մշակված նորմաների ներդրումը և դրանց կատարման ապահովումը պայմանավորված է արտադրության մյուս ծառայությունների ակտիվ գործունեությամբ, որովհետև անհրաժեշտ տեխնիկա-տնտեսական և կազմակերպչական ձեռնարկումների կոմպլեքսն առանց դրանց չի կարելի իրագործել։

Ավելին, աշխատանքի նորմավորմանը պետք է մասնակցեն, բացի ինժեներներից, տնտեսագետներից, նաև իրավաբանները, սոցիոլոգները, ֆիզիոլոգները, հոգեբանները և այլ մասնագետներ, սրանց կոնսուլտացիաները, խորհուրդները կարող են զգալի չափով նպաստել աշխատանքի նորմավորման բարելավմանը։

Վերջերս տնտեսագիտական գրականության մեջ և պարբերական մամուլում շատ է խոսվում աշխատանքի գիտական կազմակերպումն ուժեղացնելու, կատարելագործելու մասին։ Սակայն այդ կատարվում է այնպես, որ աշխատանքի նորմավորման հարցերը ետին պլան են մղվում, մինչդեռ դա ճիշտ չէ։ Աշխատանքի գիտական կազմակերպման հիմքը նրա նորմավորումն է, առանց դրա կատարելագործման չի կարելի պատկերացնել աշխատանքի գիտական կազմակերպումը։ Իրավացի է «Экономическая газета»-ի հետևյալ դրույթը, որտեղ ասվում է. «Աշխատանքի արտադրողականության գիտական կազմակերպման և դրա բարձրացման գործոնը գիտականորեն հիմնավորված նորմավորումն է (№ 24, 1970)։ Աշխատանքի նորմավորումը միայն տնտեսական կատեգորիա չէ, այն ունի նաև սոցիալական, քաղաքական նշանակություն։

Նորմաների վերանայումը, դրանց փոփոխումը շոշափում են միլիոնավոր մարդկանց շահերը. այդ պատճառով նորմավորման աշխատանքներին պետք է մասնակցեն նաև իրենք՝ անմիջական արտադրողները, բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները և ծառայողները։

Արտադրողների մասնակցությունը նորմաների մշակման աշխատանքներին այնքանով արդյունավետ կլինի, որքանով ապահովվի դրանց նյութական շահագրգռվածությունը. նոր, գիտականորեն հիմնավորված նորմաները, պետք է առաջացնեն աշխատանքի արտադրողականության բարձրացման ազդակներ։

Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում նորմաների և պլանների հաջող կատարման գրավականը համարվում է նյութական և բարոյական խթանների զուգակցման անհրաժեշտությունը։ Աշխատանքի արդյունքներով բանվորների, ծառայողների և ձեռնարկությունների կոլեկտիվների նյութական շահագրգռության ուժեղացման զուգահեռ, հարկավոր է ամրապնդել աշխատանքի բարոյական խթանների դերը։ Բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի կարգապահությունը և պատասխանատվությունը նրա վրա դրված աշխատանքային պարտականությունների կատարման համար։

Գ. Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՏՈՒՖԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՍԱՐՔԱՎՈՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Վերջին տասնամյակների ընթացքում մեր հանրապետության քաղաքներում և բնակավայրերում կառուցված արդյունաբերական ձեռնարկությունների, հասարակական ու կոմունալ շենքերի, բնակելի տների մեծ մասը կերտվել է Հայաստանի անկրկնելի հարստությունը հանդիսացող շինանյութով՝ բնական տուֆով։ Բավական է նշել, որ միայն ընթացիկ հնգամյակում ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության շինմոնտաժային աշխատանքների համար նախատեսվող 14 մլն մ$^3$ շինանյութից, տուֆաքարի բաժինը կազմելու է 8 մլն մ$^3$ կամ 57 տոկոսը։

Հանրապետությունում գործող մեկ տասնյակից ավելի տուֆաքար արդյունահանող ձեռնարկություններ 1970 թ. արդյունահանել են 420 հազար մ$^3$ կանոնավոր և 1100 հազար մ$^3$ անկանոն տուֆաքար։ Կանոնավոր ձևի քարի հանույթի համար հիմնականում օգտագործվում են ՍՄ—89Ա և ՍՄ—518 քարհատ մեքենաներ, իսկ անկանոն քարի համար՝ կտրող-կիսամեքենայացված ԿՄՊ—2, ԿՄՊ—3 և Ուրալ—33, որոնց միջոցով կտրված խոշոր քոթուկները հետագայում բաժանվում են անկանոն որմնաքարի։

Տուֆի բնավայրերը Հայաստանում բնութագրվում են յուրահատուկ ֆիզիկա-մեխանիկական հատկություններով և զանգվածների լեռնա-երկրաբանական տվյալներով։ Դրանց ամրությունը տատանվում է 30—550 կիլոգրամ/սմ$^2$ սահմաններում (տե՛ս Ацагорцян З. А. Природные каменные материалы Армении, М., 1967, стр. 52—56)։ Ամրության նշանակալից տատանում է նկատվում ո՛չ միայն նույն բնավայրի սահմաններում, այլև միևնույն սանդղափուլում։ Այն բնավայրերում, որտեղ ապարների կարծրությունը գերազանցում է 300 կգ/սմ$^2$, կանոնավոր ձևի քարի հատում կազմակերպելը համարյա հնարավոր չէ, քանի որ օգտագործվող մեքենաները նախատեսված են մինչև 100—150 կգ/սմ$^2$ ամրության ապարների համար, հետևվաբար ցածր է նրանց և՛ արտադրողականությունը և՛ լեռնային զանգվածից ստացվող օգտակար ելքը։

Բանն այն է, որ քարհատ մեքենաների օգտագործման գործակիցը բավական ցածր է, հետևվաբար ցածր է նաև դրանց արտադրողականությունը։ Դա հետևանք է պարապուրդների առկայության, պլանային-նախազգուշական վերանորոգումների գրաֆիկի խախտման, անհրաժեշտ պահեստամասերի բացակայության և դրանց ցածր որակի։

Մեծ է ձեռնարկությունում եղած, սակայն չտեղադրված (կամ տեղադրված, բայց չաշխատող) մեքենաների թիվը։ Միայն 1965—1970 թթ. այս կամ այն պատճառով 63 քարհատ մեքենա ընդհանրապես չի գործել, որը հարուցել է մեքենաների ամորտիզացիոն հատկացումների թանկացում և թողարկած արտադրանքի ինքնարժեքի բարձրացում։ Հաշվումները ցույց են տալիս, որ 1965—1970 թթ. ընթացքում, եթե այդ մեքենաները յուրաքանչյուր տարի թողարկեին այնքան արտադրանք, որքան տեղադրվածները, ապա Արթիկ-տուֆը հանրապետության շինարարներին լրացուցիչ կարող էր մատակարարել 215 հազար մ$^3$ կանոնավոր ձևի շինաքար։ Հետևաբար, եթե այդպիսի քանակի արտադրանքի արտադրության և իրացման համար կատարվելիք լրացուցիչ ծախսերը դուրս գանք (6 տարիների միջին), ապա ձեռնարկությունը կարող էր լրացուցիչ ստանալ մոտ 900 հազար ռուբլու շահույթ։

Էական նշանակություն ունի նաև քարհատ մեքենաների նման թանկարժեք սարքավորումների օգտագործման հերթափոխային գործակցի բարձրացումը։ Այժմ հանրապետության քարհանքերում այդ ցուցանիշը չի գերազանցում 1,2-ը,



մինչ Մարալիկի և Աշտարակի քարհանքերում մեքենաները գործում են մեկ հերթափոխով։ Այս դեպքում կենսական նշանակություն ունի այդ ձեռնարկությունները մշտական կադրերով, առանձնապես մասնագետներով, ապահովելը։ Հայտնի է, որ տուֆաքար արդյունահանող ձեռնարկությունները հիմնականում տեղաբաշխված են հանրապետության գյուղատնտեսական շրջաններում և գարնան-ամռան ամիսներին բանվորների մեծ մասը զբաղվում է գյուղատնտեսական աշխատանքներով, որի պատճառով զգալի է կադրերի հոսունությունը, իսկ դա խանգարում է նրանց որակավորման գործին։ Շինանյութերի արդյունաբերության մինիստրության սիստեմում գտնվող և տուֆաքար արդյունահանող տասը ձեռնարկություններում 1970 թ. հոսունությունը կազմել է 35 տոկոս կամ աշխատանքից ազատվել են 1570 մարդ, որից 198-ը կարգապահության խախտման համար են հեռացվել։ Միաժամանակ քարհանքերի տեխնիկական զինվածության ցածր մակարդակը, ուրեմն ծանր աշխատանքը՝ չի հրապուրում երիտասարդ աշխատողներին։

Բացի այդ, կադրերի հարցը չի լուծվում նաև կենցաղային անբավարար պայմանների առկայությամբ, հասարակական սննդի վատ կազմակերպմամբ, բանվորներին և մասնագետներին նյութապես խրախուսելու միջոցների անբավարարությամբ։ Ձեռնարկությունների մեծ մասն ապահովված չի մասնագետ կադրերով։ 1970 թ. աշխատող 297 ինժեներա-տեխնիկական անձնակազմից միայն 97-ը ունեն մասնագիտական կրթություն։ Առանձին տեղամասերում՝ մեխանիկական, էլեկտրական, ծանր մեխանիզմների և տրանսպորտային արտադրամասերից շատերում որպես ինժեներներ և արտադրամասի պետեր աշխատում են միջնակարգ, անգամ թերի միջնակարգ կրթություն ունեցող պրակտիկներ։

Եթե հաջողությամբ լուծվեն այս հարցերը, ապա բոլոր հնարավորությունները կան, որպեսզի մոտակա տարիներին քարհանքերում տարվող աշխատանքները կատարվեն 1,5—1,75 հերթափոխով (վեց ամիս երկու, վեց ամիս 1—1,5 հերթափոխ)։ Այս ճանապարհով հնարավոր է արդյունահանել մեծ քանակությամբ թանկարժեք շինաքար, որը կապահովի ո՛չ միայն մեր հանրապետության աճող շինարարական կարիքները, այլև կարտահանվի այլ մերձակա և հեռավոր տնտեսական շրջաններ, որտեղ տուֆը, որպես որմնանյութ, մեծ պահանջ ունի։

Սարքավորումների օգտագործման արդյունավետությունը կարելի է բարձրացնել նաև կանոնավոր ձևի քարի ընդհանուր հանույթի մեջ առաջին տեսակի արտադրանքի ծավալի մեծացման շնորհիվ։ Ի դեպ, պետք է նշել, որ նրանց (I և II տեսակի) բաց թողման գների միջև տարբերությունը կազմում է 2 ռուբլի 40 կոպ.։ Առաջին տեսակի տուֆի ելքը ոչ միայն կախված է բնավայրի շահագործման պարամետրերից (ճեղքվածություն, կարծրություն), այլև դրա տեսակավորմամբ և տեղափոխմամբ զբաղված մարդկանց բարեխիղճ վերաբերմունքից։ Դիտումները ցույց են տալիս, որ տուֆի ելքից մինչև առաքման կայարան, առաջին տեսակի կանոնավոր քարի հետ վերաբերվում են այնպես, ինչպես կոպիտ քարի։ Այն կուտակում են իրար վրա՝ առանց նախնական տեսակավորման, գցում են տեղափոխելիս, մեքենա բարձելիս, թափելիս (երբեմն ինքնաթափ մեքենայի ամբարձիչն օգտագործելու միջոցով) և անգամ վագոնները բարձելիս։

Եթե նկատի ունենանք, որ I և II տեսակի տուֆաքարի նկատմամբ ԳՈՍՏ-ով առաջադրված հիմնական պահանջները միատեսակ են, բացառությամբ քարի կողքերի և անկյունների ջարդվածքների քանակից և չափսերից, ինչպես նաև այն, որ նշված թերությունները հիմնականում առաջանում են քարհատ մեքենայի տակից պատրաստի արտադրանքի դուրս գալուց հետո, ապա միանգամայն պարզ է, որ առաջին տեսակի որմնաքարի տեսակարար կշիռը մինչև շինհրապարակ հասնելը պայմանավորված է բոլոր փուլերում դրանով զբաղվող մարդկանց հոգատար վերաբերմունքով։ Ըստ հաշվարկների, առաջին տեսակի տուֆի ելքի նվազագույն պլանն առայժմ կարելի է սահմանել 65—70 տոկոս։ Այդ նպատակին կարելի է հասնել քարհանքերում հսկողությունն ուժեղացնելու, ինչպես նաև յուրաքանչյուր քարհատ մեքենային սպասարկող անձնակազմի համար տեսակայնության կոնկրետ պլաններ մշակելու և դրանք կատարելիս ու գերակատարելիս՝ պարգևատրումներ սահմանելու միջոցով։

Հետագայում, երբ բանվորների մոտ իրենց աշխատանքի նկատմամբ եղած հոգատար վերաբերմունքը կդառնա բնավորություն, ապա բարձր տեսակի քարի ելքի պլանը կարելի է ավելի մեծացնել։ Արթիկ-տուֆի ձեռնարկությունում 1966 թ. I տեսակի կանոնավոր ձևի տուֆի ելքը կազմել է ողջ արտադրանքի միայն 37 տոկոսը, այդ ցուցանիշն ընդամենը 2 տարվա ընթացքում՝ 1968 թ. հասել է 65 տոկոսի (վերցված է նաև Պեմզաշենի քարհանքերի վարչությունը)։ Հարկ է նշել, որ այս հանգամանքը շատ բանով նպաստեց երկար տարիներ վնասով աշխատող ձեռնարկությանը շահութաբեր դարձնելու համար։ Միայն Արթիկ-տուֆում 1968 թ. պլանով նախատեսված էր արտադրելու 125 հազար մ$^3$ կանոնավոր ձևի շինաքար, որից 50 հազար մ$^3$ առաջին տեսակի։ Փաստորեն արտադրվել է 134,6

հազար մ$^3$, որից 99,8 հազարը առաջին տեսակի կամ 74,1 տոկոսը։ Առաջին տեսակի տուֆի արտադրության գերակատարման հաշվին ձեռնարկությունը ստացել է 120,0 հազար ռուբլու գերպլանային շահույթ։

Հանրապետության «մեքենայացված» քարհանքերում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դրանց լիովին մեքենայացված համարել չի կարելի, քանի որ մեքենայացված է միայն կանոնավոր ձևի քարի հատումը, իսկ մնացած աշխատանքները կատարվում են ձեռքով։ Կտրված քարը փոսերից հանվում և դարսվում է ձեռքով, որի համար զբաղված են մեծ թվով օժանդակ բանվորներ։ ՍՄ—89Ա մեքենան լրիվ հերթափոխում (8 ժամ) կտրում է 12 խմ քար, իսկ սանդղալանջի մաքրման համար զբաղված են 3—4 մարդ։ Քարհանքերի մեծամասնությունում բացակայում են աշխատանքային նորմալ պայմանները, սկրեպերների և բուլդոզերների պակասը, ռելսերի բացակայությունը դառնում են սանդղալանջերի մաքրման աշխատանքների ձգձգման, հետևաբար և քարհատ մեքենաների հարկադրական պարապուրդի պատճառ։ Սանդղալանջերի և երկաթգծերի ոչ լավ հավասարեցման և տեղադրման պատճառով ճշգրտությունը չի պահպանվում, քարի չափերը չեն համապատասխանում ԳՈՍՏ-ին, կատարվում է կտրող գործիքի գերմաշում։

Քարհատ մեքենաների ճիշտ շահագործումը հնարավորություն կընձեռի կրճատելու նաև յուրաքանչյուր խմ քարի հանույթի համար ծախսվող աշխատանքը։ Այս հարցի կարևորությունն առանձնապես ցայտուն է, երբ համեմատում ենք կոպիտ ձևի (կիսամեքենայացված հանույթ) և սղոցված քարի հանույթի վրա կատարված աշխատանքային ծախսումները։ Մարալիկի շինանյութերի և կառուցվածքների կոմբինատի Սառնաղբյուրի (մեքենայացված) և Ջորակապի (կիսամեքենայացված) հանքերում կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ յուրաքանչյուր խմ անկանոն ձևի քարի հանույթի վրա ծախսվում է 3,50, իսկ կանոնավոր ձևի առաջին տեսակի քարի վրա 5,65 մարդ-ժամ։ Այս փաստը ցույց է տալիս, որ աշխատանքային ծախսումները 1,6 անգամ բարձր են մեքենայացված հանույթի դեպքում, քան կիսամեքենայացվածինը։ Սակայն դա չի նշանակում, որ կանոնավոր քարի հանույթն ընդհանրապես անարդյունավետ է։ Պետք է հաշվի առնել այն հանգամանքը, որ կոպիտ քարը համարվում է կիսաֆաբրիկատ և շինհրապարակներում աշխատանքային լրացուցիչ ծախսումներ է պահանջում, մինչդեռ սղոցված քարն անմիջապես օգտագործվում է։ Այստեղ կարևորն այն է, որպեսզի այդ ձեռնարկություններում աշխատանքներ տարվեն անարտադրողական կորուստներից խուսափելու և սղոցված քարերի արդյունավետությունն ավելի բարձրացնելու համար։

Տուֆաքարի հանույթի վրա կատարված աշխատանքային ծախսումների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նշանակալից տեսակարար կշիռ (մոտ 40 տոկոս) են կազմում օժանդակ աշխատանքները՝ քարի բարձումը և բեռնաթափումը, որը կատարվում է ձեռքով, գրեթե չեն օգտագործվում ամբարձիչ հարմարանքները։ Աշխատատարության կրճատումը հնարավոր է քարի տեղափոխման աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման միջոցով։ Քարի և սիլիկատների գիտա-հետազոտական ինստիտուտն առաջարկել է պատրաստի արտադրանքը տեղափոխել ծրարային եղանակով։ Այն կատարվում է քարի բաց դարսման միջոցով, առանց տարայի, որը հեշտացնում է դրա յուրացման պայմանները։ Այս եղանակն արդյունավետ է և ամենակարևորը՝ ծրարի չափսերը համապատասխանում են հիմնական մակնիշի տրանսպորտի չափսերին։ Ծրարները ավտոմեքենա են բարձվում հանքում, ավտոամբարձիչներով և տեղափոխվում են մինչև շինհրապարակ։ Այս ճանապարհով տեղափոխման ծախսերը կրճատվում են 22—25 տոկոսով կամ յուրաքանչյուր մ$^3$ քարի տեղափոխման համար տնտեսվում է 0,35—0,40 ռուբլի։

Արթիկ-տուֆում 1970 թ. ցանցավոր կոնտեյներով տեղափոխվել է ընդամենը 13,0 հազար մ$^3$ տուֆաքար։ Անհրաժեշտ է նշել, որ կոնտեյներով տեղափոխումը, ծրարային եղանակի համեմատությամբ, ունի նշանակալի թերություններ։ Դրանք են՝ պատրաստման համար անհրաժեշտ որոշակի դրամական ծախսումները, ետ տեղափոխման դժվարությունները, ծառայության կարճ ժամկետը (1—2 տարի) և ձեռքի աշխատանքի մեծ տեսակարար կշիռը։

Տուֆաքար արդյունահանող ձեռնարկություններում վատ են աշխատում նաև տուֆի մնացուկները խճի և ավազի վերածող սարքերը՝ ջարդող ագրեգատները։ Այդ նպատակով բերենք հանրապետության մյուս խոշոր ձեռնարկության՝ Լենինականի հանքվարչության օրինակը։ Ներկայումս վարչության տարբեր հանքերում տեղադրված են վեց ջարդիչ հարմարանքներ, որոնց միջոցով 1970 թ. արտադրվել է 34,5 հազար մ$^3$ տուֆավազ և 33 հազար մ$^3$ տուֆախիճ։ Եթե այս ձեռնարկությունում տուֆավազի և տուֆախճի արտադրությամբ զբաղված ագրեգատներն օգտագործվեն ինչպես հարկն է, հնարավոր է լրացուցիչ ստանալ 770 հազար ռուբլու արտադրանք, որից 430 հազարը տուֆախիճ (ելքի 60 տոկոսը) և 320 հազար ռուբլի՝ տուֆավազ ստանալիս։ Այս նպատակին հասնելու համար հարկավոր է այդ ագրեգատներն աշխատեցնել 1,5 հերթափոխ 0,8 օգտակար գործողության գործակցի պայմաններում։ Այսպիսի քանակությամբ լրացուցիչ արտադրանք թողարկելիս շահութաբերության նվազագույն մակարդակի (25 տոկոս) պայմաններում, ձեռնարկությունը կարող էր լրացուցիչ ստանալ 190 հազար ռուբլու եկամուտ։

Տուֆի բնավայրերի նշանակալից չափերի հասնող ճեղքվածության պայմաններում դրանց հատումը մեքենաներով իրականացնելիս գործնականում միայն մշակվող լեռնազանգվածի 30—40 տոկոսն է պատրաստի արտադրանք, որը համապատասխանում է ԳՈՍՏ-ին։ Հետևաբար, բոլոր ծախսերը՝ արդյունահանման և սարքավորումների պահպանման համար, վերաբերում են միայն ելքի նշված տոկոսին, որը, ինչ խոսք, համապատասխանորեն թանկացնում է արտադրանքը։

Տուֆաքարի և դրա արդյունահանման բնագավառում օգտագործվող սարքավորումների արդյունավետությունը մեծ չափերով կարելի է բարձրացնել հումքի կոմպլեքսային օգտագործման ճանապարհով։ Այդ դեպքում տուֆի արդյունահանման ծախսերը կբաշխվեն մի քանի արտադրատեսակների վրա, հետևաբար համապատասխանորեն կիջնի արտադրանքի ինքնարժեքը։

Հաշվումները ցույց են տալիս, որ վերջին վեց տարիների ընթացքում մեր հանրապետությունում մշակվել է 19400 հազար մ$^3$ լեռնային զանգված, որից պիտանի ելքը կազմել է 8150 հազար, իսկ թափուկները՝ 11250 հազար մ$^3$։ Հայտնի է, որ թափուկները հիանալի հումք են տուֆակազմ և տուֆաբետոնյա բլոկների պատրաստման, ինչպես նաև թեթև բետոնների համար։ Եթե ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրությունն ունենար համապատասխան կարողություններ այն օգտագործելու կամ իրացնելու համար, ապա միայն ուսումնասիրվող հինգ տարիների ընթացքում, շահութաբերության նվազագույն պայմաններում, հնարավոր էր ստանալ մոտ 3170 հազար ռուբլու շահույթ, այդ թվում միայն 1970 թ.՝ 570 հազար ռուբլու։

Տուֆաքարի թափուկների կոմպլեքսային օգտագործումը վաղուց արդեն օրակարգի հարց է դարձել, սակայն այդ նպատակով գործերը դեռևս լավ չեն ընթանում։ Այդ հարցը մասամբ լուծելու նպատակով Արթիկում կառուցվեց տուֆաբլոկ գործարանը. սակայն, եթե անգամ այն գործի ամբողջ կարողությամբ, ապա հնարավոր կլինի օգտագործելու Արթիկ-տուֆում առաջացած թափուկների միայն մի մասը։ Ձեռնարկության առաջին հերթն ունի տարեկան 250 հազար մ$^3$ պատային բլոկներ արտադրելու կարողություն, սակայն 1969 թ. արտադրել է միայն 61,4, իսկ 1970 թ. 46,3 հազար մ$^3$։

Տուֆի արդյունավետ օգտագործման հարցը կապված է նաև մշակվող շերտի հզորությունից. որքան մեծ լինի այն, այնքան փոքր ծավալ կունենան լեռնանախապատրաստական աշխատանքները, հետևաբար դրանց արժեքն արտադրանքի ինքնարժեքի մեջ փոքր կլինի։ Անթույլատրելի է, երբ 10—12 մետր հաստություն ունեցող քարաշերտերից մշակվում է միայն 5—6 մետրը։ Ներկայումս յուրաքանչյուր մ$^3$ անկանոն քարի համար, երբ մշակվող շերտի բարձրությունը 5—5,5 մետր է, բացման և հարթեցման աշխատանքները կազմում են 1,1, իսկ կանոնավոր քարի համար՝ 2 մ$^3$։ Պարզ է, որ եթե մշակվող շերտի բարձրությունը կազմի 10—11 մետր, ապա նշված ծախսումները կրկնակի կպակասեն։ Մինչդեռ Արթիկի, Անիի, Ախուրյանի և այլ շրջաններում կարելի է հանդիպել «լքված» բնավայրերի, որոնք լրիվ չեն շահագործվել։ Դրանց փոխարեն բացվել են նորերը, որի պատճառով վատնվել է մեծ քանակությամբ գյուղատնտեսության համար պիտանի հողատարածություն։ Մեծ քանակությամբ հողատարածություն են զբաղեցնում նաև հանքերի մոտ տասնյակ տարիների ընթացքում կուտակված թափուկները։

Քարի և սիլիկատների գիտա-հետազոտական ինստիտուտը նախագծել է ավելի բարձր արտադրողականություն ունեցող ՍՄ—913Մ քարհատ մեքենա, այն մեկ հերթափոխում պետք է տա 30—35 մ$^3$ պատրաստի արտադրանք, որը էՄ—206-ի կողմից թողարկվելիքը կգերազանցի երեք անգամ։ Իսկ ամենակարևոր առավելությունն այն է, որ այդ մեքենայի մշակված սանդղալանջի բարձրությունը կկազմի 168 սմ և 4 անգամ կգերազանցի մնացած մեքենաներին։ Հետևաբար, դրա շնորհիվ հնարավորություն կընտեղծվի շահագործելու բոլոր տուֆաշերտերը։

Ահա մի քանի կարևոր հարցեր, որոնց լուծումը հնարավորություն կընձեռի հանրապետության տուֆաքար արդյունահանող ձեռնարկություններում օգտագործվող քարհատ մեքենաների և մնացած սարքավորումների արդյունավետությունը բարձրացնելու, թողարկվող արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և ներտնտեսական կուտակումները մեծացնելու համար։

Ռ. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ






Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ԵՐԿՈՒ ԱՄԻՍ ԱՄՆ-ՈՒՄ*

## ՈՒՂԵՎՈՐՈՒԹՅԱՆ ՕՐԱԳՐԻՑ

Այսպես ուրեմն, ԱՄՆ-ում գտնվելու երկու ամսվա ընթացքում ես եղա շատ քաղաքներում, գնացքներով, ինքնաթիռներով, ավտոմեքենաներով անցնելով ավելի քան 12 հազար մղոն: Ես այցելեցի մոտ 100 տարբեր ձեռնարկություններ՝ պահածոների համար տարա արտադրող ֆիրմաներ, անալկոհոլ խմիչքների և գարեջրի գործարաններ, պաղպաղակի, պաքսիմատների, բիսկվիտների և հացի արտադրության ֆաբրիկաներ, ձկնեղենի և մսեղենի պահպանման սառնարաններ, թեփուկավոր սառույցի արտադրության գործարանը, շոկոլադ ու կոնֆետ արտադրող և սուրճ, թեյ ու կակաո փաթեթավորող կոմբինատը, բադերի սառեցման գործարանը, մետաղյա հատուկ կափարիչներ արտադրող ֆիրման, մի շարք թռչնաբուծական ֆերմաներ և թռչնա-սպանդանոցներ, կաթի ու պահածոների գործարաններ, Չիկագոյի սպանդանոցները, ձողիկների և փքված հատիկների սառեցման ֆերմաներ ու գործարաններ, մայոնեզի և կաթի փոշու արտադրության գործարաններ, պտուղբանջարեղենի գործարաններ, զանազան գինիների և, մասնավորապես, շամպայնի արտադրության գործարաններ, նավթեղեն-շաքարի գործարանը և այլն, և այլն: Ես ծանոթացա Նյու-Յորքի սրճարանների, «Մեյսի» ունիվերմագի, գաստրոնոմիական ապրանքների մանրածախ խանութների, սննդարդյունաբերության որոշ հարցերով զբաղվող գիտահետազոտական ինստիտուտի («Մելոն ինստիտուտ») աշխատանքին, այն էքսպերիմենտալ փորձակայանների և լաբորատորիաների աշխատանքին, որտեղ հետազոտություններ էին կատարվում կաթի արդյունաբերության բնագավառում: Բացի դրանից, ես այցելեցի «Գերի» ֆիրմայի՝ այն ժամանակ աշխարհում ամենախոշոր մետալուրգիական գործարանը, «Ջեներալ էլեկտրիկ» ընկերության ձեռնարկությունը և այն ժամանակ ամենամեծ «Բոլդեր-դամ» (այժմ «Ուզվելտ-դամ») էլեկտրակայանը: Ես տեսա նաև Կլիվլենդի ու Չիկագոյի գյուղատնտեսական ցուցահանդեսները և մի ավիոգործարան:

Լոս-Անջելոսում գտնված ժամանակ Տրոյանովսկին մի անգամ ինձ ասում է, որ «Դուգլաս» ավիացիոն ընկերությունն առաջարկում է լինել իր մի գործարանում, որը ռազմական ռմբակոծիչներ է արտադրում: Այդպիսի այցելությունը մեր ծրագրում չէր մտնում, բայց Տրոյանովսկին համոզեց ինձ, և ես համաձայնեցի, որ դա, գուցե, հետաքրքիր կլինի: Մենք գործարան գնացինք զաղտնի և աշխարա պահակախմբի ուղեկցությամբ, մի մեքենայով, որ վարում էր դիրեկտորներից մեկը: Ինձ վրա մեծ տպավորություն թողեցին վիթխարի կորպուսները, ժամանակակից մետաղահատ հաստոցները, մամլիչները և այլ սարքավորումը, ինչպես նաև արտադրության մեջ տիրող մաքրությունն ու կարգ ու կանոնը: Իհարկե, ավիացիոն տեխնիկայից ես այն ժամանակ, ինչպես և հիմա, բան չէի հասկանում: Ա՜յ, եթե իմ տեղը լիներ հանգուցյալ եղբայրս՝ կոնստրուկտոր Արտեմը, կարող էր ավելի մանրամասն պատմել այդ մասին:

Այդ բազմաթիվ այցելությունների ժամանակ ես առիթ էի ունենում հանդիպելու ու զրուցելու շատ կոմպետենտ մասնագետների, փորձառու կազմակերպիչների և ընդհանրապես հետաքրքիր մարդկանց հետ: Մի խոսքով, ինչպես ես արդեն ասացի, ուղևորության ծրագիրը ծայր աստիճան հագեցած էր: Հիշում եմ, առաջին օրերին Նյու-Յորքում պատվիրակության անդամները երեկոյան հավաքվում էին հյուրանոցում և իմ ներկայությամբ փորձում էին քննադատել ամերիկյան կարգերը, գործի դրվածքը առանձին ճյուղերում: Ես խստորեն ընդհատում էի այդ խոսակցությունները, ասելով՝ հարկավոր չէ ժամանակ ծախսել ամերիկյան կապիտալիզմի արատները որոնելու վրա, դրանք այնպես էլ մեզ հայտնի են: Մենք եկել ենք ուսումնասիրելու և ընդօրինակելու տեխնիկական բոլոր լավագույն նվաճումները, որ դրանք արմատավորենք մեզ մոտ:

Ահա, մոտավորապես մի քանի տիպիկ օրեր այն երկու ամսից, որ անցկացրինք ԱՄՆ-ում: Բացում եմ ուղևորության իմ օրագիրը և վերցնում պատահածը: Օրագրից բերում եմ այն բառացի չոր գրառումը, որ կատարել է իմ քարտուղար Բարաբանովը «Ամտորգի» ինժեներ Մորոզովի հետ միասին:

### 18 ՕԳՈՍՏՈՍԻ 1936 Թ.

*1. Ֆիրմա «Անկեր կեն կոմպանի», Լոնգ-Այլենդ-Սիթի: Զրույց ֆիրմայի պրեզիդենտի հետ Ամերիկայի պահածոների համար թիթեղյա տարայի արտադրության մասին: «Անկեր կեն կոմպանի» ֆիրմայի թողարկած կափարիչների ցուցադրում, փորձարկումների լաբորատորիաների և արհեստանոցների դիտում:*

*2. «Գերի Գյուրելլ» ֆիրմայի սարքավորման ցուցադրում: Երկհարկանի կորպուսում տեղավորված են արտադրամասերը, կատարվում է բազմազան ասորտիմենտի ամերիկյան պաղպաղակի փաթեթավորում և պահպանում: Ժողկոմը ցուցումներ է տվել ինժեներ Բուրգմանին Մոսկվայի պաղպաղակի ֆաբրիկայի համար ընդօրինակել Բորդենսի ֆաբրիկայում արտադրվող պաղպաղակի ութ տեսակներից բաղկացած ասորտիմենտը:*

### 18 ՕԳՈՍՏՈՍԻ 1936 Թ.

*1. Այցելություն «Ամերիկեն կեն կոմպանի» ֆիրմայի վարչություն Նյու-Յորքում: «Ամերիկեն կեն կոմպանի»-ի գործարանի դիտում Նյու-Ջերսի նահանգում (քաղ. Նյուարկ):*

*2. Այցելություն անալկոհոլ խմիչքների և գարեջրի «Հոֆման» գործարան Նյուարկում (Նյու-Ջերսի նահանգ): Գործարանն արտադրում է բազմազան ասորտիմենտի անալկոհոլ խմիչքներ և ունի գարեջրի ոչ մեծ արտադրամաս: Գործարանը լրիվին մեքենայացված է: Գործարանում ուշադրություն են գրավում արտասովոր մաքրությունը և սանիտարական լավ պայմանները:*

### 20 ՕԳՈՍՏՈՍԻ 1936 Թ.

*1. Այցելություն պաքսիմատների, բիսկվիտների և հացի արտադրության ֆաբրիկա՝ «Նեշնլ բիսկվիտ կոմպանի»:*

*2. Այցելություն 42-րդ փողոցի վրա գտնվող (Նյու-Յորքում) սրճարան, դիտում և մանրամասն ծանոթացում նրա աշխատանքի հետ:*

### 21 ՕԳՈՍՏՈՍԻ 1936 Թ.

*1. Այցելություն «Ֆրոստ ֆուդ կոմպանի» ֆիրմա և զրույց պրեզիդենտ մ-ր Գիբսոնի հետ: Ֆիրման կիրառում է բոլոր սննդամթերքների արագ սառեցման մեթոդը, այսպես կոչված «բերցակյան պրոցեսը»[1]: Մանրամասն զրույցի ընթացքում մ-ր Գիբսոնը մեզ հաղորդեց արագ սառեցման պրոցեսի կիրառման առավելությունների մասին, ցուցադրեց սառեցված մթերքների (մսեղեն, ձկնեղեն, բանջարեղեն, մրգեղեն) լայն ասորտիմենտը, ցույց տվեց մի ֆիլմ և պահարանա ռեֆրիժերատորներ ունեցող 2 խանութ:*

*2. Այցելություն թեփուկավոր սառույցի արտադրության գործարան Նյու-Յորքում և ձկնեղենի սառնարանի դիտում:*

*Գործարանում, եռահարկ փայտե հին կորպուսում տեղակայված են թեփուկավոր սառույցի արտադրության երկու ագրեգատ: Պատրաստի թեփուկավոր սառույցը թափվում է երկրորդ հարկում տեղադրված մեծ բունկերները, բունկերներից նավդաններով լցվում է բեռնատար ավտոմեքենա-սառնարանները: Ձկնեղենի պահպանման սառնարանը հետաքրքրություն չէր ներկայացնում: Ակնբախ էր արտասովոր կեղտը: Բոլոր շենքերը փայտից են: Ուշագրավ է ձկնեղենն ընդունողի գործը, որը կոնտոմետրի վրա իսկույն գրառում է ստացվող ապրանքի քաշը:*

*3. «Ատլանտիկ էնդ պեսիֆիկ կոմպանի»-ի (Բրուկլին, Նյու-Յորք)՝ շոկոլադի, կոնֆետի արտադրության, չոր մթերքների՝ սուրճի, կակաոյի, թեյի և այլ մթերքների փաթեթավորման կոմբինատի դիտում:*

*Հին տիպի բազմահարկ երկաթբետոնե կորպուսում տեղավորված են վերը թվարկված արտադրամասերը: Շենքի հաջող պլանավորումը թույլ է տալիս այստեղ ոչ միայն շոկոլադ, ամեն տեսակի կոնֆետներ արտադրել, այլև լայնորեն օգտագործել այն ամեն տեսակի սորուն մթերքների ծրարման համար: Շենքի տիպը կարելի է ընդունելի համարել նաև ՍՍՀՄ սննդի մի շարք ձեռնարկությունների համար:*

Մեր ուղևորության բոլոր օրերն այդ բնույթի էին: Աստիճանաբար պատկերացում էինք ստանում այն մասին, թե ամերիկյան կապիտալիզմի փորձը առաջին հերթին հատկապես ինչով կարող է օգտակար լինել մեր սոցիալիստական երկրի համար, ինչ կարելի է ընդօրինակել: Այս բոլորը գրի էին առնում կոնսուլտանտները, որոնց հետ մենք երեկոյան քննարկում էինք մեր տեսածը:

ԱՄՆ-ում գտնվելու ժամանակ մեր ուշադրության ոլորտում էին գտնվում սննդարդյունաբերության պրոբլեմները, և տուն վերադառնալուց հետո ես ընկերներին հաղորդակից դարձրի իմ տպավորություններին օվկիանոսի այն կողմում այդ գործի դրվածքի մասին, ինչպես նաև պատ-

* *Սկիզբը «Լենինյան ուղիով» № 1-ում:*

1 Տերմինը ծագում է անգլ. „bird's eye„- «թռչունի աչք»-ից: Ծանոթագր. հեղինակի:

մեցի արդյունաբերության մյուս ճյուղերի, առևտրի, կենցաղսպասարկման ձեռնարկություններում տեսածիս մասին: Այս բոլորը որոշակի ազդեցություն գործեց մեզանում մի շարք ճյուղերի աշխատանքի բարելավման վրա: Այսպես, ԱՄՆ-ում մենք շատ բան ընդօրինակեցինք արտադրության կառավարման բնագավառում, քանի որ ամերիկացիները լավ կազմակերպիչներ են: Տուն վերադառնալուց հետո հանդես գալով իմ ղեկավարած ժողկոմատում, ես ասել եմ. «Եթե մենք կարողանայինք արտադրությունն այնպես կառավարել, որ նրա մեջ ավելորդ տարրեր չլինեին, որ այն հասներ ԱՄՆ-ի մակարդակին, ապա մենք կրկնակի տեմպերով առաջ կշարժվեինք»:

Ամերիկյան սննդարդյունաբերության պրոբլեմների ուսումնասիրությունը մենք սկսեցինք խանութներից, որտեղ մթերքները վաճառվում էին արդեն ծրարված ձևով: Այդ մեթոդը մեզ թվաց չափազանց նպատակահարմար, և մենք հետագայում այն փոխադրեցինք մեր հողի վրա, բայց փաթեթավորման նյութերի բացակայության պատճառով այն մեծ թափ չստացավ: Ինձ շատ էր հետաքրքրում անալկոհոլ խմիչքների արտադրությունը: Այն ժամանակ մենք ինքներս էլ բավական մեծ քանակությամբ մրգահյութեր էինք թողարկում, բայց դեռևս չէինք կարող երաշխավորել դրանց հարյուր տոկոսանոց որակը բոլոր ձեռնարկություններում: Մենք ուսումնասիրեցինք կոկա-կոլայի արտադրության պրոցեսը մի էքստրակտից, որ պատրաստվում էր 4—5 գործարաններում: Տեղական ֆաբրիկաներում էքստրակտը միայն ջրիկացնում էին և լցնում շշերը: Սակայն մեզ մոտ մենք հետագայում ծավալեցինք ոչ թե կոկա-կոլայի, այլ լիմոնադի և ռուսական կվասի լայն արտադրությունը, օգտագործելով կոկա-կոլա պատրաստող ամերիկյան ֆիրմայի արտադրական պրոցեսները:

Ամերիկացիներից մենք ընդօրինակեցինք նաև մթերքների արագ սառեցման խիստ հետաքրքիր պրոցեսը («բերցաևյան պրոցես»): Այդ պրոցեսը մեծ տպավորություն թողեց ինձ վրա: Ես կարծում էի, որ հասկացողություն ունեմ սառնարանային գործի մասին, և հանկարծ տեսա այն, ինչը չէի պատկերացնում: Վերադառնալով, ես այդ մասին պատմեցի ժողկոմատում տեղի ունեցող խորհրդակցությունում:

«Ահա և արագ սառեցումը, որ շատ հետաքրքիր գործ է,— ասացի ես այն ժամանակ:— Դա վիթխարի կարևորություն ունեցող հարց է մեր երկրի համար: Իսկ ո՞րն է դրա գլխավոր առավելությունը: Երբ մթերքը դանդաղ են սառեցնում, ապա այդպիսի սառեցման դեպքում գոյանում են սառույցի խոշոր բյուրեղներ և դրանք պատռում են մթերքի հյուսվածքի բջիջները: Երբ այդ մթերքը սառեցվում է, ապա մեծ քանակությամբ հյութ է արտահոսում: Վերցնենք, օրինակ, սառեցրած միսը: Երբ սկսում են սառեցրած միսը ետ բերել, շատ մսահյութ է կորչում, որովհետև սառույցի խոշոր բյուրեղները պատռել են բջիջները: Իսկ արագ սառեցման դեպքում գոյանում են ավելի մանր բյուրեղներ»:

Մեզ մոտ ՍՍՀՄ-ում, գլխավորապես Մոսկվայի մոտակա մի քանի ժամանակակից թռչնաբուծական ֆաբրիկաներ ունեինք (Տոմիլինոյի, Բրատևսկի, Գլեբովսկի), բայց մենք նոր և հետաքրքիր շատ բան տեսանք Ամերիկայում, մանավանդ թռչնեղենի մասսայական արտադրության ու մորթման ոլորտում:

Հացաթխման ստանդարտի տեսակետից մենք այն ժամանակ գտնվում էինք Ամերիկայի մակարդակին, բայց հացի արտադրության մեքենայացման ոլորտում շատ ետ էինք մնում: ԱՄՆ-ում արդեն այն ժամանակ լավ գործարաններում մարդու ձեռքը հացին չէր դիպչում, ամեն ինչ մեքենայացված էր՝ ընդհուպ մինչև փաթեթավորումը: Դրանք տեխնիկայի հարցեր էին, և մենք գտնում էինք, որ հարկ չկա, այսպես ասած, նորից հեծանիվ հնարել, քանի որ ուրիշներն արդեն հնարել են այն: Ուստի ամերիկացիներից շատ բան վերցրինք հացագործության արդյունաբերության մեքենայացման բնագավառում: Այսպես, օրինակ, մենք Ամերիկայից բերեցինք բուլկիների պատրաստման մեքենայացված եղանակը, որոնք մինչ այդ մեզանում պատրաստվում էին ձեռքով և կոչվում էին «ֆրանսիական»: Մեքենաները պատրաստում էին հենց այդպիսի բուլկի, բայց առանց կեղևի, որը հարկ էր լինում կպցնել ձեռքով: Նոր տիպի բուլկիները մենք անվանեցինք «քաղաքային», մեր հացագործական արդյունաբերությունը դրանք թողարկում է առ այսօր էլ:

Ինչ վերաբերում է պաղպաղակի արտադրությանը, ապա մենք տեխնոլոգիան ամբողջովին բերեցինք Ամերիկայից, քանի որ մինչ այդ մեզանում պաղպաղակը պատրաստվում էր տնայնագործական եղանակով: ԱՄՆ-ում պաղպաղակի արտադրության,— մեզ համար սննդարդյունաբերության այդ նոր ճյուղի,— լավ կազմակերպման հետ արդեն առաջին ծանոթությունը ցույց տվեց, որ մեր ԱՄՆ մեկնելու ժամանակ Մոսկվայում կառուցված պաղպաղակի ֆաբրիկայի նոր շենքում կարելի է արտադրել ավելի մեծ քանակությամբ պաղպաղակ, քան մենք նախատեսել էինք: Այդ կանխատեսումը հետագայում լիովին հաստատվեց, և № 8 սառնարանին կից Մոսկվայի պաղպաղակի ֆաբրիկան սկսեց թողարկել ոչ միայն շատ բարձր որակի, այլև այնքան արտադրանք, որը երկուս և կես անգամ գերազանցում էր առաջուց նախագծվածը:

Կուզենայի առանձին կանգ առնել առևտրի բնագավառի մասնագիտացման հարցերի վրա: Այն ժամանակներում մեզ մոտ կոմպլեքսային առևտրի պարենային խանութները քիչ էին, խանութների մեծ մասը մասնագիտանում էր որևէ մեկ մթերքի վաճառքի գծով: Ամերիկայում մենք տեսանք ապրանքների հսկայական ասորտիմենտ ունեցող խանութներ: Այն ժամանակ, ինչպես և այժմ, այնտեղ ուզածդ դեղատանում (druq-store) կարելի էր գնել այն ամենը, ինչ որ ուզեք,— սկսած պաղպաղակից մինչև փողկապը: Իհարկե,— ես այդ մասին ասել եմ այն ժամանակ և կրկնում եմ այժմ,— այն ժամանակ մենք ունեինք մի քանի խոշոր գաստրոնոմիական խանութներ, օրինակ՝ Մոսկվայում Սմոլենսկի գաստրոնոմը, որը շատ ավելի լավ էր սարքավորված, քան ներկայումս եղած ամերիկյան խանութները: Բայց դրանք միավորներ էին, իսկ հարկավոր էր ամբողջ երկիրը ծածկել այնպիսի խանութների ցանցով, որոնց ես տվեցի «Գաստրոնոմ» անունը, որը և հետագայում արմատավորվեց (առաջ գործածվող «Գաստրոնոմիա» անվան փոխարեն):

Հետաքրքիր թվաց նաև այն, թե Ամերիկայում ինչպես է կազմակերպված տաք կոտլետների արտադրության ու վաճառքի գործը:

«Ամերիկայում լավ ուտելիք կա մասսայական սպառողի համար, այնպիսին, ինչպիսին մեզանում նրբերշիկն է,— պատմում էի ես տուն վերադառնալուց հետո:— Դա այսպես կոչված «համբուրգերներն» են, տաք կոտլետները, որոնք պատրաստում են մեքենաների օգնությամբ: Կոտլետները արտադրվում են կամ ուղղակի մսի կոմբինատում, կամ էլ աղացած մսից հենց խանութում: Սակայն այստեղ հաճախ խաբում են գնորդին: Մսի ֆիրմաները չեն փորձում վաճառել հնացած մսի մնացորդները, քանի որ դրանք ոչ ոք չի գնում, այլ այն խառնում են թարմ մսի հետ և կոտլետներ պատրաստում: Այդ պատճառով խանութում պատրաստված «համբուրգերները» ավելի վատորակ են, քան մսի կոմբինատից ուղարկվածները: Կան մեքենաներ, որոնք ժամում արտադրում են 5 հազար կոտլետ: Իհարկե, դա էժան է նստում: Ես պատվիրեցի այդպիսի մեքենաների, ինչպես նաև փողոցում գործածվող մանղալների նմուշներ: Վերջինները կառուցված են հետևյալ կերպ: Չժանգոտող պողպատի թերթիկը տաքացվում է գազով կամ էլեկտրականությամբ: Այս բոլորը մոնտաժված է մեր վաճառակրպակից մի փոքր ավելի մեծ հարմարանքի մեջ, որպեսզի հնարավոր լինի նրանով կանգնել փողոցում: Վաճառողը միսը դնում է այդ թերթիկի վրա առանց որևէ յուղի, քանի որ «համբուրգերի» մեջ այնքան ճարպ կա, որ ոչ մի յուղ այլևս չի պահանջվում: Կոտլետը տապակվում է մի կողմից, այնուհետև շրջվում է մյուս կողմի վրա և մի քանի րոպեի ընթացքում այն պատրաստ է: Այդ վաճառողը իր մոտ բուլկիներ ունի: Նա կտրում է բուլկին, կոտլետը դնում մեջը, ավելացնում է տոմատ, մի կտոր աղը դրած վարունգ կամ մանանեխ. և ահա տաք բուտերբրոդ: Զբաղված մարդուն դա շատ հարմար է»:

Ես պատվիրեցի քսանհինգ մեքենա, որոնք կարող էին պատրաստել օրական 2 միլիոն այդպիսի կոտլետ: «Համբուրգերների» արտադրությունն արմատավորվեց Մոսկվայում և մի քանի քաղաքներում: Կառուցվեցին «համբուրգերների» վաճառքի կրպակներ. բայց պատերազմը խանգարեց այդ նախաձեռնությունը հաստատուն կերպով արմատավորել մեր երկրում:

Առանձնապես հարկ կա հիշատակել բանջարեղենի և մրգեղենի հյութերի արտադրության մասին: Ես մանրամասնորեն ծանոթացա այդ գործի դրվածքին Ամերիկայում: Այն մեծ տպավորություն թողեց ինձ վրա: Արդեն այն ժամանակ ԱՄՆ-ում լայնորեն զարգացած էր նարինջի, տոմատի և այլ հյութերի արտադրությունն ու սպառումը: Մեզանում նարինջի բացակայության պատճառով մենք մեր ընտրության մեջ կանգ առանք տոմատի հյութի վրա, համապատասխան գործարաններ կառուցելով պոմիդորի վերամշակման համար: Ես երազում էի այնպիսի քանակությամբ տոմատի հյութ արտադրելու մասին, որպեսզի այն դառնա սպառման իսկական ժողովրդական մթերք: Նյու-Յորքի նահանգում այցելեցինք հյութարտադրման ու պահպանման մի փորձակայան, որտեղ մեզ սպառիչ ինֆորմացիա տվեց դոկտոր Տրեյսլերը:

Ես մանրամասնորեն ծանոթացա նաև Վիսկոնսին նահանգի կաթի արդյունաբերության ձեռնարկություններին: Դրանք աչքի էին ընկնում բարձր տեխնիկական հագեցվածությամբ: Այցելեցինք նաև մի ֆիրմա, որտեղ կովերի կիթը մեքենայացված էր (մի բան, որ այն ժամանակ ՍՍՀՄ-ում դեռ բոլորովին չկար), կաթի վերամշակման փորձնական գործարաններ, փորձարարական լաբորատորիաներ: Այստեղ հետաքրքիր զրույց տեղի ունեցավ պրոֆեսորներ Պրայսի, Ջեկսոնի և Կլարկի հետ: Այդ ձեռնարկություններն այցելելը և հիշատակված զրույցը օգնեցին մեզ երկրում խտացրած կաթի և կաթի փոշու արտադրության գործարաններ նախագծելու և կառուցելու գործում: Դրանով շատ էր զբաղվում ինժեներ Վասիլևսկին, որ նույնպես եղել էր ԱՄՆ-ում: Իսկ պանրի լայն ասորտիմենտի արտադրության գործում աչքի ընկնող դեր խաղաց պրոֆեսոր Գրաննիկովը, որը նույնպես եղել էր արտասահմանում, ուսումնասիրել ԱՄՆ-ի և Ֆրանսիայի փորձը:

Ամերիկյան ձեռնարկությունները դիտելիս իսկույն աչքի էր զարնում այն, որ դրանց կառա-

վարիչների հաստիքը թվական տեսակետից նվազագույն է, երկու-երեք անգամ ավելի փոքր, քան մեր նույնպիսի ձեռնարկություններում: Որքան ցավալի էր գիտակցել, որ ՍՍՀՄ-ում արտադրության կառավարման հաստիքների ծայրահեղ շռայլություն գոյություն ունի: Մյուս կողմից, ես զարմացած էի, թե ռեկլամով և մրցակիցների դեմ մղվող պայքարում իրենց ապրանքները շուկա հասցնելով, ֆինանսական-բանկային գործառնություններով զբաղված ծառայողների ու գործակալների ինչպիսի հսկայական հաստիքներով, մեծ թվով իրավաբաններով են իրենց շրջապատել ֆիրմաներն ու կորպորացիաները: Մի բան, որ մեզանում սոցիալիստական սիստեմի շնորհիվ, բարեբախտաբար, չկար:

Մի անգամ մենք դիտում էինք 17 հազար տոննա տարողությամբ մի սառնարան: Դա ինձ առանձնապես հետաքրքրեց, քանի որ մի քիչ առաջ Մոսկվայում կառուցված մեր երեք ամենամեծ սառնարաններն ունեին միայն 6 հազարական տոննա տարողություն: Ամերիկյան սառնարանի կառուցվածքն ու սարքավորումը գրեթե այնպիսին էին, ինչպես մեզ մոտ, քանի որ մենք արդեն այն ժամանակ կառուցում էինք ժամանակակից սառնարաններ: Իսկ ինձ ապշեցրեց հետևյալը: Երբ մեզանում որևէ օբյեկտ է կառուցվում, շինարարական հրապարակը շրջափակվում է հսկայական ցանկապատով, առանձին շենքեր են կառուցվում կոմպրեսորների, պոմպերի, գրասենյակի, գարաժի համար, ընդամենը մոտ 12 առանձին շենք սառնարանի համար: Բացի դրանից, հրշեջ պահակախմբի պահանջով զգալի հեռավորություն է պահպանվում շենքերի միջև: Այդ ամբողջ տերիտորիան պետք է բարեկարգել, էլեկտրականություն անցկացնել, ճանապարհներ շինել, ջրմուղ անցկացնել և այլն: Այս բոլորը ամերիկացիների մոտ չկար: Ամերիկյան սառնարանի մոտ ո՛չ շինարարության, ո՛չ շահագործման ժամանակ, ո՛չ ցանկապատ է լինում, ոչ էլ ուրիշ շենքեր: Բարձրանում էր միայն սառնարանի երկաթ-բետոնե շենքը՝ առանց արտաքին սվաղի: Երկաթուղագծերը մտնում էին շենքը, և բեռնման-բեռնաթափման բոլոր աշխատանքները կատարվում էին այնտեղ, որի համար կար բեռնման հատուկ հրապարակ: Իսկ երբ բեռնման-բեռնաթափման աշխատանք չկար, սառնարանը փակում էին և այն պահպանում էր միայն մի պահակ:

Ինձ համար դա լավ դպրոց էր: Կոտրելով մեր գերատեսչական նախագծողների դիմադրությունը սննդի և այլ ձեռնարկությունների շինարարության գործում, մենք ամերիկյան փորձից մեզ մոտ փոխադրեցինք լավագույնը: Արդյունաբերական ձեռնարկությունների կոմպակտ շինարարության այդ գաղափարներն օգտագործվեցին 1938 թվականին սովետական կառավարության «Նախագծային ու նախահաշվային գործը բարելավելու և շինարարության ֆինանսավորումը կարգավորելու մասին» որոշումը նախապատրաստելիս:

Տվյալ հուշերում ես գիտակցաբար կանգ չեմ առնում այն կոնկրետ օրինակների վրա, թե ամերիկյան փորձից հատկապես ինչ ենք փոխադրել սննդարդյունաբերության, առևտրի և հասարակական սննդի տարբեր ճյուղերը, քանի որ ես, հավանաբար, այդ մասին կգրեմ մի այլ անգամ: Ուստի ստորև ես կպատմեմ միայն ԱՄՆ-ում այնպիսի մարդկանց հետ ունեցած մի քանի հանդիպումների մասին, որոնք նկատելի հետք են թողել այդ երկրի պատմության մեջ:

## ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ ՀԵՆՐԻ ՖՈՐԴԻ ՀԵՏ

Սեպտեմբերի սկզբին գտնվելով Դետրոյտում, ես որոշեցի օրերից մեկն օգտագործել Ֆորդի գործարանին ծանոթանալու համար, գործարան, որի տերիտորիայում էր գտնվում նաև Ֆորդի միջոցներով ստեղծված էդիսոնի թանգարանը: Իմ կնոջը և ամերիկա-սովետական առևտրական ֆիրմայի՝ «Ամտորգի» դիրեկտոր Բոևի կնոջն առաջարկեցին ծանոթանալ թանգարանին: Իսկ մենք գնացինք դիտելու մեխանիկական արտադրամասերը, որտեղ մեքենաների մասեր էին պատրաստվում: Իմ աչքին զարնեցին նեղվածությունը և արտադրամասերում հսկայական քանակությամբ հաստոցների կուտակումը, աներևակայելի նեղ անցարանները նրանց միջև: Հենց այդ պահին սկսվեց հետկեսօրյա երկրորդ նախաճաշի ժամանակը, բանվորները դադարեցրին աշխատանքը, հանեցին տնից բերած նախաճաշը և մի կերպ տեղավորվելով հաստոցների վրա կամ դուրս գալով բակը և պպզած կամ էլ կանգնած, մտասույզ ծամում էին: Դա ամենից ավելի ապշեցրեց ինձ, քանի որ սպասում էի, որ Ֆորդի գործարաններում օրինակելի ճաշարաններ կան: Իրականում այնտեղ գոյություն ունեցող սննդի կազմակերպումը մեզ մոտ կարելի էր հանդիպել միայն ամենահետամնաց ձեռնարկություններում: Ասենք, Ֆորդի ադմինիստրացիային բանվորների կյանքի այդ ասպեկտը ամենևին չէր հուզում, քանի որ այն ժամանակ նրանք ունեին ԱՄՆ-ում աշխատանքի ամենամեծ ինտենսիֆիկացիա և բարձր վարձատրություն, մի բան, որ այդպիսի պայմաններում էլ բանվորներին պահում էր նրանց մոտ: Ի դեպ, դրանից առաջ «Ջեներալ էլեկտրիկ» ֆիրմայի գործարանում մենք տեսել էինք ինքնասպասարկում ունեցող օրինակելի ճաշարան, որը երկու հերթափոխին ժամում բաց էր թողնում 1500 մարդ:

Ինձ հաճելիորեն զարմացրեց ճաշարաններում



և սրճարաններում կիրառվող ինքնասպասարկման մեթոդը, որը լայնորեն զարգացած էր, բայց մանրածախ առևտրի բնագավառում այն ժամանակ դեռ սաղմնային վիճակում էր: Ես մտածեցի՝ ահա մի ձև, որ մեզ, սովետական երկրին, անհրաժեշտ է ընդօրինակել առաջին հերթին և զարգացնել որպես բնակչության սպասարկման սոցիալիստական ձև:

Մենք չէինք հասցրել ավարտել արտադրամասի դիտումը, երբ հանկարծ ադմինիստրատորին հայտնեցին, որ Հենրի Ֆորդը շտապ եկել է կոնստրուկտորական բյուրո և ցանկանում է զրուցել ինձ հետ: Թեև այդպիսի հանդիպումը չէր մտնում իմ պլանների մեջ, այնուամենայնիվ ադմինիստրատորի ուղեկցությամբ գնացի նրա մոտ: Անցանք մարդաշատ դահլիճը, որտեղ գծագրական սեղաններ էին դրված, վերջապես, մտանք չափազանց համեստ կահավորված մի փոքրիկ առանձնասենյակ: Այստեղ ինձ ողջունեց նիհարակազմ, արտահայտիչ դեմքով մի համակրելի ծերունի: Հենրի Ֆորդը սեղմեց իմ ձեռքը և առաջարկեց նստել: Մենք անցանք գործին: Ֆորդը հարցրեց, թե որոնք են Ամերիկայում իմ ուղևորության նպատակները: Ես պատասխանեցի, որ ուզում եմ ուսումնասիրել Միացյալ Նահանգների նվաճումները սննդարդյունաբերության բնագավառում, առանձնապես գործի դրվածքը մսի կոմբինատում, պահածոների գործարաններում, պաղպաղակի, հյութերի արտադրությունը, ամեն տեսակի տարայի, փաթեթավորման նյութերի պատրաստումը և այլն: Ես շատ բան եմ դիտել, ասացի ես և գտել հետաքրքրական շատ բաներ, որոնք կարելի է ընդօրինակել: Մենք հասկանում ենք, որ տեխնիկական տեսակետից ամերիկացիներն առաջ են անցել մեզնից, ավելացրի ես, և սիրով կսովորենք, որպեսզի ավելի շուտ հասնենք ձեզ: Նա ինձ ասում է. «Իզուր եք դուք ուսումնասիրում մսի կոմբինատի շինարարության և մսի արդյունաբերության զարգացման հարցերը, միս ուտելը վնասակար է, պետք է սնվել բանջարեղենով, սոյայով և մրգերով, չէ որ սոյան մսից ավելի օգտակար է: Մենք ընտանիքում միս չենք ուտում, իսկ դրա փոխարեն գործածում ենք սոյա՝ իր տարբեր տեսակներով»:

Ես պատմեցի, որ մեր ժողովուրդը սովոր է միս ուտել, ասենք, ամերիկացիներն էլ բնավ բուսակերներ չեն: Հետևաբար, ոչ մի կերպ չի կարելի հրաժարվել մսամթերքների արտադրությունից: Ֆորդը չհամաձայնեց դրա հետ և սկսեց ապացուցել, թե սոյան օրգանիզմի համար առավել օգտակար սնունդ է: Ես պատասխանեցի, որ սոյան մեզանում քիչ է, որովհետև կլիմայական պայմանները թույլ չեն տալիս լայնորեն անցնել այն, թեև անձամբ ես համաձայն եմ, որ սոյան չափազանց օգտակար մթերք է: Մի քանի տարի առաջ ես ինքս էլ հրապուրվում էի սոյայից սննդամթերքներ արտադրելու գաղափարով:

Խոսակցության ընթացքում Ֆորդը խորհուրդ տվեց նաև անհատական բանջարանոցներ տրամադրել սովետական բանվորներին: Ազատ ժամանակ նրանք կմշակեն դրանք: Դա հանգիստ կլինի, ասաց նա, և, բացի դրանից, այդ բանջարանոցներից ստացված բերքը սննդի լրացուցիչ աղբյուր կդառնա:

Ես նկատեցի, որ լիովին համաձայն եմ նրա հետ և որ այդ սկզբունքը մեզանում լայնորեն տարածված է: Ես ինքս այդ հարցով շատ եմ զբաղվել, ավելացրի ես: Ֆորդը ասաց, որ իր մոտ այդ գործերը վարում է կինը, և առաջարկեց դիտել բանվորների բանջարանոցները: Ես համաձայնվեցի, մտածելով, որ կարող եմ որոշ օգտակար բաներ տեսնել նաև մեր երկրի համար:

Այնուհետև Ֆորդը խոսք բացեց ՍՍՀՄ-ում ավտոմոբիլի գործարան կառուցելու մասին:

Ես, ասաց նա, կհամաձայնեի տեխնիկական օգնություն ցույց տալ ձեր երկրին այդ գործարանի կառուցման գործում, բայց գտնում եմ, որ սկզբում այնուամենայնիվ հարկավոր է խճուղիներ կառուցել և հետո միայն ձեռնամուխ լինել ավտոմոբիլային գործարանի կառուցմանը: Դուք սկսել եք ոչ թե սկզբից, այլ վերջից...

Հարկավ, պատասխանեցի ես, այդ դատողության մեջ տրամաբանություն կա, բայց պետք է հիշել յուրաքանչյուր ժողովրդի սովորությունների մասին: Մինչև որ մեր մարդը մեքենա չունենա, որն սկսի ջարդվել ճանապարհազրկությունից, չի ցանկանա միջոցներ ներդնել ճանապարհաշինության մեջ: Բայց մենք, ասացի ես այնուհետև, բարձր ենք գնահատում ձեր համագործակցությունը մեզ հետ և ձեր օգնությունը Գորկիում ավտոգործարան կառուցելու գործում:

Ֆորդն արտահայտեց ինձ համար անսպասելի մի միտք: Նրա կարծիքով, ամենից ավելի ռացիոնալ կլինի գյուղական վայրերում կառուցել մանր գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնք մասնագիտանային առանձին մասերի արտադրության մեջ, հետո այդ մասերը որևէ տեղ հավաքել հավաքման գործարանում որպես ավարտուն արտադրանք: Նա ասաց, որ նման մի գործ սկսել է ԱՄՆ-ում և մտադիր է հետագայում լայնորեն զարգացնել այն:

Իսկ հապա Ֆորդի ավտոմոբիլային վիթխարի գործարաննե՞րը և ամերիկյան մնացած խոշոր ձեռնարկություննե՞րը,— մտածեցի ես, բայց հարկ չհամարեցի վիճել ծեր մարդու հետ: Ասացի միայն, որ բնության ծոցում մանր ձեռնարկություններ ստեղծելու միտքը նոր է և հետաքրքիր: Ֆորդն առաջարկեց ցույց տալ իր այդպիսի գործարաններից մի քանիսը: Ես համաձայնեցի դիտել դրանք:

Զրույցն ընթանում էր անբռնազբոսիկ տոնով, և ինձ դուր եկավ, որ ծեր կապիտալիստը խորհուրդներ է տալիս, թե ինչպես զարգացնել մեր սոցիալիստական տնտեսությունը:

Ֆորդն ասաց, որ այժմ արդեն հեռացել է գործարանի կառավարումից, զբաղվում է ավտոմոբիլների նախագծումով և փաստորեն գլխավորում է կոնստրուկտորական բյուրոն: Աշխատանքային օրը բյուրոյում արդեն վերջացել է, ավելացրեց նա, իսկ ինքը եկել է հատկապես հանդիպելու սովետական պետական գործչին:

Հրաժեշտ տալով Հենրի Ֆորդին, ես շարունակեցի դիտել գործարանը: Ավտոմոբիլների հավաքման արտադրամասը հաճելի տպավորություն թողեց ինձ վրա,— այն լուսավոր էր, ժամանակակից, բայց ապշեցրեց բանվորների աշխատանքի անհավատալի ինտենսիվությունը, թեև այդ մասին ես կարդացել էի դեռևս տանը:

Ադմինիստրատորն ինձ առաջարկեց դիտել պողպատահալման և գլանման արտադրամասերը, որոնք գտնվում էին գործարանի կողքին: Այդ ժամանակ մեր կանայք միացան մեզ, մենք մեքենա նստեցինք և մեզ համար անսպասելիորեն հայտնվեցինք երկրորդ հարկում գտնվող մարտենյան արտադրամասում: Այստեղ բանվորներ գրեթե չէին երևում, ամբողջ պրոցեսը մեքենայացված էր: Այն ժամանակներում այդպիսի բան ես մեր գործարաններում չէի տեսել: Թերթագլանման արտադրամասում մենք դուրս եկանք դիտահարթակը և դիտում էինք, թե ինչպես մի օպերատոր կառավարում է ամբողջ գլոցահաստոցի աշխատանքը:

Նույն օրը երեկոյան ես գնացի դիտելու Ֆորդի բանվորների բանջարանոցները: 50—60 հեկտար տարածությամբ դաշտը բաժանված էր հողակտորների: Դրանցից մի քանիսը վատ էին մշակված, մյուսները՝ լավ: Ես եկա այն համոզման, որ մեզ մոտ ավելի սիրով են մշակում հողը:

Հետևյալ օրը Ֆորդի խորհրդով գնացինք դիտելու նրա փոքր գործարաններից մեկը, որ գտնվում էր Դետրոյտից 30—40 կիլոմետրի վրա: Գնում էինք բարձունքների միջով անցնող անտառային ճանապարհով: Գեղատեսիլ ձորում գտնվում էր մի փոքրիկ հիդրոէլեկտրակայան և նրա կողքին՝ գործարանի երկհարկանի կորպուսը: Այնտեղ աշխատում էին մոտ 300 կանայք, ավտոմոբիլների համար պատրաստում էին ինչ-որ էլեկտրամասեր: Արտադրության նման ձևը կապիտալիստների համար ձեռնտու է նաև նրանով, որ բանվորներն ամրացված են այդպիսի գործարանին, քանի որ ապրում են նրա կողքին: Ընդամին նրանք մեկուսացած են մյուս աշխատավորներից, և գործադուլներ կազմակերպելը կամ այլ ձեռնարկություններ անցնելը նրանց համար գործնականորեն գրեթե անհնարին է:

Երբ ես 1959 թվականին նորից եղա Դետրոյտում, ինձ հրավիրեցին ճաշկերույթի, որտեղ ներկա էին նաև ամերիկյան մյուս ավտոմոբիլային ընկերությունների ղեկավարները, Հենրի Ֆորդ-կրտսերը: Ինչպես հայտնի է, վերջերս թոռը փորձեց կրկնել պապի խելացի փորձը՝ համագործակցել մեզ հետ Կամայի ափին ավտոմոբիլային գործարանի կառուցման բնագավառում, բայց նրան խանգարեց պաշտպանության մինիստր Լեյրդը:

## ԿՈՐԴԵԼ ՀԵԼԼԻ ՄՈՏ

ԱՄՆ-ում ես գրեթե ամեն օր այցելում էի սննդարդյունաբերության երկու-երեք ձեռնարկություն, լաբորատորիա կամ ինստիտուտ: Այդ այցելությունները, որպես կանոն, վերջանում էին ամերիկյան բիզնեսմենների հետ փոքրիկ, խիստ գործարար զրույցներով: Որովհետև մեր ծրագիրը զուտ գործարար էր, թեև այն մի որոշ չափով դուրս եկավ նաև քաղաքական: Տրոյանովսկին առաջարկեց, որ ես քաղաքավարության այցի գնամ պրեզիդենտ Ռուզվելտին, պետական քարտուղար Հելլին և մի քանի այլ քաղաքական գործիչների: Հայրենիք վերադառնալուց երկու օր առաջ, հոկտեմբերի 12-ին, ես Տրոյանովսկու պնդումով մեկնեցի Վաշինգտոն, որտեղ այցելեցի այն ժամանակվա պետական քարտուղար Կորդել Հելլին: Պրեզիդենտ Ռուզվելտն այդ ժամանակ Վաշինգտոնում չէր: Կորդել Հելլը (1871—1955) պետական քարտուղար էր 1933-ից մինչև 1944 թվականը, նա հաճախ արտահայտվում էր ՍՍՀՄ հետ համագործակցելու օգտին, մեծ նշանակություն տալով մեր երկրի ակտիվ մասնակցությանը միջազգային գործերին: Ճիշտ է, մեր զրույցը չպետք է կրեր երկու երկրների համար առանձնապես կարևոր բնույթ, այդ զրույցը, ավելի շուտ, կոչված էր ինչ-որ պրոցեդուրային դեր խաղալու: Ասենք թե՝ իրենց երկրների քաղաքական գծերի մշակմանը մասնակից երկու գործիչների անձնական ծանոթության դեր: Իսկույն կնշեմ, որ Հելլը,— ես այդ մասին այդպես էլ պատմեցի Մոսկվա վերադառնալուց հետո,— ինձ վրա նպաստավոր տպավորություն թողեց: Այդ տպավորությունը հաստատվեց պատերազմի տարիներին Հելլի ամբողջ գործունեությամբ: Ինձ հաճելի էր կրկին հանդիպել նրան, երբ նա 1943 թ. հոկտեմբերին եկավ Մոսկվա: Դրանք մեր երկրների առավել բարեկամական հարաբերությունների ժամանակներ էին:

Այսպես ուրեմն, մենք Ա. Տրոյանովսկու հետ մեկնեցինք Վաշինգտոն: Նա ինձ հետ եկավ Հելլի մոտ, ինձ ներկայացրեց նրան: Մենք Հելլի հետ սիրալիրություններ փոխանակեցինք: Նա մեզ դիմավորեց ջերմագին, հարց ու փորձ արեց,



թե ինչպես է անցել իմ ճամփորդությունը ԱՄՆ-ում, ինչպիսին են տպավորությունները:

Ես համառոտակի պատմեցի, որ տեսել եմ մեզ համար հետաքրքրական և օգտակար շատ բան, որ ԱՄՆ-ի նվաճումներից շատերն արժանի են, որպեսզի դրանք փոխադրենք սովետական արդյունաբերության մեջ: Ես ԱՄՆ-ի կյանքի թերություններ ու վատ կողմեր չէի փնտրում: Բայց ամբողջ տեսածս թույլ է տալիս կարծելու, որ ծանոթանալով ամերիկյան փորձին, մենք կարող ենք խուսափել որոշ թերություններից, որոնք, մեր կարծիքով, կան ամերիկյան սննդարդյունաբերության մեջ: Ես գոհունակություն հայտնեցի այն փաստի առթիվ, որ մենք հանդիպեցինք այն բոլոր մարդկանց բարյացակամ վերաբերմունքին, որոնց հետ առիթ ունեցանք գործ ունենալ ԱՄՆ-ում: Մեզ հատուկ ուշադրություն ցույց տվեցին մեր այցելած ձեռնարկությունների դիրեկտորները, ցույց տալով մեզ այն բոլորը, որ հետաքրքրում էր մեզ: Ես խոստովանեցի, որ չէի սպասում մեզ ցույց տրված այդպիսի բարյացակամ ու բարեկամական վերաբերմունք, այդպիսի ուշադրություն և պատրաստակամություն՝ ծանոթացնելու այն ամենի հետ, ինչ մեզ հետաքրքրում էր:

Ըստ երևույթին, Հելլին դուր եկան իմ անկեղծ խոսքերը: Շուտով նա խոսակցությունը շուռ տվեց քաղաքական թեմաների վրա: Իր մտքերը նա արտահայտում էր կարծես թե ոչ մի բանի չպարտավորեցնող խոսքերով, դրանց տալով ստեղծված միջազգային իրադրության առթիվ առաջացած անձնական երկյուղի և այնպիսի դիտողությունների ձև, որոնք կարծես թե չէին արտացոլում ԱՄՆ-ի կառավարության քաղաքականությունը և չունեին կոնկրետ քաղաքական առաջարկությունների բնույթ: Այսպիսով, Հելլի նախաձեռնությամբ մեր հանդիպումը, որ սկսվել էր որպես քաղաքավարության հասարակ այց, վերածվեց քաղաքական զրույցի:

Հելլն ասաց, որ վերջերս հանդիպել է Եվրոպայից եկած մի մարդու, որը ենթադրում է, թե Եվրոպայում նկատվող տնտեսական աշխուժացումը զգալի չափով խարսխված է ռազմական արդյունաբերության աճի և ընդհանրապես սպառազինության արտադրության վրա: Հարցրեց, արդյո՞ք ես այն կարծիքին եմ, որ այդ տնտեսական աշխուժացումը առողջ ու կայուն չէ: Ես պատասխանեցի, որ իհարկե տնտեսական աշխուժացման այդպիսի բազան չի կարող ո՛չ առողջ լինել, ոչ էլ կայուն: Դեռ ավելին, այն քաղաքական վտանգ և ողջ աշխարհին, պատերազմի սպառնալիք է բովանդակում:

Հելլը հայտարարեց, որ այժմյան միջազգային դրությունը անհանգստացնում է իրեն, քանի որ մի պետություն Եվրոպայի կենտրոնում, իսկ Խաղաղ օվկիանոսում մեկ ուրիշը ձգտում են տնտեսական ու քաղաքական տիրապետության հասնել աշխարհում: Երբ Սովետական Միությունը և ԱՄՆ-ը, ասաց նա այնուհետև, իզոլյացիոնիստական դիրք գրավեն, ապա դա կհասցնի այն բանին, որ հիշատակված պետությունների համաշխարհային տիրապետության ձգտումը հաջողությամբ կպսակվի և բացասական հետևանքներ կունենա մեր երկու երկրների համար: Այդ դրության վրա պետք է խորհել, ամփոփեց նա: Հելլը հարկ չհամարեց հիշատակել, որ խոսքը վերաբերում է հիտլերյան Գերմանիային և միլիտարիստական Ճապոնիային, բայց դա այնպես էլ հասկանալի էր:

Ես պատասխանեցի, որ երկու պետություններ, որոնց նա նկատի ունի, իրոք պատրաստվում են պատերազմի, ուժգին թափով արագացնելով սպառազինությունների մրցավազքը: Ընդ որում, նրանք չեն թաքցնում իրենց ագրեսիվ մտադրությունները, բայց, ցանկանալով հանգստացնել եվրոպական երկրներին, քողարկվում են այն հայտարարությամբ, թե իբր Եվրոպայում ագրեսիա է պատրաստվում միայն Սովետական Միության դեմ, իսկ Խաղաղ օվկիանոսում՝ Չինաստանի և Սովետական Միության դեմ: Մենք կողմնակից չենք մեկուսացման քաղաքականության միջազգային գործերում, այնուհետև ասացի ես: Մենք վաղուց ակտիվ պայքար ենք մղում միջազգային ասպարեզում, այդ թվում օգտագործելով նաև Ազգերի Լիգան հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի սպառնալիքի, հանուն ընդհանուր անվտանգության պայքարելու համար: Բայց Ազգերի Լիգան չի դարձել այնպիսի ուժ, որ կարողանար ազդել միջազգային իրադարձությունների ընթացքի վրա: Ի դեպ, ԱՄՆ-ը չի մասնակցում Ազգերի Լիգային, ընդգծեցի ես, և ինքն է վարում մեկուսացման քաղաքականություն: Երևի շատերն այստեղ կարծում են, որ վերահաս սպառնալիքը ԱՄՆ-ին չի շոշափի:

Այնուհետև ես ասացի Հելլին, թե լավ է, որ նա այդպես է տրամադրված, քանի որ նրա վարքագծում զգացվում է տագնապ և այն բանի ըմբռնումը, որ ԱՄՆ-ի իզոլյացիոնիստական դիրքի հետագա պահպանումը կարող է ողբալի հետևանքներ ունենալ: Մեր երկիրը աչք չի փակում երկու ագրեսիվ կառավարություններից բխող վերահաս ռազմական սպառնալիքի հանդեպ, բայց մենք, շարունակելով պայքարը ագրեսիայի դեմ միջազգային ասպարեզում, առայժմ հարկադրված ենք հույսներս դնել միայն սեփական ուժերի վրա, ամրապնդել մեր բանակը և պաշտպանության կարիքների համար ավելացնել սպառազինության արտադրությունը:

Հելլը չշարունակեց զարգացնել այդ թեման:

Նա հարցրեց ինձնից, թե արդյոք հող կա՞ մեր երկրների միջև տնտեսական հարաբերությունների զարգացման համար: Իհարկե, պատասխանեցի ես, այդպիսի հող կա և մենք պատրաստակամություն ենք ցույց տալիս ընդլայնելու առևտուրը ԱՄՆ-ի հետ և պատվերներ տալու ամերիկյան այնպիսի սարքավորման համար, որն առանձնապես հետաքրքրում է մեզ:

Այնուհետև ես շնորհակալություն հայտնեցի Հելլին իմ ուղևորության իրականացմանը կառավարության ցույց տված աջակցության համար և գոհունակություն հայտնեցի այդ ուղևորությանը պետդեպարտամենտի աստիճանավոր Վիլյարդի մասնակցության առթիվ:

Հելլը իր կողմից հարկ համարեց գովել մեր դեսպան Տրոյանովսկուն, շատ շոյիչ խոսքեր ասաց նրա մասին, հայտարարելով, որ Սովետական Միությունը Ամերիկայում ներկայացնում է խիստ արժանավոր և քաղաքավարի մի մարդ: Ես պատասխանեցի, որ մենք ինքներս էլ բարձր ենք գնահատում մեր դեսպանի գործունեությունն ու անձնավորությունը և գիտենք ում որտեղ ուղարկել: Հելլը գոհունակություն հայտնեց այն առթիվ, որ Սովետական Միության ղեկավարները ԱՄՆ են գալիս իր երկրի տնտեսության փորձն ուսումնասիրելու համար, հայտնելով այն կարծիքը, որ դա նպաստում է անձնական կապերի ամրապնդմանը և պետությունների հարաբերությունների բարելավմանը: Ես ասացի, որ մենք ուրախ կլինենք, եթե ԱՄՆ-ի աչքի ընկնող պաշտոնական անձինք գային Սովետական Միություն: Մենք կաշխատեինք պատասխանել ամերիկյան հյուրասիրությանը:

Հելլը կատակելով ասաց, որ ինքը պատրաստ է ԱՄՆ-ից ուղարկել երկուսին Սովետական Միությունից եկած մեկի փոխարեն:

Հրաժեշտ տալով միմյանց, գոհ ծանոթությունից ու զրույցից, մենք բաժանվեցինք: Այնուհետև դեսպան Տրոյանովսկին ինձ ծանոթացրեց պետդեպարտամենտի աշխատակիցներ Մուրի և Քելլի հետ: Ինձ թվաց, որ այս վերջին, արձանագրական հանդիպումները Տրոյանովսկին կազմակերպել է՝ ելնելով պետդեպարտամենտի հետ սովետական դեսպանության գործարար կապերի շահերից:

## ՄԻ ՔԱՆԻ ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Նյու-Յորք ժամանելուց հետո մեզ ողջունեց ռուս-ամերիկյան առևտրական պալատի պատվիրակությունը՝ բաղկացած ամերիկյան հարյուրավոր խոշորագույն ֆիրմաների ներկայացուցիչներից: Պատվիրակության անունից հանդես եկան գնդապետ Հյու Կուպերը և տրեստներից մեկի փոխ-պրեզիդենտ Հորաս Ցլենիզենը: Գնդապետ Կուպերը լավ գիտեր մեր երկիրը, քանի որ խորհուրդներ էր տվել Դնեպրոգէսի շինարարության աշխատանքների վերաբերյալ: Մեր կառավարությունը բարձր գնահատեց նրա աշխատանքը. նա ստացավ սովետական շքանշան: Հյու Կուպերը, մասնավորապես, ասաց (մեջբերում եմ կատարում ըստ 1936 թվականի օգոստոսի 18-ի «Նյու-Յորք ջորնել օֆ կոմմերս» թերթի կտրածոյի).

«Մեզ համար մեծ պատիվ է, ժողկոմ Միկոյան, ողջունել ձեզ մեր հողի վրա: Մենք ողջունում ենք ձեզ որպես մեծ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ներկայացուցչի: Ի դեմս ձեզ մենք ողջունում ենք նաև մի մարդու, որը խոշոր հաջողությունների է հասել 170 միլիոնանոց ժողովրդի համար առևտրի կազմակերպման բնագավառում, լինելով սկզբում ներքին ու արտաքին առևտրի ժողկոմ, իսկ հիմա՝ սննդարդյունաբերության ժողկոմ: Դուք շատ բանով եք նպաստել Միացյալ Նահանգների և Սովետական Միության միջև առևտրական հարաբերությունների զարգացման գործին, և մենք ուրախ ենք, որ դուք այցի եք եկել մեր երկիրը: Մենք ուրախ ենք, որ դուք հնարավորություն կունենաք անձամբ դիտելու մեր սարքավորումը գործողության մեջ: Ես հավատում եմ, որ ձեր միսիան, որի նպատակն է ուսումնասիրել մեր սննդարդյունաբերությունը, դուք հաջողությամբ կկատարեք: Մենք իրավունք ունենք հպարտանալու մեր ինդուստրիայի այդ ճյուղով: Մենք հուսով ենք, որ դուք գոհ կմնաք մեր երկրին այցելելուց, որ դա կտանի դեպի բարեկամական հարաբերությունների զարգացումը մեր ժողովուրդների միջև, դեպի առևտրի աճը նրանց միջև: Որովհետև ոչ մի բան չի կարող ավելի լավ նպաստել խաղաղության գործին, քան բարեկամական առևտրական փոխհարաբերությունները ժողովուրդների միջև»:

Հիշում եմ մեր այցելությունը Նյու-Յորքի բորսա: Բորսայի դիրեկտորը մեզ դիմավորեց հանդիսավոր կերպով, մեր գալուց առաջ հրամայել էր ԱՄՆ-ի ազգային դրոշակի կողքին կախել մուրճ ու մանգաղ կրող սովետական կարմիր դրոշակը: Մենք անցանք դիտասրահը, որտեղից երևում էր հսկայական դահլիճը՝ պատերին կախված ցուցատախտակներով, որոնք ցույց էին տալիս բաժնետոմսերի փոփոխվող կուրսը: Դահլիճում տիրում էր աներևակայելի իրարանցում, հրհրոց, իսկ և իսկ 20-ական թվականների Սուխարևկայի շուկայի ժխորը: Իր ժամանակին ես, իհարկե, քիչ չեմ կարդացել բորսայի մասին, բայց երբեք չէի կարող պատկերացնել, որ այնտեղ առաջին հայացքից այդպիսի խառնաշփոթություն է տիրում: Դիրեկտորը մեծ պատրաստակամությամբ պատասխանում էր բորսայի աշխատանքի պրակտիկայի վերաբերյալ մեր հարցերին, մանրամասն տեղեկացնում գործերի մասին:



Բորսա կատարած մեր այցելության վերաբերյալ հաղորդումը իսկույն հրապարակվեց ամերիկյան մամուլում: Այն, որ շենքի վրա կարմիր դրոշակ էր կախվել, մի ամբողջ իրարանցում առաջ բերեց: Քաղվածքներ կբերեմ «Նյու-Յորք թայմս» և «Ուոլլ-ստրիտ ջորնել» թերթերից: «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ մուրճ և մանգաղ կրող դրոշակը առաջին անգամ բարձրացվեց Նյու-Յորքի բորսայի շենքի վրա, երբ բորսա եկան ԱՄՆ-ում սովետական դեսպան Տրոյանովսկին և սննդարդյունաբերության ժողկոմ Միկոյանը: Բորսան սովորություն ունի մեծարել օտարերկրյա կառավարությունների բարձր պաշտոնատար անձերին, նրանց երկրների դրոշակները բարձրացնելով առևտրի դահլիճի հյուսիս-արևելյան պատի վրա...»:

«Իր պատմության մեջ առաջին անգամ Նյու-Յորքի բորսան իր շենքի վրա բարձրացրեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ մուրճ և մանգաղ կրող կարմիր դրոշակը: Դրա պատճառը ռուսական դեսպան Ա. Տրոյանովսկու և մեր երկրում գտնվող ժողովրդական կոմիսարի անակընկալ այցն էր... Բորսայի կլիենտները, որոնց տեղեկացրել էին այդ այցի մասին, խիստ զարմացան, երբ շենքի վրա բարձրացվեց ռուսական դրոշակը...»:

Չիկագոյից Նյու-Յորք մեկնելիս ճանապարհին մենք պետք է մնեինք Բուֆֆալո, որտեղ գտնվում էին կոնֆլեքսի գործարանը և ամերիկյան այլ ժամանակակից խոշոր ձեռնարկություններ: Դեսպանության աշխատողներից ինչ-որ մեկը (Տրոյանովսկին մեզ հետ չէր) առաջարկեց Բուֆֆալո անցնել Կանադայով՝ ժամանակը խնայելու համար: Ես սկզբում հրաժարվեցի, պատճառաբանելով, որ Կանադան ուրիշ պետություն է և պետք է վիզա ստանալ, մի բան, որ կարող է ձգձգել մեր ուղևորությունը: Ինձ շարունակում էին համոզել, բայց ես այնուամենայնիվ չէի համաձայնում: Այն ժամանակ խոսակցությանը հարեց դեպարտամենտի աշխատակից Վիլյարդը, որ ուղեկցում էր մեզ: Նա ասաց, որ պետդեպարտամենտի ներկայացուցչի ուղեկցությամբ Կանադայով անցնելու համար վիզաներ չեն պահանջվում: Մինչ այս մինչ այն, պարզվեց, որ մեր անձնագրերը և մնացած բոլոր փաստաթղթերը մնացել են Նյու-Յորքի սովետական հյուպատոսությունում: Դուրս է գալիս, որ մենք Ամերիկայում ճամփորդում ենք առանց փաստաթղթերի: Դա ինձ զայրացրեց, որովհետև գտնում էի, որ դա կարող է առիթ տալ ամեն մի ոստիկանի ժամանակավորապես կանգնեցնելու մեզ մինչև մեր անձը պարզելը, մանավանդ, որ մենք օտարերկրացիներ էինք, իսկ մամուլը կարող էր աղմկալի ռեկլամի առարկա դարձնել այդ ամբողջ պատմությունը: Բայց ընկերներն ասացին, որ Ամերիկայում անձնագրեր պետք չեն երկրում ուղևորություն կատարելու համար: Իսկ ես առարկում էի, որ հարկավոր չեն ամերիկացիների համար, իսկ օտարերկրացիներից կարող են փաստաթղթեր պահանջել: Իսկ անանձնագիր Կանադայով գնալը առավել ևս անմտություն է:

Հենց այստեղ էլ Վիլյարդը նորից մոտեցավ ինձ և ասաց, որ երաշխավորում է Կանադայով Բուֆֆալո անցնելը առանց որևէ դժվարությունների: Իր լրջությամբ նա այնքան էր շահել մեր վստահությունը, որ ես հավատացի նրան և համաձայնեցի: Դրանում ես տեսա ոչ միայն Կանադայի ու ԱՄՆ-ի «առանձնահատուկ» հարաբերությունների ևս մի ապացույց, այլև այն, թե ինչ լիազորություններով է օժտված պ-րն Վիլյարդը՝ պետդեպարտամենտի հետախույզը:

Երբ մենք անցանք կանադական սահմանը, վագոն մտան ոստիկաններն ու մաքսատան աստիճանավորները և ուղևորներից խնդրեցին ներկայացնել իրենց փաստաթղթերը: Վիլյարդը նրանց ցույց տվեց իր մանդատը, ինչ-որ բանի մասին խոսեց նրանց հետ և նրանք անցան մեր կողքով, կարծես թե ընդհանրապես չտեսնելով մեզ: Նույնն էլ կրկնվեց կանադական սահմանի մյուս կողմում, երբ մենք իջանք գնացքից և նստեցինք Բուֆֆալո մեկնող ավտոբուսը: Սահմանում ավտոբուսը կանգ առավ, մտան աստիճանավորները, Վիլյարդը նորից ներկայացրեց իր փաստաթուղթը, ինչ-որ բան ասաց, և աստիճանավորները նորից անցան մեր կողքով, իբր թե չնկատելով մեզ:

Այսպիսին են 1936 թվականի մեր ամերիկյան ուղևորության, եթե կարելի է այսպես արտահայտվել, սեղմ ուրվանկարները: Եթե նկատի ունենանք նրա նպատակը, այն է՝ նպաստել ՍՍՀՄ-ում սննդարդյունաբերության էտալոնային ձեռնարկությունների ստեղծմանը, որոնց կարողանային հավասարվել մնացածները, ինչպես նաև յուրացնել դրանց շինարարության սկզբունքները, ապա այդ ուղևորության ժամկետը այնուամենայնիվ սեղմ էր: Եվ հազիվ թե երկու ամսում կարելի լիներ ավելի շատ բան անել, քան այդ հաջողվեց մեր խմբին: Բայց մեզնից յուրաքանչյուրը հետագայում, իսկ երբեմն էլ նույնիսկ այժմ— երեսունհի՞նգ տարի անց— հարազատ երկրի կյանքում գտնում է այն աշխատանքի ինչ-որ նշաններ, արձագանքներ, հետքեր, որ մենք կատարեցինք Միացյալ Նահանգներ գործուղվելու հետևանքով: Եվ մեզնից յուրաքանչյուրի համար այդ ուղևորությունը դարձավ կարևոր տնտեսագիտական դասընթացների նման մի բան: Իսկ ՍՍՀՄ և ԱՄՆ-ի նախապատերազմյան տնտեսական հարաբերությունների համար, իմ կարծիքով, այն մի հայտնի չափով ցուցադրական էր:

# ԷՋԵՐ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

**Ռ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

## ՍՏԵՓԱՆՈՍ ՆԱԶԱՐՅԱՆՑԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ

*XIX դարի 50—60-ական թվականներին հայ ժողովուրդն ապրում էր ուրույն սոցիալ-քաղաքական իրավիճակ։ Նրա բուրժուական զարթոնքն սկսվել էր օտար տերությունների քաղաքական հովանու ներքո, որը յուրովի բեկվեց հայության քաղաքական գիտակցության մեջ։ Այդ պրոցեսի քննական վերլուծությանը նվիրաբերեց իր ստեղծագործական եռանդը Ստեփանոս Նազարյանցը։*

*Հայ մեծ լուսավորիչը, որ քաջատեղյակ էր ժամանակի իրադարձություններին, ելնելով գոյություն ունեցող իրավիճակից, աշխարհում սփռված և միմյանցից տնտեսապես, քաղաքականապես, հոգեպես անջատված իր ժողովրդին կոչ էր անում խելամտության և քաղաքական համակեցության։*

*Զգաստ գնահատելով հարազատ ժողովրդի գոյության իրական պայմանները՝ նա լի էր հավատով ապագայի հանդեպ։ Միաժամանակ նա գրում էր, թե քաղաքական իշխանության բացակայությունն այլասերող ազդեցություն ունի ժողովրդի կյանքի գրեթե բոլոր կողմերի վրա։ Նազարյանցն իրավացիորեն նշում էր, որ ժողովրդի քաղաքական ինքնորոշումը նպաստում է ազգային լեզվի պահպանմանն ու զարգացմանը, ազգային մտածողության ձևավորմանը։*

*Նազարյանցը Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին համարում էր ո՛չ միայն հայերի ազատագրումը արևելյան բռնակալությունների դարավոր ստրկության լծից, այլև եվրոպական լուսավորությանը հաղորդակցվելու միջոց։ Արտահայտելով իր ժողովրդի անդավաճան հավատարմությունը «բարեմիտ Ռուսաստանին»՝ նա նշում էր, թե հայերն այստեղ «վայելում են քաղաքացու իրավունք» և օրենքի պաշտպանության ներքո նրանք տեր են իրենց անձին, ընտանիքին ու վաստակին, և նրանց տրվում է «նույնքան իրավունք, որքան յուր ազգին, ամենևին անխտիր, իբրև միևնույն թագավորության որդիների» (Ս. Նազարյանց, Երկեր, Թիֆլիս, 1913, էջ 270)։*

*70-ական թվականներին, երբ բալկանյան ժողովուրդները պայքարի գնով ազատագրվեցին Թուրքական լծից, Նազարյանցը շատ լավ էր հասկանում, որ այս ազատությունն առաջին հերթին հենց բալկանյան ժողովուրդների մղած պայքարի անխուսափելի արդյունքն էր և ոչ թե եվրոպական տերությունների՝ նրանց նկատմամբ ունեցած բարեհաճ վերաբերմունքի, որովհետև վերջիններս կանգնեցին այդ ժողովրդի թիկունքին ոչ թե նրանց նկատմամբ հատուկ համակրանքից դրդված, այլ՝ սեփական «հաշիվների» համար։ «Պոլիտիկայի մեջ*



*չկա բարոյականություն,— նշում էր Նազարյանցը,— այլ ամեն բան հաշիվի համար է այդտեղ» (Ստ. Նազարյանց, Նամականի, Երևան, 1969, էջ 471)[1]։ Էլ ինչո՞վ բացատրել, որ նույն Անգլիան, որ հիմա օգնության ձեռք է մեկնել բալկանյան ժողովուրդներին, իր քաղաքագետների՝ Գլադստոնների, Ջոն Ռոսսելների բերանով մի կողմից բարձրացնում էր տաճիկներին Եվրոպայից քշելու արդեն բավական մաշված և աղմուկ հանած հարցը, մյուս կողմից՝ հենց ինքն էր երեք հարյուր տարի շարունակ պահպանում և ամրացնում «տաճիկների իշխանությունը կամ անիշխանությունը* (Anarchia) *եվրոպական հողի վերա և քրիստոնյա ազգերի գլխին»։ Պարզ չէ՞, որ եվրոպական և ոչ մի տերության բարոյական կամ որևէ այլ աջակցության վրա հույսեր չի կարելի կառուցել, որ ամեն ժողովուրդ պիտի ունենա այնպիսի բարոյական կորով ու խիզախություն, որ անձամբ լուծի իր դեմ ծառացած բախտորոշ ազգային անկախության խնդիրը։ Նազարյանցը, ըստ էության, ազգային-ազատագրական անզիջում պայքարի կոչ էր անում հայերին, երբ նախատում էր նրանց նմանօրինակ բարոյական արժանիքներ չունենալու համար։ «...Հայք,— գրում էր նա,— դարավոր ժամանակներով ստրկացած, անասելի և անլսելի հալածանք տանելով և համբերելով, ասես թե բթացած են. կորուսանելով ամենայն մարդկային իրավունքի և արժանավորության զգացողություն, անմիաբան յուրյանց մեջ և հասարակաց թշնամու և հալածողի առաջին, երբեք կարողացած չեն միաբան զորությամբ վեր կենալ, ապստամբվել յուրյանց բռնակալներից, սուր առնուլ և պաշտպանել կամ պահանջել իրավունք։ Ոչ այսպես սլավոնական քրիստոնյայք Տաճկաստանի մեջ. սրքա սուրը ձեռքին, մահը աչքի տակ առած պատերազմում են իբրև ապստամբներ յուրյանց բռնակալների ընդդեմ. թափում են յուրյանց արյունը, յուրյանց ազգի ազատության համար։ Այս պատճառով և Եվրոպան հարգությամբ նայում է դոցա վերա և դոցա ցավերը և վշտերը գտանում են նոցա ուշադրությունը» (Նույն տեղը, էջ 470)։ Այնինչ հայերը, ի վիճակի չլինելով ցույց տալ, որ «կարող էին սրով և արյունով և երկաթով ապացուցանել յուրյանց կամքը ազատ լինելու» (Նույն տեղը), արժանանում են եվրոպական տերությունների միանգամայն հասկանալի և արժանի արհամարհանքին։ Նազարյանցը ցավով էր գրում, որ հայերն իրենց ողջ պատմությամբ ապացուցել են, թե ավելի լավ վերաբերմունքի արժանի չեն։ «Այս մասին հոգ է տարել արդեն համաշխարհային պատմության երկաթյա տրամաբանությունը, համաշխարհային անողոք դատաստանը, որը ամեն մի*

---

*[1] Ի դեպ, չենք կարող մեր սրտի պարտքը չհատուցել Ռուզան Նանումյանին, որի բազմամյա և անպատմելի ժրաջանության արդյունքն է Ստեփանոս Նազարյանցի ծավալուն Նամականին, մի գործ, որի կարիքը միշտ զգացել և որին սպասել է մեր մտավորականությունը։ Վերջապես, հրապարակի վրա է դրվել հայ պարբերական մամուլում ցրված, զանազան քաղաքների (Մոսկվա, Լենինգրադ, Երևան, Կազան, Տարտու, Թբիլիսի) պետական ու պատմական արխիվներում գտնվող և մոռացության մատնված այն նամակների մի զգալի մասը, որոնց շնորհիվ վերստին մեր առջև հառնում է անցյալ դարի վաթսունական թվականների նշանավոր գործիչը, «Հյուսիսափայլ»-ի խմբագիրը, աշխարհաբարի պաշտպանն ու ջատագովը, առաջիններից մեկը, որ ձեռնոց նետեց կրոնական գաղափարախոսությանը, հայ ազգային-ազատագրական պայքարի գովերգուն ու մարտիկը, երևելի լուսավորիչն ու փիլիսոփան։*

*Ռ. Նանումյանի կազմած Նամականին աննախադեպ երևույթ է այս մեծ մարդու հոգևոր ժառանգության վերականգնման առումով և լուրջ ներդրում ինչպես նազարյանագիտության, այնպես էլ XIX դարի հայ հասարակական մտքի վերագնահատման արդի արգասաբեր գիտական փորձերի համար։ Այն արժեքավոր է ո՛չ միայն նամակների ընտրությամբ ու դասավորությամբ, որտեղ կազմողի ցուցաբերած չափի զգացումն ու բարձր ճաշակը հնարավորություն են ընձեռել հետևելու անխոնջ լուսավորչի ստեղծագործական կյանքին ու գաղափարական էվոլյուցիային, այլև՝ մեծ մասամբ հարուստ և համոզիչ ծանոթագրություններով, որոնք բազմակողմանի պրպտումների, տքնաջան աշխատանքի արդյունք են։ Ցավելով ցավում ենք (ինչպես կասեր Նազարյանցը), որ ո՛չ տողերիս հեղինակը, ոչ էլ մեկ ուրիշը (բացառությամբ Մ. Մխիթարյանի, որին իր էջերը տրամադրեց «Սովետական Հայաստան»-ը) ժամանակին չենք անդրադարձել Նանումյանի այս ծանրակշիռ ու մեծարժեք նախաձեռնությանը, բայց հուսով ենք, որ մեր հասարակական միտքն իր բարի խոսքը դեռ կասի նրա մասին։*

ժողովրդի բաժին է հանում այն, ինչ որ նրան ընկնում է ըստ արդարության, այսինքն՝ ինչին որ նա արժանի է իբրև վարձատրություն, կամ պատիժ՝ իր անցյալի համար» (Նույն տեղը, էջ 491)։

Ժողովրդի ազգային առաջադիմության մեջ քաղաքական իշխանության, քաղաքական կյանքի բարոյական նշանակության, ազգային անկախության և նրա համար անհրաժեշտ ազատագրական շարժման հարցերի շուրջն արված՝ Նազարյանցի այս մտորումներն ու խորհրդածությունները վկայում են, որ նա, իրոք, Մ. Նալբանդյանի հետ միասին բավականին նախանձախնդիր մոտեցում է ունեցել արևմտահայոց ազգային վիճակի նկատմամբ։ Իր այս մտորումնե-րով հայ լուսավորիչը, անկախ նրանից, հիմնավորո՞ւմ էր, արդյոք, հայերի ազգային քաղաքական ինքնուրույնության և նրա համար անհրաժեշտ ազա-տագրական կռիվների գաղափարը, թե՞ հուսահատորեն ապավինում էր իր ժողովրդի «քաղաքականապես ռուս» լինելու՝ հայկական կյանքում նույնպես արմատացած գաղափարին, հարկավ արտահայտում էր ժողովրդական տրա-մադրությունները։ Իհարկե, ազգային անկախության կապակցությամբ Նա-զարյանցի ունեցած մտահոգությունները առաջին հերթին հայկական կյանքին տոն տվող առևտրական բուրժուազիայի քաղաքական կերպարանքի և վար-քագծի արգասիքն էին, սակայն խոսում էին նաև մյուս, հասարակության ստորին սանդուղքներին կանգնած խավերի սրտից ու հոգուց և, այդ իմաս-տով, օբյեկտիվորեն կրում էին բուրժուա-դեմոկրատական բնույթ։

Նազարյանցի քաղաքական հայացքներում առկա այս դեմոկրատական տրամադրությունները բնավ էլ չեն ստվերվում նրանով, որ նա քաղաքական իշխանության բոլոր ձևերի մեջ գերադասում էր միապետությունը։

Գրեթե բոլոր երկրներում, որոնք ունեցել են լուսավորության դարաշըր-ջան, առաջավոր մտայնությունը, ինչքան էլ ընդդիմադիր դիրք գրաված լիներ գոյություն ունեցող ազնվականական քաղաքական և իրավական սիստեմի, բացարձակ միապետության, նկատմամբ, անգամ երևակայությամբ չէր կարող հորինել քաղաքական իշխանության մի այլ ձևի գաղափար, որն արմատապես տարբերվեր միապետությունից։ Դրանում էլ պետք է տեսնել պատճառն այն բանի, թե ինչու գրեթե բոլոր՝ և՛ արևմտաեվրոպական երկրների, և՛ Ռուսաս-տանի, լուսավորիչները, մերժելով բացարձակ միապետությունը, չեն մերժել միապետությունն առհասարակ, բայց ի տարբերություն իրենց համար ատելի ֆեոդալական միապետության, առաջադրել են նոր տիպի՝ լուսավորված միապետության գաղափարը։ Ե՛վ Լոքն ու Շեֆտսբերին, և՛ Վոլտերը, Մոնտես-քյոն, Ռուսոն ու Դիդրոն, և՛ Հերդերն ու Լեսինգը, և՛ Լոմոնոսովն ու Տատիշչևը, բոլորն էլ եղել են լուսավորված միապետության ջատագովներ։

Բնականաբար, մի կողմից՝ ապրելով մի ժամանակաշրջանում, երբ գրեթե ոչ մի երկրում (բացառությամբ, թերևս, ԱՄՆ-ից և Շվեյցարիայից) գոյություն չուներ այլ ձևի քաղաքական իշխանություն, քան միապետությունն էր, որ առաջավոր արևմտաեվրոպական երկրներում հանդես էր գալիս բուրժուական սահմանադրական միապետության, իսկ մյուս երկրներում՝ տակավին ֆեոդա-լական միապետության ձևերով, մյուս կողմից, յուրացրած լինելով անցյալ դարի արևմտաեվրոպական առաջադիմական սոցիոլոգիական մտքի նվաճում-ները, մեր հայ լուսավորիչը ևս չէր կարող առաջադրել քաղաքական իշխանու-թյան ավելի բարձր իդեալ։ Մանավանդ, որ նա համոզված չէր, որ քաղաքա-կան իշխանության բոլոր ձևերն էլ անթերի չեն և այն գիտակցությունը, թե «այն քաղաքը Տիբեր գետի վերա ուներ բոլոր գեղեցկությունքը և սարսափելի տգեղությունքը միապետության, ազնվապետության և ժողովրդապետության» («Հյուսիսափայլ», 1859, էջ 6), Նազարյանցին հիմք էր տալիս մտածելու, որ ազգային առաջադիմության հարցում կարևորը պետության ձևը չէ, այլ նրա այնպիսի զորությունը, որն ընդունակ է կենտրոնացնելու ազգային ուժերը։

Հայ լուսավորչի միապետական համակրություններին բավականին սնունդ էին տալիս նաև այլ հանգամանքներ. երախտագիտությունը ռուսական կառա-վարության հանդեպ՝ իր «հայրենիքը» ստրկության լծից ազատագրելու հա-մար, փոքր ազգությունների, մասնավորապես՝ հայերի, նկատմամբ ռուսա-



կան կառավարության իբր բարեհաճ վերաբերմունքի վերաբերյալ ստեղծված այն ընդհանուր պատրանքը, որը տակավին հեռու էր ռուսական ազգային քա-ղաքականությունը որպես դարաշրջանի պատմական զարգացման հրամայա-կան պահանջի արտահայտություն ըմբռնելուց, և, վերջապես, այն, որ հասա-րակական միտքը թունավորելու նպատակով Ռուսաստանում տասնամյակներ շարունակ, սիստեմատիկաբար, երկրում տնտեսական, քաղաքական, վարչա-կան բնույթի անհարթությունների և անկարգությունների գոյության մեղքը նախորդ իշխողներին վերագրելու գիծն էին վարում, չնայած այդ իշխողները եղել են ոչ միայն նույն կալվածատիրության շահերի պաշտպանը, այլև նույն թագավորական տան շառավիղները։

Սակայն, Նազարյանցի միապետական համակրությունները, անգամ Ալեքսանդր Երկրորդի հասցեին արված շռայլ գովեստները պետք է տարբերել ցարիզմի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքից։ Չպետք է մոռանալ, որ հայ լուսավորչի համար իդեալական միապետական կարգը բնավ էլ չէր նույ-նանում ցարական միապետության հետ, իսկ Ալեքսանդր Երկրորդը նրա պատ-կերացումներում հենց «լուսավոր միապետի» այն տիպարն էր, որին նա հա-կադրում էր ոչ միայն մյուս ցարերին, այլև ցարիզմին՝ առհասարակ։

Դա երևում է ռուսական տերության և նրա ազգային քաղաքականության, գրաքննության մասին Նազարյանցի ունեցած մի շարք հայացքներից։

Հարկավ, իր հրապարակային հոդվածներում և պաշտոնական գրություն-ներում նա հարկադրաբար պիտի գովասանքով խոսեր հիշյալ հարցերում ռու-սական տերության քաղաքականության մասին՝ դժվարությամբ ձեռք բերված իր ամսագիրը վտանգի չենթարկելու կամ նման մի ամսագիր հրատարակելու իրավունք ստանալու նպատակով։ Այսպես, 1856 թվականին լուսավորության մինիստր Ա. Ս. Նորովին ուղղված իր խնդրագրում, հիմնավորելով Ռուսաս-տանում հայկական ամսագրի հրատարակության պետական նշանակությունը, Նազարյանցը ավելացնում էր. «Բացի այն բազմազան օգուտից, որ սպասվում է այսպիսի գրական օրգանից, նրա հիմնումը լիովին համապատասխանում է Ռուսաստանի փառքին և ապացույց կծառայի այն բանին, թե հայերը Ռուսաս-տանի գայիսոնի տակ, Եվրոպական Թյուրքիայից իրենց կրթված ազգակից-ների առաջ հիմնավոր պատճառ ունեն հպարտանալու մի Քրիստոնեական Տե-րության, որը մեծահոգորեն բարենպաստում է ամեն մի հասարակական լու-սավորության» (Նույն տեղը, էջ 176)։ Մի այլ ցարական պաշտոնյայի հղած իր այն խնդրագրում, որով նա ցանկանում էր ճանապարհ բացել «Լապտեր Հայաստան»-ի տպագրությանը, հայ լուսավորիչը հայտնում էր, թե, երջան-կություն ունենալով քաղաքականապես կապված լինել Եվրոպայի ամենալու-սավոր պետություններից մեկի հետ, հայերը, այնուամենայնիվ, հեռու են մնում այն պատամական կյանքից, որին այնպես փութաջանորեն մերձենում են ռուսական մտքի ուժերը։ Եվ ահա Ռուսաստանի հետ հայերի հոգևոր-բա-րոյական մերձեցման, ինչպես և գահի ու հայրենիքի նկատմամբ նրանց մեջ սիրո և նվիրվածության ամուր կապեր ստեղծելու նպատակով անհրաժեշտ է դառնում գրական օրգանի հրատարակությունը (տե՛ս նույն տեղը, էջ 32)։ Այս ոգով էր նա արտահայտվում նաև հրապարակային մի շարք հոդվածներում. ուրախություն էր հայտնում, որ նախախնամությունը հայերին կապել է «եվ-րոպական, լուսավորություն ընդունող տերության հետ», որը նրանց տվել է իր «բոլոր իմացական զորությունքը» ազատորեն զարգացնելու, եվրոպական լուսավորության հետ առնչվելու լայն հնարավորություններ (տե՛ս Ս. Նազար-յանց, Երկեր, էջ 92—93 և հետո) և այլն։

Այսպես էր գրում Նազարյանցը պաշտոնական գրություններում և գրա-քննության կողմից թույլատրվող սահմաններում։

Բայց իր մտերիմներին և գաղափարական համախոհներին հասցեագրած նամակներում նա կարծես խոսում էր ինքն իր հետ և ավելի անկեղծ էր։ Այստեղ է, որ նա հանդես է գալիս ցարիզմի, նրա ազգային քաղաքականության լուրջ մերկացումներով։

Այսպես, տակավին 1846 թվականին, Խ. Աբովյանին նա գրում էր. «Ուե-

րել ռուսաց զցանք հայրենի ղամենայն տեղիս՝ ուր ոտ կալնուն դոքա՝ չէր նոր ինչ. այդ լինի և Թշուառն Պողոնիա. այդ է ճարտարութիւն քաղաքականութեան որ առ ի հաստատել զիւր յաշխարհս հպատակեցուցեալս հիմն ի վեր տապալէ զլեզու և զդպրութիւն նորոյն հպատակաց» (Ստեփանոս Նազարյանց, Նամականի, էջ 95)։ Նկատելով, որ լեզվի կործանումը բերում է նաև ազգի, նրա ոգու ու բարքի ոչնչացում և դրա համար էլ բոլոր նվաճողները, հնում, օրինակ՝ հռոմայեցիները, իսկ նորերում՝ Նապոլեոն Բոնապարտը, հպատակեցված ազգերի ինքնուրույնությունը վերացնելու համար, առաջին հերթին, փորձել են ձեռք բարձրացնել ազգային լեզվի վրա, Նազարյանցն իրավամբ հետևեցնում էր, որ Արևմուտքի ուսումից ու լուսավորությունից անջատված հայերի ազգային ինքնությունը «ընկճել և ի չիք դարձուցանել»-ը այնքան էլ դժվար բան չէ։ «...Եվ Նախարարին ազգային լուսաւորութեան չիք ինչ փոյթ երբէք զհայութենէ հայոց միայն թէ ամենայն ինչ ռուսացի և ամենայն ուրեք թագաւորեսցէն ձայնք և հնչմունք ռուսաց բարբառոյ» (Նույն տեղը)։ Նազարյանցին շարունակ ղեկավարում էր այն համոզմունքը, որ ռուսական պաշտոնական շրջանները հատկապես դեմ են հայ աշխարհաբարի զարգացմանը, որովհետև նրանում տեսնում են ժողովրդի ինքնագիտակցության արթնացման հզոր խթաններից մեկը։ Այդ մասին նա զուսպ տոնով էր արտահայտվում Ռուսաստանի տպագրության գործերի կառավարչին հղած իր բողոքագրում, գտնելով, որ ռուսական կառավարության գործելակերպի հիմքում ընկած մարդասիրական սկզբունքների հետ չի համատեղվում նրա ցանկությունը ոչնչացնելու հայ ժողովրդի ազգային գոյությունը պայմանավորող մայրենի լեզուն (տե՛ս նույն տեղը, էջ 332)։ Բայց նույն մտքերը նա ցասկոտ խոսքերով էր արտահայտում Փ. Վարդանյանին գրած նամակում, ցույց տալով ցարական կառավարության լեզվաշինարարական քաղաքականության ներքին շարժառիթները։ «Բարոյականության և արդարության չափը չէ, որով քաղաքագետ մարդիկ չափում են յուրյանց վարքը և գնացքը։ Այդտեղ ոչինչ սուրբ բան չկա, որովհետև, ինչպես հռոմեական տերության մեջ, ամենայն բան զոհվում է և ստորադրվում է տերության նպատակին, անհատքը և նոցա իրավունքը։ Ազգ ազգից բաժանողը լեզուն է. մի ազգի առանձնական, բարոյապես և մտավորապես կենդանության, մի խոսքով, պահպանության հիմքն ու խարիսխը դրած են լեզվի մեջ. ուրեմն այդ առանձնությունը, ինչպես ասում են, սեպարատիզմոսը, պիտո էր քակտել, կամ թե կարելի էր միայն վերացնել, վերացնելով բաժանող մեծ խտրոցը, որ է լեզուն» (Նույն տեղը, էջ 335)։ Ցարական կառավարությունն առհասարակ կողմնակից է, իհարկե, նաև փոքր ազգությունների առաջադիմությանը, միայն եթե այն իրականացվում է նրանց ազգային ինքնուրույնության վերացման, բոլորին ռուսիֆիկացնելու ճանապարհով։ Ուստի նա չի կարող շահագրգռված լինել նրանց ազգային մշակույթի, այդ թվում և մայրենի լեզվի զարգացմամբ, դրան նա միջոցներ չի տրամադրի։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր ժողովուրդ, նրա հասկացող մասը մանավանդ, ինքն անձամբ պիտի հոգա իր առջև պատմականորեն ծագած ազգային-կրթական խնդիրները և երբեք հույսեր չկապի ռուսական կառավարության բարյացակամության հետ (տե՛ս նույն տեղը, էջ 381)։ Միանգամայն բնական համարելով ցարական կառավարության ասիմիլյատորական քաղաքականությունը, Նազարյանցը հաճախ էր պախարակում հայերին իրենց ազգային կրթության նկատմամբ ունեցած անհոգության համար և նախազգուշացնում, որ, շարունակելով անտարբեր լինել հոգու աճելության, ազգային լեզվի բարգավաճանքի հարցերի նկատմամբ, նրանք իրենց մատնում են «վիթխարի հսկայի» կողմից կլանվելու վտանգին։ Դրանից փրկվելու միակ իրական և արդյունավետ միջոցն ինքնուրույն քաղաքական կյանքի իսպառ բացակայության պայմաններում Նազարյանցը համարում էր լուսավորությունը՝ ազգային լեզվով դպրոցների, մատենագրության, մամուլի ծավալումը։

Ռուսական ցարիզմի ազգային քաղաքականության հասցեին հայ լուսավորչի արած քննադատական մերկացումները վկայում են, որ նրա միապետական համակրությունները, «լուսավոր միապետի» այն բուրժուական հայացքը,



որը արևմտաեվրոպական մի շարք երկրներում մարմնավորվել էր սահմանադրական միապետության քաղաքական սիստեմում, բնավ էլ ցարիզմն արդարացնելու միտում չունեն։ Ընդհակառակը, նա Ռուսաստանում ապրող հայերի համար ավելի ձեռնտու ուղի չգիտեր, քան «քաղաքականապես ռուս» մնալու, ռուսական տերության սահմաններում սեփական հոգևոր մշակույթը զարգացնելու, տերության օրենքների շրջանակներում ազգային ոգին պահպանելու, բոլոր հնարավորություններն օգտագործելու ուղին։ Սակայն ցարիզմի ազգահալած քաղաքականությունը, որ գնալով ավելի ու ավելի ակնհայտ էր դառնում հայ առաջավոր մտավորականության համար, ոչ միայն չէր համընկնում «լուսավոր միապետի» նազարյանական ըմբռնումների հետ, այլև նույնանում էր նրան նողկանք պատճառող այն բռնակալական ռեժիմի հետ, որի մեջ նա, շատ այլ լուսավորիչների նման, փնտրում էր հասարակական բոլոր ախտերի, հասարակական չարիքի արմատները։

Նազարյանցն այն համոզմանն էր, որ անցյալի բոլոր անիրավությունների, անկարգությունների, պատերազմների և ապստամբությունների մեղքն ընկած է երկրի ու պետության շահերից հեռու կանգնած, զուտ իրենց վայելքներով տարված բռնակալների՝ բռնակալ թագավորների կամ նրանց բռնակալ մինիստրների վրա։ Իր նշանավոր «Ֆրանսիական ռեվոլյուցիայի պատճառքը» հոդվածում, որը, ի դեպ, սխալ մեկնաբանություն է ստացել մեր պատմագրության մեջ և միշտ վկայակոչվել է իբրև Նազարյանցի ցարասիրության փաստարկ, հայ լուսավորիչը Ռուսաստանում նախապատրաստվող գյուղացիական ռեֆորմի նախօրյակին հանդես էր գալիս, ըստ էության, «լուսավոր միապետի» բուրժուական գաղափարի տեսանկյունից, փորձելով հասկացնել, թե ժողովրդի կործանարար գործողությունները՝ հեղափոխությունը, իշխողների բռնակալական քաղաքականության հետևանք են, անմիտ թագավորների և նրա կամակոր մինիստրների ոչ խելացի վարքագծի, ժողովրդի և պետության փոխհարաբերության ոչ ճիշտ ըմբռնման անխուսափելի բացասական արդյունքը։

Ֆրանսիական հեղափոխության պատճառների տեսությունն սկսելով Լյուդովիկոս 13-րդի և Ռիշելյեյի ժամանակաշրջանից, Նազարյանցը, վերջին հաշվով բուրժուական սահմանադրական միապետության գաղափարն էր պաշտպանում, երբ մանրամասն պատմական վերլուծություններով ցույց էր տալիս, որ դժբախտությունները թափվեցին Ֆրանսիայի գլխին այն բանից հետո, երբ այստեղ վերացավ փոխանորդների ազգային ժողովը՝ մեծ խորխորատ ստեղծելով «աթոռի և ազգի» միջև։ Նրա կարծիքով, փոխանորդների խորհուրդը մի օղակ էր, որ կապում էր թագավորական աթոռը ժողովրդի հետ, «ճշմարտությունը մոտ էր բերում արքայական աթոռին», հնարավորություն տալիս՝ հասկանալու ժողովրդի կարիքները, մատնանշում այն ճանապարհը, «թե ինչպես պիտո էր խնամ տանել նոցա» և աթոռի ու ազգի «միաբան ներգործությամբ» ինչպես օժանդակել ամբողջ հասարակության՝ «ընկերական կազմածի» առաջընթացին (Հյուսիսափայլ», 1858, № 4, էջ 267)։ Բայց ազգային ժողովի հետ վերացավ «և այն միջնորդող իշխանությունը, որ ժողովուրդը և թագավորը մոտեցնում էր միմյանց, մինին տալիս էր ապահովություն, ազատագոհություն և մասնակցություն հասարակաց օգտին, և մյուսի համար սյուն հաստատության, խրատովություն և առաջնորդություն... Այս ժողովի հետ միասին մեռավ, ցամաքեցավ քաղաքական գործարանի մի շատ հարկավոր մասը և ոչինչ զուգակշիռ բանով չլցուցին այդ պակասությունը»։ Այս ամենի հետևանքով երկրում ծայր առավ սահման չճանաչող մի բռնակալական կարգ, որտեղ իշխողները, տոգորված լինելով սեփական անսխալականության անհեթեթ պատրանքով, չունենալով իրենց գործողությունները չափող և հսկող այլ այնպիսի մի կազմակերպության ամենօրյա աջակցությունը, ինչպիսին նախկինում փոխանորդների խորհուրդն էր, կատարեցին սխալը սխալի ետևից և երկիրը կանգնեցրին վերահաս ժողովրդական ապստամբության դռանը։ Հետևապես, հայ լուսավորչի կարծիքով, հեղափոխությունը Ֆրանսիայում ոչ թե պատմա-սոցիալական կյանքի զարգացման անհրաժեշտ արդյունք էր, այլ միայն կառավարողների կամակորության, անխելքության։ Հենց դրանով էր

բացատրում նա նաև այն, որ չնայած անցյալ պատմության ընթացքում Ֆրանսիայում արդեն ստեղծվել էր այն կայծը, որ կարող էր առաջացնել հեղափոխության հրդեհը, այնուամենայնիվ, եթե Լյուդովիկոս XVI-ը բավականաչափ խելացի գտնվեր ժամանակի հրատապ պահանջներն ըմբռնելու և վերստին գործի հրավիրեր ժողովրդի մասնակցությունը կառավարման մեջ ապահովող փոխանորդների ժողովը, ապա հիշյալ կայծը կհանգցվեր՝ ժողովրդի բարկությունը կմեղմանար, «հրայրյացքը» տեղի չէր ունենա (տե՛ս, նույն տեղում, №7, էջ 24)։ Դրանում էր նա տեսնում այն անհրաժեշտ բարենորգումների իմաստը, որոնց համար նա նախանձախնդիր էր առաջին հերթին Ռուսաստանում պատրաստվող ռեֆորմի կապակցությամբ։ Ելնելով ֆրանսիական հեղափոխության պատմական դասերից, Նազարյանցը կարծես նախազգուշացնում էր հենց ռուսական տերությանը, երբ գրում էր. «Վերանորոգությունք, հիմնովին, մեծատարած, հաստատուն վերանորոգությունք հարկավոր էին և անպատճառ պիտո էր տերությանը լայն և շրջանկատ տեսությամբ, քաջ և զորավոր կերպով և տոկուն համբերությամբ ձեռնարկել և գլուխ տանել այդ վերանորոգությունքը, եթե չկամեր նա պատրաստել յուր և թագավորության կործանումը» (նույն տեղը)։ Կողմնակից լինելով հիմնավոր և հաստատուն, մեծատարած վերանորոգություններին, Նազարյանցն իր բացասական վերաբերմունքն էր արտահայտում կիսատ-պռատ միջոցառումների հանդեպ։ Նրա կարծիքով միայն հիմնավոր ու հաստատուն բարեփոխությունները կարող են բավարարել ժողովրդի հասունացած պահանջները և մեղմացնել նրա ցասումը։ Ապա թե ոչ անխուսափելի է սահման չճանաչող ժողովրդական ըմբոստությունը։ Բավականին ճիշտ ու գունեղ էր պատկերում այդ ըմբոստությունը հայ լուսավորիչը, նրա այն իշխանությունը, որ ի հայտ է գալիս հեղափոխությունների ժամանակ։ «Մի հիմնականոն, որ յուր ահավոր անորոշությամբ ոչինչ սահման, ոչինչ հաստատուն ուղղություն, ոչինչ կանոն, ոչինչ չափ ու խոստովանում է և ոչ կարող է խոստովանել. մի ամենակարող զորություն, որ ոչինչ բանով չկապած, ոչինչ բանով չկանոնավորված, կարող է ամեն ինչ ստեղծագործել և ամենայն ինչ կործանել, բայց ոչ կարող է և ոչ հարկավոր է համարում հաշիվ տալ կամ յուրյան կամ թե մյուսներին, յուր ավերման կամ շինության մասին. մի կամապաշտական ամենակարողություն, որ Կռոնոսի նման ծնուցանում է զավակներ, որ հետո կլանե նորանց. մի ամենակարողություն որ բնակում է մի վերացական էակի մեջ, որ ամենայն տեղ և ոչինչ տեղ չկա, և ժողովրդի անունով կամայապես շինվում է» (նույն տեղը, էջ 35)։

Դիտելով հեղափոխությունը ժողովրդական զանգվածների ահեղ և կործանարար գործողություններ և իր բացասական վերաբերմունքը ցուցաբերելով նրա նկատմամբ, Նազարյանցը, սակայն, կարծես այն արդարացի էր համարում, երբ միանգամայն Ռուսոյի «հասարակական դաշինքի» ոգով և համաձայն «լուսավոր միապետի» իր պատրանքների քարոզում էր, թե այն թագավորը, որ չի համապատասխանում իր կոչմանն ու տեղին, օրենքով պիտի հրաժարվի իշխանությունից։ «Լյուդովիկոսը,— գրում էր հայ լուսավորիչը,— անգիտացավ մի մեծ ճշմարտություն, որ իրավացի կարելի է համարել թագավորների բարոյականության հիմքը. այսինքն, թագավորական աթոռի իրավունքը հիմնած է նորա պարտականությունների վերա. այն թագավորը որ քարոզում է յուր անձը այս պարտականություններից ազատ, նա և հրաժարվում է այն իրավունքներից» (նույն տեղը, էջ 39)։

Բռնակալության դեմ ուղղված բազմաթիվ խորհրդածությունները վկայում են, որ Նազարյանցը ցանկացել է քաղաքական վերանորոգությունների միջոցով կարգվելիք մի այնպիսի պետական սիստեմ, որտեղ, անկախ նրանից, այն միապետությո՞ւն է, ազնվապետություն, թե՞ ժողովրդապետություն, պիտի հաստատվեին մարդկանց քաղաքական ազատություններն ապահովող կարգեր։ Նրա համար ատելի էր իշխանության «չար գործադրությունը»՝ ինչպիսի ձևով էլ այն ներկայանար՝ միապետությա՞ն, թե՞ ժողովրդի գերագույն իշխանության։

Դատապարտելով բռնակալությունը, կառավարման ոչ դեմոկրատական



ձևերը, որ, անշուշտ, բխում էր դարձյալ «լուսավոր միապետի» նրա պատրանքներից, Նազարյանցը, բնականաբար, չէր կարող համակիր լինել ցարական ռեժիմին։ Սա,— որքան կարելի է դատել ոչ թե մեր լուսավորչի հրապարակային պաշտոնական հայտարարություններից, ուր նա գովաբանում էր ռուսական կառավարությանը և հայերի համար նրանից ավելի նպաստավոր քաղաքական կարգ չէր էլ երևակայում, այլ նրա քաղաքական հայացքների ներքին տրամաբանությունից և քաղաքական երևույթներին նրա տված գնահատումներից,— նրան ներկայանում էր իր քաղաքական դավանանքին՝ լուսավոր միապետության և կառավարման ոչ բռնակալական ձևերի գաղափարին՝ հակասող քաղաքական սիստեմ։

Դա հատկապես նկատելի է Նազարյանցի Քաղաքային ընկերության արմատական նյութերում, որտեղ նա որոշակիորեն պաշտպանում է ազատության բուրժուադեմոկրատական գաղափարը։ Այստեղ նա նորից արմատական-դեմոկրատական դիրքերից քննադատում է բռնակալության ոստիկանական ռեժիմը, գրաքննությունը, խոսքի ազատության ոտնահարումը և այլն։ Այն երկրներում, որտեղ մոլեգնում է ոստիկանական ռեժիմը, «անձնապաշտական սառնասրտությունը համարվում է քաղաքական առաքինություն. այդտեղ հնազանդություն և հանդարտություն, քաղաքացու առաջին պարտականությունն է. այդտեղ մատնողը և կոպիտ անձնասերը համարվում են հատկապես կատարյալ քաղաքացիք, այնպես որ ճշմարիտ, լուսավոր հայրենասիրությունը կարող չէր երբեք դուրս գալ» («Հյուսիսափայլ», 1862, № 4, էջ 179)։ Արտահայտելով իր որոշակի դեմոկրատական տրամադրությունները՝ Նազարյանցը մատնանշում էր, որ ամենալավ պետությունը ելնում է հասարակության մեծամասնության շահերից, բարձրացնում է այնպիսի խնդիրներ, որոնք հուզում են ամբողջ բնակչությանը, ազգին, և իրականացվում են հենց նրա ձեռքով։ Նման պետության համար բնորոշ է նաև ազգային անհատականության պաշտպանությունը, դրանով նա վառ է պահում ազգի քաղաքացիական բարձր զգացումը, ապահովում՝ նրա նվիրվածությունն իր նկատմամբ, նրա հայրենասիրությունը։ Իհարկե, եթե պետությունը ճնշում է անհատականությունը՝ առհասարակ և ազգի անհատականությունը՝ մասնավորապես, այն ժամանակ թերևս «իշխանության ճանապարհը բացվում է քանակաբար մեծ զորությանը», այսինքն՝ նա ի հաշիվ ազգերի ճնշման, մեծացնում է իր իշխանությունը մեծ թվով ազգերի և ավելի ընդարձակ տերիտորիաների վրա, բայց տուժում է բարոյապես, քանի որ դրանով նա վերացնում է ազգային բնավորությունը, այն առանձնահատկությունը, որով պայմանավորված է ազգի քաղաքացիական խիզախությունը։ Բնականաբար, ազգային ճնշման նման մթնոլորտում էլ ճանապարհ է բացվում բռնակալության համար։ «Ով որ մի ազգի ազգայնություն ուրանում է,— գրում էր Նազարյանցը,— նա ուրանում է նորա իրավունքը և հիմքը մի հատուկ սեփական կյանքի. նա ոչ թե բարձրացնում է քաղաքացին դեպի մարդու աստիճան, այլ խոնարհեցնում է նորան դեպի ծառայի սորկություն» (նույն տեղը, էջ 180)։

Պետության դեմոկրատական սկզբունքները պաշտպանելու նպատակով Նազարյանցը շոշափում էր նաև ազատ մամուլի հարցը։ Համոզվա՞ծ էր նա, արդյոք, որ Ալեքսանդր Երկրորդի Ռուսաստանում գոյություն ունի մամուլի ազատություն, թե՞ ցուցաբերում էր իրեն բնորոշ զգուշությունը, սակայն, այնուամենայնիվ, պարտք էր համարում արտահայտելու իր ցանկությունը Ռուսաստանում մամուլի ազատության հետագա ընդլայնման վերաբերյալ։

Նա պաշտպանում էր այն խոր և կարևոր միտքը, որ խելացի պետական կարգում մամուլի ազատությունը պիտի վեր դասվի պետության ավելի նեղ մտահոգություններից։ Խոսելով հավատի և մտածողության ազատության մասին, որը պիտի ապահովվի թե՛ եկեղեցու և թե առանձնապես պետության քաղաքականության միջոցով, դիտելով պետությունը խղճի և մտքի ազատության մարմնացում, Նազարյանցը հայտնում էր, որ միտքը, այնուամենայնիվ, ավելի վեր է կանգնած քան թագավորությունը։ Ուստի պետությունը ոչ թե պիտի ընդդիմանա մտքին, այլ հիմնվի նրա վրա,

եթե ցանկանում է լինել բարոյականության պաշտպան: Այդ իսկ պատճառով նա պիտի ճանապարհ տա տպագրությանը, այսինքն՝ մամուլին, որը մշակում է հասարակական կարծիքը, այս կարծիքի խոսափողն է և, ունենալով ինչ-ինչ մեղքեր, այնուամենայնիվ, «երբեք վտանգավոր չէ», որովհետև բուժում է հասարակական վերքերը: Մամուլը կարող է սխալվել, բայց ոչ երբեք՝ մեղանչել: Ուստի և նրան չի կարելի դատել կամ պատժել: «Պատժելով կարելի չէ բնաջինջ առնել մի գաղափար. մտածողի վերա պատիժ դնելը, ցուցանում է միայն հերքողության դժվարությունը» («Հյուսիսափայլ», 1862, № 4, էջ 190): Դատապարտելով ոստիկանական միջոցները տպագրության հարցում և գրաքննությունը, Նազարյանցը հայտարարում էր. «Մի թագավորություն, որ երկյուղ ունի ավելի շատ բաներից քան թե միայն հանցավոր գործիցը, մի թագավորություն, որ հասարակաց վնասակար է համարում իմացական շարժողությունը և հառաջադիմությունը, է միանգամայն և վախկոտ և վախեցուցիչ. նա հիմնվում է ահ ու դողի, բայց ոչ սիրո և խոստովանության վերա, և այդպես ինքը դատապարտում է յուր անձը արժանի կործանման» (Նույն տեղը):

Իր քաղաքական դավանանքում, որի մի քանի կողմերը միայն այստեղ նշվեցին, Նազարյանցը ներկայացնում էր ազգային զարթոնք ապրող հայ առևտրական բուրժուազիայի մտահոգությունները ինքնուրույն պետականության, ազգային ազատագրական շարժման ուղղության և խնդիրների շուրջը: Անդրադառնալով մի սոցիալական խավի քաղաքական տրամադրությունները, որը կանգնած էր հին ու նոր կացութաձևերի սահմանագլխին և տակավին չէր եկել դասակարգային ինքնագիտակցության, լինելով տնտեսապես թույլ, իսկ քաղաքականապես անդեմ ու անզոր, Նազարյանցի քաղաքական հայացքներն էլ չէին կարող լինել ամբողջական ու կուռ, այլ պիտի աչքի ընկնեին իրենց ներքին իրարամերժությամբ, կառուցվելով ժողովրդի ընդհանուր ազգային առաջադիմության անդիմադրելի ցանկության վրա: Ահա թե ինչու հայ լուսավորչի քաղաքական գաղափարախոսության մեջ նկատելի է մի կողմից՝ ցարական ռեժիմի համոզիչ քննադատություն՝ որոշ քաղաքական-պետական պատրանքների տեսանկյունից, ցարիզմի ազգային քաղաքականության մերկացում, գրաքննության բարոյական և քաղաքական վտանգների գիտակցում, որից բխում էր մամուլի ազատության դեմոկրատական պահանջը, մյուս կողմից՝ զգուշավոր արտահայտություններ գոյություն ունեցող քաղաքական կարգերի մասին, նրանց քաղաքականապես համակերպվելու կոչեր, որոնք իրենց հիմքում ունեն չափավոր բուրժուական մտածողի ամուր համոզմունքներ:

Սակայն հայ մեծ լուսավորիչը ավելին չկարողացավ և չէր կարող անել, առաջադրել որոշակի և հետևողական քաղաքական ծրագիր, որովհետև, ինչպես ցույց են տվել Ստ. Շահումյանն ու Ալ. Մյասնիկյանը, նա հանդես էր եկել մի շրջանում, երբ հայ բուրժուազիան, ընդհանուր տոն տալով ժողովրդի կյանքում սկիզբ առած նոր կենսահարաբերություններին, տարերայնորեն անցնելով ազգային շարժման գլուխ, տակավին չէր առանձնացել ազգի ամբողջ մասսայից, և հետևապես, չուներ նրանից անջատ որոշակի քաղաքական ծրագիր: Ճիշտ է նկատել ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը, թե «...Նազարյանցը ապրում ու գործում էր մի ժամանակ, երբ տակավին տկար էր ռուսահայ բուրժուազիայի նյութական ուժը և տակավին թույլ՝ անդրկովկասյան հայության հետ նրա ունեցած նյութական ու բարոյական կապը» (XIX դարի 50—60-ական թվականների արևելահայ հասարակական-քաղաքական հոսանքները: «Պատմա-բանասիրական հանդես», 1966, № 1, էջ 42):

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

Երկրների ու ժողովուրդների կյանքում տեղի ունեցող պատմական յուրաքանչյուր բախտորոշ շրջան ո՛չ միայն անջնջելի է մնում ժամանակակիցների հոգում, այլև կենդանի հիշողություն է դառնում գալիք սերունդների համար՝ թողնելով իր դասերը, իր ավանդները:

Այդպիսին էր Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմը, որի տարեգրության առաջին էջերը գրվեցին հենց ահեղ փորձության օրերին, իրադարձությունների վառ տպավորության ներքո: Կենաց և մահու վիթխարածավալ այդ գոտեմարտն իր արձագանքն ու արտացոլումը գտավ ո՛չ միայն ժամանակի փաստաթղթերում,— կուսակցական մարմինների որոշումներում, կոչերում, հրամաններում, հաշվետվություններում, առանձին զորավարների ու զինվորների պաշտոնական բնութագրերում, ռազմաճակատ—թիկունք կապն իրականացնող նամակագրության մեջ՝ եռածալ, սրտաձև ծրարներում,— այլև բազմալեզու ու բազմաժանր մեծ տարեգրողի՝ պարբերական մամուլի էջերում:

Արդեն քառորդ դարից ավելի է, ինչ Հայրենական պատերազմի պատմությունն ուսումնասիրվում է տարբեր կողմերով և բազում առումներով. հրատարակվել են պատմական ու ռազմագիտական հետազոտություններ, վավերագրական գրքեր, մեմուարներ, հիշողություններ, նամականիներ, գեղարվեստական երկեր, ստեղծվել են կինոնկարներ, հյուսվել կտավներ, կոթող-քանդակներ են բարձրացվել... Բայց շարունակվում է մեծ ու անսպառ թեմայի պատմա-գեղագիտական արտացոլումը, սովետական ժողովուրդների անմահ սխրագործության իմաստավորումը:

Այդ հերոսական պատմության ներկա, առավել ևս ապագա ուսումնասիրողի հավաստի և առատ աղբյուրներից մեկն էլ ժամանակաշրջանի պարբերական մամուլն է՝ ՍՍՀՄ ժողովուրդների լեզուներով լույս տեսած բազմաթիվ ու բազմաբնույթ թերթերը, հանդեսները և մյուս հրատարակությունները: Ինքնին պարզ է, իհարկե, որ պատերազմի ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական կյանքի, էկոնոմիկայի, ռազմական գործողությունների, գաղափարախոսության, դիվանագիտության, մշակույթի հարցերին նվիրված գրականության մեջ օգտագործվում են (երբեմն առատորեն) մամուլի էջերում ամփոփված փաստերը, տվյալները, նաև հոգեբանական բնույթի արտացոլումները, որոնք բնորոշում են այն օրերի բարդ ու լարված իրադրությունը, ռազմաճակատի և թիկունքի մարդկանց նպատակասլաց պայքարը:

Նույնքան հասկանալի է, սակայն, որ ինքը՝ այդ շրջանի մամուլը ևս չէր կարող չդառնալ ինքնուրույն հետազոտության առարկա՝ իբրև Հայրենական մեծ պատերազմի ամբողջական պատմության օղակներից մեկը,— գաղափարական ներգործության այնպիսի մի ուրույն միջոց, որ իրոք վիթխարի դեր խաղաց հայրենասիրության հուրը բորբոք պահելու, անօրինակ հերոսության դրվագները մասսայականացնելու, պայքարի ու աշխատանքի զինվորներին ատելության գիտությամբ զինելու, մեր մեծ հաղթանակը կոփելու գործում:

Սովետական Միության բազմալեզու մամուլի ջոկատներից մեկի՝ Հայաստանի պարբերականների այդ շրջանի գործունեության քննարկմանն ու գնահատմանն է նվիրված բանասիրական գիտությունների թեկնածու Վ. Մ. Ամիրբեկյանի ուսումնասիրությունը*:

* Վ. Մ. Ամիրբեկյան, «Հայաստանի մամուլը Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—1945)», ՀՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1971, 285 էջ:

Ելնելով պատերազմական իրադրությունից՝ կոմունիստական կուսակցությունը ձեռնամուխ եղավ արմատական վերափոխումների ինչպես երկրի տնտեսական-ռազմական կյանքում, այնպես էլ գաղափարական-քաղաքական աշխատանքի բոլոր բնագավառներում։ Նոր խնդիրներ առաջադրվեցին նաև պարբերական մամուլին՝ իբրև հասարակական ներգործության զորավոր և գործունեության ամենալայն ոլորտ ունեցող միջոցներից մեկի։

Նոր պայմանների թելադրանքով վերակառուցվեց մամուլի աշխատանքը ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ առանձին հանրապետություններում, այդ թվում և Հայաստանում։ Թղթի պաշարների սակավության, կադրերի պակասի, պոլիգրաֆիական սահմանափակումների և այլ պատճառներով զգալի չափով կրճատվեց մինչ այդ հրատարակվող պարբերականների թիվը, իջավ տպաքանակը։ Այսպես, օրինակ՝ եթե նախապատերազմյան 1940 թ. հանրապետությունում լույս էին տեսնում 24 անուն հանդես՝ կես միլիոն և 53 անուն թերթ՝ ավելի քան 200 հազար ընդհանուր տպաքանակով, ապա պատերազմի երկրորդ տարում հրատարակվում էին ընդամենը 2 ամսագիր՝ 3 հազար և 42 թերթ՝ 100 հազարից մի փոքր ավելի տպաքանակով։ Խմբագրությունների շատ աշխատակիցներ, ժուռնալիստներ մեկնեցին ռազմաճակատ։ Հրատարակվող պարբերականներն էլ լույս էին տեսնում կրճատ ծավալով, կրկնակի փոքր չափով։ Ինքնին հասկանալի է, որ այս պայմաններում առավել բարդացավ թիկունքում մնացած ժուռնալիստների խնդիրը, մեծացավ նրանց պատասխանատվությունը. հարկավոր էր աշխատել նաև գործող բանակ մեկնած ընկերների փոխարեն, առավել արդյունավետ ու նպատակասլաց օգտագործել յուրաքանչյուր թերթի և հանդեսի սուղ էջերը։

Այս հարցերին է, ահա, նվիրել Վ. Ամիրբեկյանն իր գրքի առաջին էջերը, տալով պատերազմի պահանջներին համապատասխան՝ մամուլի վերակառուցման ընդհանուր նկարագիրը։

Նշենք, սակայն, որ վերոհիշյալ խնդիրները շոշափելուց առաջ, կամ դրան զուգահեռ, անհրաժեշտ էր անդրադառնալ նաև մամուլում սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման, ազգաբնակչության ռազմա-հայրենասիրական դաստիարակության հարցերի քննարկմանը, որը մեր պարբերականների բովանդակության էական կողմերից մեկն էր 1938—1941 թվականներին և ուղղակիորեն առնչվում է գրախոսվող գրքի թեմատիկային։ Այդ դեպքում ո՛չ միայն առավել ամբողջական ու լիարյուն կդառնար պրոբլեմի ուսումնասիրությունը, այլև հեղինակը հնարավորություն կունենար ընդգծելու դեռևս նախապատերազմական տարիներին մեր մամուլում արմատավորված մի շարք ավանդների կենսունակությունն ու հետագա զարգացումը։ Բացի այդ, նա չէր սահմանափակվի սոսկ անունների թվարկումով, և գրքում շոշափելի ու ակնառու կլիներ այն ժուռնալիստների վաստակի գնահատումը, որոնք աչքի էին ընկել դեռևս նախապատերազմյան տարիներին և իրենց կյանքը զոհաբերեցին հայրենիքի ազատագրության գործին։

Իր ձեռքի տակ ունենալով բավականին հարուստ և բազմաբնույթ նյութեր, հեղինակը կարողացել է հիմնականում ճիշտ զետեղել դրանք աշխատության համապատասխան գլուխներում՝ համակողմանի ներկայացնելով Հայաստանի պարբերական մամուլի գործունեությունը՝ քննարկվող ժամանակահատվածում։

Նախ և առաջ գրքում բացահայտված է այն հետևողական ու կրքոտ պայքարը, որ մղում էին պարբերականները ֆաշիզմի գաղափարախոսության դեմ՝ մերկացնելով նրա մարդատյաց էությունը։ Ինչպես առաջնորդողները, պրոպագանդիստական հոդվածները, նպատակային էջերը, գիտության ու մշակույթի ականավոր գործիչների ելույթները, այնպես էլ աշխատավորության ամենատարբեր ներկայացուցիչների նամակները և մամուլում հրապարակված մյուս նյութերը տոգորված էին մի կողմից՝ խոր ատելությամբ ֆաշիզմի աշխարհակալական ձգտումների, ռասիստական բացառիկության ամենաայլանդակ դրսևորումների, անսանձ վանդալիզմի դեմ, մյուս կողմից՝ սոցիալիստական հայրենիքի նկատմամբ ջերմ ու անձնազոհ սիրով, Եվրոպայի ստրկացված ժողովուրդների հանդեպ համակրանքի անկեղծ զգացումներով, խոր հումանիզմով։ Ֆաշիզմի դեմ մղված կենաց և մահու կռիվը ո՛չ միայն պայքար էր հանուն մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության, հանուն աշխարհում առաջին սոցիալիստական երկրի անկախության, ազատության ու պատվի, այլև աննախադեպ մի զոհեմարտ՝ մարդկային քաղաքակրթությունը միջնադարյան խավարամոլության ճիրաններից փրկելու համար։ Սովետական հասարակ ու պարզ, բայց և համառ ու տոկուն մարդիկ,— մեր հայրենիքի ժողովուրդների անձնուրաց զավակները,— իրենց արյունով, շիթ առ շիթ, մարում էին այն աշխարհակուլ հրդեհը, որն սպառնում էր մոխրի վերածել մարդկային մտքի դարավոր գանձերը, նյութական բարիքները, հոգևոր հարստությունը, սերունդների լուսավոր երազանքը։

Հեղինակը ո՛չ միայն բնորոշ օրինակներով ցույց է տալիս սովետական ժողովրդի այս պատմական առաքելության բազմակողմանի հավաստումը մամուլի կողմից, այլև բնութագրում ընդհանրապես սովետական մամուլի հիմնական ոճը դարձած մարտնչող հրապարակախոսության էական կողմերի կոնկրետ դրսևորումները մեր հանրապետության պարբերականներում (քաղաքական, պատմագիտական, գեղարվեստական, կոլեկտիվ հրապարակախոսություն և այլն)։ Զուգահեռաբար տրվում է խմբագրությունների աշխատանքի վերակառուցման նկարագիրը, հատկանշվում են լրագրային առանձին ժանրերի խորացումն ու հարստացումը, ժուռնալիստական նոր հնարանքների որոնումները, հրապարակախոսության նորօրյա ավանդները։

Աշխատության հաջորդ գլխում քննության է առնվում այն հարցը, թե ինչպես է արտացոլվել ռազմաճակատի կյանքը Հայաստանի պարբերականների էջերում։ Ռազմական գործողությունների վերաբերյալ ամենօրյա մանրամասն ինֆորմացիայից բացի, թերթերն ու հանդեսները հրապարակում էին ժուռնալիստական տարբեր ժանրերով մատուցված բազմապիսի նյութեր, որոնցում նկարագրված են սովետական զինվորների կոնկրետ սխրագործությունները, անձնազոհ պայքարը, բանակային առօրյան, այս կամ այն ճակատամարտի բնորոշ դրվագները։ Մամուլում տպագրվում էին հայ մարտիկի հայրենասիրական խոհերն ու զգացմունքներն արտահայտող նամակներ, մարտադաշտից ուղարկված թղթակցություններ, ակնարկներ, ականավոր զորավարների հոդվածներ և այլ նյութեր, որոնք լայն արձագանք էին գտնում թիկունքի մարդկանց սրտերում, բազմապատկելով նրանց աշխատանքային եռանդը։

Հարուստ ու բազմապիսի նյութի թեմատիկ տարբերակումը հնարավորություն է ընձեռել հեղինակին՝ ընդհանուր բնութագրումներից բացի, կոնկրետ ներկայացնելու այն ջերմ ու հայրենաշունչ արձագանքը, որ մեր մամուլի էջերում գտան Մոսկվայի հերոսական պաշտպանությունը, ստալինգրադյան էպոպեան, Լենինգրադի անօրինակ դիմադրությունը, Սևաստոպոլի, Օդեսայի, Կիևի համար մղված հերոսամարտերը։ Այդ օրերի մամուլում ամփոփված են վավերագրական արժեք ունեցող նյութեր, որոնք հավաստում են հայ ժողովրդի քաջարի զավակների անձնվեր մասնակցությունը թշնամու ջախջախման դժվարին ճակատամարտերին։

Մեր հանրապետության մամուլը, ինչպես ցույց է տալիս հեղինակը, առանձնակի տեղ է հատկացրել Կովկասի պաշտպանության համար մղված մարտերի լուսաբանմանը։ Առաջնորդողներում, ակնարկներում, հրապարակախոսական հոդվածներում, թղթակցություններում, նպատակային էջերում ու համարներում թերթերն ու հանդեսները պատմական և նորօրյա փաստերով ընդգծում էին Անդրկովկասի ժողովուրդների եղբայրական համերաշխության ուժը, պատկերում նրանց հերոս զավակների ռազմական սխրանքը, ինտերնացիոնալ նպատակների միասնությունը։

Ռազմաճակատային կյանքի պատկերումը թիկունքի մամուլում ընդհանուր առմամբ հաջող է արտացոլված գրքում։ Սակայն, թեմայի ամբողջացման առումով, առկա է էական մի թերություն։ Խոսքը վերաբերում է հայերեն զինվորական թերթերի դերի ու կատարած խրոխ վիթխարի աշխատանքի վերհանմանը։ Հեղինակը բավարարվում է սոսկ այն հիշատակությամբ, թե այդ մամուլի մասին գրել է պրոֆ. Ար. Մնացականյանը և տողատակին նշում է թերթերի խորագրերն ու խմբագիրներին։

Թվում է, թե իր գրքի այս գլխում հեղինակը պետք է ըստ էության անդրադառնար տարբեր ռազմաճակատներում լույս տեսած զինվորական հայերեն թերթերին, վերլուծեր դրանց հիմնական բովանդակությունը, ներկայացներ առավել կարևոր նյութերը։ Դրա կարիքն անպայման զգացվում էր մի քանի առումներով։ Նախ՝ Ար. Մնացականյանի գիրքը հրատարակվել է քառորդ դար առաջ, և բոլոր թերթերը չէ, որ ներկայացված են այնտեղ հավասար հանգամանալիությամբ։ Անցած ժամանակամիջոցում ի հայտ են բերվել նոր փաստեր, տվյալներ ու տեղեկություններ, որոնց ընդհանրացման ու մասսայականացման լավագույն առիթը հենց պատերազմի տարիների հայ մամուլին նվիրված աշխատությունը կարող էր լինել։ Այնուհետև՝ Մեծ հայրենականի վերաբերյալ հարուստ ու բազմաբնույթ գրականությունը, որ բնականաբար իր ձեռքի տակ չէր կարող ունենալ նախորդ ուսումնասիրողը, գրախոսվող գրքի հեղինակին հնարավորություն էր ընձեռում որոշ առումներով հայերեն զինվորական թերթերի նյութերը վերլուծել և ընթերցողին ներկայացնել նոր տեսանկյունով։ Եվ, վերջապես՝ այդ պահանջը կատարելու դեպքում հեղինակն առիթ կունենար կոնկրետ արժեքավորելու այն հայ ժուռնալիստների վաստակը, ովքեր ռազմաճակատների դժվարին տեղամասերում զենքի հետ նաև գրիչն են փայլեցրել։

Ճիշտ է, ձևական-տերիտորիալ առումով այդ թերթերը չեն մտնում Հայաստանի մամուլ հասկացության մեջ, բայց չէ՞ որ դրանք սովետահայ պարբերական մամուլի անբաժան մի օղակն են, սովետահայ ժուռնալիստիկայի ինքնատիպ ու էական դրսևորումը, որ չէր կարելի անտեսել, մանավանդ, պատերազմի ժամանակաշրջանի մամուլին նվիրված ուսումնասիրության մեջ։

Մեր մամուլի հիմնական խնդիրներից մեկը՝ թիկունքում կատարվող լարված և նույնքան հերոսական աշխատանքի պատկերումն էր, գործարաններում, հանքերում, կոլտնտեսային դաշ-



# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԼՈՒՍԱԲԱՆՈՒՄԸ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԵՐՈՒՄ

Ընթացիկ հնգամյակում մեր երկրի ժողովրդական տնտեսության առջև ծառացած վիթխարի խնդիրների իրականացման գործում հատուկ կարևորություն է ստանում սոցիալիստական մրցության պատշաճ կազմակերպումը: Գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում սոցիալիստական մրցությունը որակապես նոր դեր է խաղում արտադրամիջոցների ինտենսիվ օգտագործման, ժողովրդական տնտեսության զարգացման և աշխատավոր մասսաների դաստիարակության գործում: Բարոյական ու նյութական խրախուսման միջոցների ճիշտ զուգորդմամբ մրցությունը պետք է նպաստի աշխատանքի գիտական կազմակերպման բարելավմանը, հանրային արտադրության և արտադրանքի որակի բարձրացմանը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրմանը, առաջավոր փորձի մասսայականացմանը:

Այս հարցերի լուսաբանման ասպարեզում մեծ է մամուլի, ինչպես և շրջանային թերթերի դերը: Այժմ համառոտակի անդրադառնանք այն հարցին, թե ինչպես են լուսաբանում շրջանային մի քանի թերթեր «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ մամուլի առջև դրված խնդիրները:




ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի և աշխատավորների դեպուտատների Ախուրյանի շրջանային սովետի օրգան «Շիրակ» թերթի՝ անցած տարվա համարների ուսումնասիրությունը վկայում է, որ խմբագրությունը ձգտում է հանգամանորեն լուսաբանել սոցիալիստական մրցության հետ կապված հարցերը: Գրեթե ամեն համարով թերթը ընթերցողին իրազեկ է պահում անհատական և կոլեկտիվ մրցության ընթացքին ու արդյունքներին, դրվատանքի ջերմ խոսք ասում աշխատանքային բարձր ցուցանիշների հասած կոլեկտիվների, արտադրության չքանչանակիր առաջավորների, տնտեսության հմուտ ղեկավարների, սոցիալիստական աշխատանքի հերոսների հասցեին:

Այս բնույթի նյութերը զետեղված են *Դեպի ՍՄԿԿ համագումարը*, *Հնգամյակի առաջավորները*, *Մեր շքանշանակիրները*, *Հնգամյակի մարդիկ*, *Մեր կոմունիստները* խորագրերի տակ: Հետաքրքրությամբ են ընթերցվում Առևիկի կոլտնտեսության կոմբայնավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Հ. Մինասյանի (№ 47), Կամոյի կոլտնտեսության նախագահ, Լենինի շքանշանակիր Գ. Հարությունյանի (№ 102), աշխղեկ Վ. Բաղալյանի (№ 95), Ջաջուռի սովխոզի զոոտեխնիկ Ռ. Բոբոյանի (№ 59), Հայկավանի դպրոցի օրինակելի ուսուցիչ Կ. Հարոյանի մասին գրված հոդվածները: Կոլեկտիվ մրցության արդյունքներն ամփոփող նյութերից ուշագրավ են՝ *Փոխանցիկը Սարիարի սովխոզին* (№ 49), *Միութենական փոխանցիկը «վայրէջք» կատարեց Մարմաշենում* (№ 51):

Ի դեպ, թերթը հետագայում նորից է անդրադառնում հիշյալ տնտեսությունների գործերի ընթացքին, ցույց տալով, որ նրանք չեն հանգըստանում դափնիների վրա, նորանոր բնագծեր են նվաճում: Թերթը բավարար ուշադրություն է նըվիրում այն հարցին, թե կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները ինչպես են գլխավորում աշխատավորների ստեղծագործական շարժումը, արմատավորում նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկները: Այսպես, Հայգյուղտեխնիկայի՝ Ախուրյանի միավորման արհմիութենական կազմակերպության նախագահ Ն. Մկրտչյանը պատմում է, թե արհմիությունն ինչպես է կազմակերպում անհատական, միջբրիգադային և միջարտադրամասային մրցությունը: Նա հատկապես շեշտում է, որ, վարպետների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ռացիոնալիզատորական մի շարք առաջարկությունների ներդրմամբ, կոլեկտիվը հասել է զգալի հաջողությունների: (№ 3): *Երիտասարդները մրցության ավանգարդում* հոդվածում ընդգծված է, որ Ղարիբջանյանի կոլտնտեսային կոմերիտական կազմակերպությունն ապահովել է իր ավանգարդային դերը արտադրության մեջ, որի շնորհիվ հաջողությամբ են լուծվում տնտեսության առջև ծառացած խընդիրները (№ 5):

Խմբագրությունն իր գլխավոր խնդիրներից մեկն է համարում ո՛չ միայն մրցության արդյունքների հրապարակումը, այլև ստանձնած պարտավորությունների կատարման ստուգումը՝ պարբերաբար կազմակերպվող ստուգայցերի միջոցով: Դրանով իսկ ընթերցողին հավաստի պատկերացում է տրվում շրջանի էկոնոմիկայի տարբեր տեղամասերում գործերի վիճակի մասին, բացահայտվում են տեղ գտած թերությունները ու բացերը, նշվում դրանց վերացման ուղիները (№№ 4, 16, 31, 76,78 և այլն):

Սոցիալիստական մրցությանը գործարար բընույթ տալու համար պակաս կարևոր չեն գյուղատնտեսական գիտելիքներով զինված մասնագետների արժեքավոր առաջարկներն ու քննադատական դիտողությունները: Ահա թե ինչու թերթը հանախակի ամբիոն է տրամադրում հարուստ կենսափորձ ունեցող գյուղատնտեսական կադրերին, որոնք իրենց խելացի, բանիմաց առաջարկություններով օգնում են շրջանի տնտեսություններին՝ առկա ռեզերվներն առավել արդյունավետ օգտագործելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ընդլայնելու:

Այս առումով հիշարժան է շրջսովետի գործկոմի գյուղվարչության պետ, վաստակավոր զոոտեխնիկ Մ. Հովհաննիսյանի ծավալուն հոդվածը՝ նվիրված անասնապահության բարելավման հեռանկարներին: Նա մի շարք գործնական առաջարկներ է անում մատղաշների անկումը նըվազեցնելու, կաթնամթերքների ինքնարժեքն իջեցնելու նպատակով, միաժամանակ հիմնավորում իր այն կարծիքը, թե շրջանի որոշ տնտեսություններում կարելի է և պետք է զարգացնել խոզաբուծությունը: Հոդվածագիրն ափսոսանքով է նշում, որ շրջանում անասնապահության բնագավառում խիստ անբավարար է աշխատատար գործողությունների կոմպլեքսային մեքենայացումը. «Ինչ վերաբերում է կթի ագրեգատներին, օգտագործման տեխնիկան ճիշտ չկիրառելու պատճառով, դրանք ամենուրեք անգործության են մատնված» (№ 15): Մի այլ հոդվածում վաստակավոր գյուղատնտես Հր. Սուքիասյանը ցույց է տալիս այն ուղիները, որոնցով կարելի է մեկ տարում ստանալ խոտի երկրորդ բերք և անասնապահությունն ապահովել առատ ու ռակյալ կերով (№ 75):

«Շիրակը» ուշի-ուշով հետևում է նաև Ախուրյանի և Ռոստովի մարզի Մյասնիկյանի շրջանի աշխատավորների միջշրջանային մրցության ընթացքին, մատնանշելով այն միջոցները, որոնց գործադրմամբ մրցակիցները հասնում են ակնառու հաջողությունների, միաժամանակ պրոպագանդելով նրանց առաջավոր փորձը: Թերթի № 79-ում տպագրված է Մյասնիկյանի ԼԿԵՄ շրջկոմի քարտուղար Վ. Խուրդայանի ելույթը, ուր հեղինակը պատմում է, թե դաստիարակչական և կազմակերպական ի՛նչ մեթոդներով են երիտասարդությանը համակում հողի, աշխատանքի նկատմամբ սիրո ու նվիրվածության զգացումով: Մի այլ համարում թերթը հանգամանորեն վերլուծում է արտադրության կազմակերպման գործը Լուկաշինի անվան կոլտնտեսությունում, վերհանում տնտեսության տեխնիկական զինվածության բարձր մակարդակը, նյութական և բարոյական խրախուսման մեթոդների նպատակային կիրառումը, կուսկազմակերպության խոշոր դերը հանրային տնտեսության բազմազան հարցերի լուծման գործում: Թերթի հոկտեմբերի 12-ի համարում մի ամբողջ էջ է հատկացված մրցակից շրջանի «Пролетарская диктатура» սովխոզի անասնապահների՝ Օլգա Զիտիկինի բրիգադայի առաջավոր փորձին: Խմբագրությանը հաջողվել է կոնկրետ ու հստակ շարադրանքով պարզաբանել բրիգադայի աշխատանքի արգասավոր մեթոդների էությունը, մեթոդներ, որոնք գործնականում խթանում են անասնապահության զարգացմանը, նպաստում անասնապահական մթերքների արտադրության վերելքին: Առաջավոր փորձի նման պրոպագանդումը, անշուշտ, կարող է ունենալ ուսուցողական ու գործնական արժեք:

Ցանկանք, որ խմբագրությունը նույն հաջողությամբ ներկայացնի նաև աշխատանքի տեղական փորձը, ցույց տա, թե այն ինչպիսի՛ արձագանք է գտնում, ինչպես է կիրառվում շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում, այսուհետև ևս հետևողականորեն արծարծի սոցիալիստական մրցության հարցերը, պաշտպանի ու տարածի գործնականում իրենց արդարացնող ձեռնարկումները, արտացոլի մրցության տնտե-

սական, քաղաքական ու բարոյական նշանակությունը:




«Լեռնագործ» թերթը լուսաբանում է Արթիկի շրջանի բովանդակ կյանքը, նրա մարդկանց պայքարը՝ կուսակցության կանխագծումների, շրջանի ստանձնած պարտավորությունների կատարման համար: Անընդմեջ տպագրվող ինֆորմացիաները, ռեպորտաժներն ու հոդվածները բովանդակում են արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ծավալած մրցության ընթացիկ արդյունքները: Հանույքով են կարդացվում առանձին կոլեկտիվներում տիրող ստեղծագործական մթնոլորտը, համագործակցված աշխատանքն արտացոլող էջերը: Հիշենք *Մրցել՝ նշանակում է ստեղծագործել* ռեպորտաժը, ուր պատկերված է Պեմզաշենի հանքվարչության կոլեկտիվի բեղմնավոր գործունեությունը՝ համապատասխան լուսանկարներով (№ 112): Այստեղ նշվում է, թե որքան կարևոր է արտադրության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացումը: Ընթերցողը տեղեկանում է, որ հանքագործները որոշակի հաջողության են հասել ձեռքի աշխատանքը թեթևացնելու, քարհատ մեքենաների կատարելագործման և արտադրողականության բարձրացման բնագավառում:

Մի այլ համարում հաղորդվում է, թե Մանթաշի սովխոզում ով ինչպես է կատարում իր խոստումը: Նման ռեպորտաժ-հոդվածները մեծ մասամբ աչքի են ընկնում նյութի կոնկրետությամբ, հստակ շարադրանքով, հետևապես և՝ իրենց ճանաչողական արժեքով:

«Լեռնագործն» իր պարտքն է համարում բարոյապես խրախուսել մրցության առաջավորներին, ներբողել այն անձանց, ովքեր նախորդ հնգամյակում ունեցած ակնառու վաստակի համար արժանացել են կառավարական պարգևների, ովքեր ընթացիկ հնգամյակի առաջին տարում հասել են նոր հաղթանակի: Ընդ որում, խմբագրությունը ջանում է շրջանի անվանի մարդկանց վերաբերյալ գրել ակնարկատիպ հոդվածներ, չնայած միշտ չէ, որ այդ փորձը պսակվում է հաջողությամբ:

Թերթը հետևողականորեն արտացոլում է շրջանի անասնապահների պարտավորությունների կատարման ընթացքը: Անասնապահական ֆերմաների անցյալ տարվա աշխատանքի դրական ու բացասական կողմերը վերհանվել են պարբերաբար կազմակերպվող ստուգայցերի միջոցով՝ դատապարտելով գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղի զարգացման հանդեպ երբեմն դրսևորվող անտարբերությունը: Անասունների մըսուրային շրջանում կատարված գիշերային ստուգայցերի ժամանակ արձանագրվել են ծնի կամպանիայի անկազմակերպ անցկացման, վըստահված գործի հանդեպ անասնապահների անպատասխանատու վերաբերմունքի դեպքեր (№№ 4, 9, 10): Հետագայում հրապարակվել են նաև գարնանացանի և դաշտային կուլտուրաների մշակության վիճակը ներկայացնող ստուգայցերի արդյունքները:

Սակայն կա մրցության մի կարևոր բնագավառ, ուր թերթը հանդես չի բերում բավարար ակտիվություն. առաջավոր փորձի պրոպագանդումն է այդ: Իհարկե, թերթը մերթ ընդ մերթ ցանկացել է լուսաբանել այն, բայց բավարար արդյունքի չի հասել: Ահա մի օրինակ. թերթի № 22-ում գրեթե մի էջ է նվիրված Լուսակերտի ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Ն. Մովսիսյանի աշխատանքային փորձին: Փոխանակ խորամուխ լինելու հրամցվող փորձի բովանդակության մեջ, վերլուծելու դրանում եղած նորն ու ուսանելին, որով նա հասել է լուրջ հաջողության, խմբագրությունն անհարկի նկարագրություններով և ինքնանպատակ զեղումներով խճողում է հիմնական ասելիքը: Պարզ է, որ փորձի նման մատուցումից դժվար է որևէ բան սովորել: Այնուամենայնիվ, ի՞նչն է ներկայացվում որպես առաջավոր փորձ: Պարզվում է, որ ֆերմայում լավ է կազմակերպված հոտի կերակրումն ու խնամքը (ընդ որում կերակրումը բացօթյա է). տարվա ընթացքում կատարվել է հոտի հակաքոսային մշտահանում, առանձնացվել է ծնարան, զգալիորեն բարելավվել է ոչխարների ցեղը, անկորուստ է անցել ծնի կամպանիան և այլն: Սրանք զոոտեխնիկական կանոններից բըխող պահանջներ են, որոնք պարտադիր են ամեն մի անասնապահի համար: Ստացվում է, որ իր պարտականությունները բարեխղճորեն կատարող մարդու աշխատանքը պետք է համարել առաջավոր փորձ: Դեռ ավելին, հոդվածում կարդում ենք. «Ջուրը ժամանակին եղավ, կերը՝ ժամանակին, էլ ի՞նչ անկում»: Տեղին է և հարցնել՝ էլ ի՞նչ առաջավոր փորձ: Զարմանալի է, որ այդ տողերը գրել են շրջանի գլխավոր զոոտեխնիկը և Լուսակերտի կոլտնտեսության նախագահը: Բնավ այն կարծիքին չենք, թե ֆերմայի վարիչի կազմակերպական հմտությունն ուսանելի չէ: Խոսքն այն մասին է, որ հոդվածագիրներին չի հաջողվել ցուցադրել այդ, վերլուծել, թե ինչ միջոցներով է նա ապահովում կոլեկտիվի անդամների ներդաշնակ համագործակցությունը, ինչպես է նրանց շահագրգռում, նվիրվածությամբ համակում հանձնարարված գործի հանդեպ: Ի դեպ, չենք կարող լռության մատնել շարադրանքի աչք ծակող լեզվա-ոճական սխալները, արտառոց համեմատությունները: Ահա մի քանի նմուշ. «Աշխարհը խորունկ կապույտ երկինք էր...», «Ժամանակը կծկեց իր ժապավենը», «Հոտը մտավ հարկի տակ՝ չոր ու լուսավոր գոմերում», «Մեր ստացած ոչխարի բարելավված ցեղը,— ասում է ֆերմայի վարիչը,— յուրահատուկ է մսատվությամբ և կաթնատվությամբ», «Արևով ու հովով ծիածանվեց հովիվ տղաների ընկերությունը», «Նա... օրինակով ամրապնդում է իր մտքի ճշտությունը» և այլն:




Իր բուժիչ կլիմայով և չքնաղ բնությամբ Դիլիջանը հանրապետության գեղատեսիլ վայրերից է, համամիութենական ճանաչում գտած առողջարանային քաղաք: Դրանով են պայմանավորված նրա էկոնոմիկայի բնույթն ու զարգացման հեռանկարները, հետևաբար նաև՝ «Դիլիջան» քաղաքային թերթի շոշափած հարցերի շրջանակը:

Թերթը պատկերում է քաղաքային կյանքի գրեթե բոլոր ոլորտներում տիրող իրավիճակը, հանախակի արծարծում քաղաքի բարեկարգման, կենցաղային սպասարկման, առևտրի և հասարակական սննդի կազմակերպման, կուլտուրայի, առողջապահության, շինարարության և այլ հարցեր: Մենք կանդրադառնանք միայն սոցիալիստական մրցության ընթացքի լուսաբանմանը: Տարեսկզբին թերթը հրապարակել է քաղաքի աշխատավորների 1971 թ. սոցիալիստական պարտավորությունները: Այնուհետև, պարբերաբար տպագրվել են բանվոր-ծառայողների անձնվեր աշխատանքը, առանձին կոլեկտիվների մրցությամբ ձեռք բերված նվաճումներն արտացոլող հաղորդումներ, ակնարկներ, ռեպորտաժներ և հոդվածներ: Կան նաև քննադատական բնույթի նյութեր, որոնք բացահայտում են բարեկարգման, առևտրի, սպասարկման և այլ ասպարեզներում նկատվող թերությունները: Տպագրվել են սոցիալիստական մրցության ընթացքի վերաբերյալ առաջնորդողներ, ծավալուն ինֆորմացիաներ քաղկոմի պլենումի և քաղսովետի սեսիայի մասին, ուր քննարկվել են սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման և կապիտալ շինարարության հարցերը: Առերևույթ կարծես ամեն ինչ լավ է: Սակայն, երբ ուշադիր ծանոթանում ես թերթում վերոհիշյալ թեմային նվիրված նյութերի բովանդակությանը, պարզվում է, որ խմբագրությունը հաճախ ցուցաբերում է միակողմանի մոտեցում, չի արտահայտում ամենագլխավորը՝ մրցության ստեղծագործական ոգին: Թերթը բավարարվում է առանձին կոլեկտիվների գոհացուցիչ արդյունքների և բարեխիղճ աշխատող մարդկանց դրվատումով: Մինչդեռ, կարևորն այն է, թե ինչպես է կազմակերպվում մրցությունը, ի՞նչ ուղիներով են նրանք հասնում ակներև արդյունքի: Այսպես. թերթը մի քանի անգամ գովաբանել է «Իմպուլս» գործարանի կոլեկտիվին, նշել նրա արտադրական լուրջ հաջողությունները: Հոկտեմբերի 12-ի համարում քաղկոմի պլենումի վերաբերյալ ինֆորմացիայից, ինչպես և գործարանի կուսկազմակերպության քարտուղարի հաղորդումից պարզվում է, որ ծավալված գործարար մրցությամբ կոլեկտիվը կատարել է 9 ամսվա առաջադրանքները՝ բոլոր ցուցանիշներով: Ընդ որում, դրան հասել են տասնյակ նորարարական առաջարկների ներդրմամբ, նոր հոսքային գծերի գործարկմամբ, հումքի, գազի, էլեկտրաէներգիայի տնտեսմամբ և այլն: Թերթի խնդիրը պետք է լիներ ո՛չ միայն արդյունքի արձանագրումը, այլև արտադրության կազմակերպման նրանց ռացիոնալ միջոցների, նորարարական առաջարկների վերլուծությունը, դրանց կիրառման նշանակության բացահայտումը:

Դիլիջանը նոր կառուցվող քաղաք է. այստեղ ծավալվում է բուռն շինարարություն: Հասկանալի է, թե ինչու է թերթն ուշադրություն նվիրում շինարարական կազմակերպությունների գործունեությանը, բայց անհասկանալի է մի բան: Շինարարության առանձին տեղամասերում մրցության հաջող ընթացքը ցուցադրելիս կամ առաջավորներին փառաբանելիս, թերթը շռայլ է, իսկ շինարար կոլեկտիվների աշխատանքի արատավոր կողմերն արտացոլելիս՝ ժլատ: Այդ է վկայում անցյալ տարվա սեպտեմբերին քաղսովետի սեսիայում քաղսովետի գործկոմի նախագահ Ն. Ձեպելի զեկուցումը՝ կապիտալ շինարարության ընթացքի վերաբերյալ (տե՛ս № 101): Այնտեղ զեկուցողը հանգամանորեն է խոսում այդ բնագավառում տեղ գտած բազմաթիվ լուրջ թերությունների մասին, ընդգծելով շինարարների անպատասխանատու վերաբերմունքը կառուցման որակի, աշխատանքային կարգապահության, պարտավորությունների կատարման գործում: Թերությունների ժամանակին ահազանգողը պետք է լինի թերթը և ոչ թե պասիվ հայեցողը:

«Դիլիջանը» մոռացության է մատնել նաև առաջավոր փորձի մասսայականացումը: Ձնայած խմբագրության հավաստումին, հանդիպող հազ-

վաղեպ օրինակներում փորձի հետք չկա: Կարդալով *Պրոպագանդիստական աշխատանքի իմ փորձից* հոդվածը (№ 7), իմանում ենք, որ հեղինակը քսան տարվա պրոպագանդիստ է, միշտ ձգտում է մատուցվող նյութը հաղորդել մատչելի ձևով և ուրիշ ոչինչ: Վերացական, ընդհանուր դատողություններից կազմված այս հոդվածը հրամցվում է որպես փորձ:

Նշված փաստը վկայում է, որ խմբագրությունը երբեմն քիչ է հոգում տպագրվող նյութի որակի և նպատակի մասին:

* * *

Վերջում ուզում ենք անել մի քանի դիտողություն, որոնք վերաբերում են մեր ուսումնասիրած թերթերին՝ հավասարապես: Երբ խոսվում է արտադրական նվաճումների մասին, սովորաբար վկայակոչում են քանակական ցուցանիշները, մոռանալով որակականը: Անհրաժեշտ է, որ վերոհիշյալ թերթերի խմբագրությունները մշտապես հաշվի առնեն նաև արտադրանքի որակը, ստեղծված բարիքների պահպանության հարցերը: Տպագրվող նյութերում սակավ է ընդգծվում մրցության բարոյա-դաստիարակչական և հասարակական իմաստը: Չէ՛ որ մրցությունը, նախ՝ մասսաների ստեղծագործ նախաձեռնության արտահայտություն է, նրանց կոմունիստական վերաբերմունքի դրսևորումը աշխատանքի, կոլեկտիվի և միջավայրի նկատմամբ: Կոլեկտիվ աշխատանքով հանուրի և իր համար բարիքներ ստեղծելու պրոցեսում աստիճանաբար փոխվում է մարդու հոգեբանությունը: Մինչդեռ արտադրության առաջավորների, չքնաղ շանակիրների մասին գրելիս, որպես կանոն, անվերջ հոլովվում է միայն նրանց աշխատասիրությունը. չէ՛ որ ընթերցողին հետաքրքրում են նաև անվանի մարդկանց բարոյական մյուս արժանիքները, նրանց վարքագիծը տանը, ընկերների, կոլեկտիվի նկատմամբ և մարդկային այլ փոխհարաբերություններում: Լրագրողի նպատակը պետք է լինի մոտիկից ճանաչել այն մարդուն, որի մասին ուզում է գրել, կարողանա որսալ նրա հոգևոր արժանիքներից օրինակելին և մարմնավորել գեղարվեստական միջոցներով, բնական և նրբմարտացի հանգամանքներում: Այս դեպքում լրագրողի խոսքը կլինի համոզիչ և ազդու:

Ա. Գ. ՅԱՎՐՅԱՆ




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 03225 Պատվեր 68 Թղթի չափսը 70 × 108 1/16: Տիրաժ 14000 Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 20/I 1972 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*






# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ., ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կանանց հարցի մասին: *Մ.*, «Политиздат», *1971, 224 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալիստական ֆինանսների մասին: *Մ.*, «Политиздат», *1971, 256 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի առանձին աշխատություններ, ելույթներ, ասույթներ՝ սոցիալիստական ֆինանսների մասին:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ինչի՞ց սկսել: Կուսակցական կազմակերպությունը և կուսակցական գրականությունը: *Մեր լրագրերի բնույթի մասին: Մ.*, «Политиздат», *1971, 48 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գիտության և բարձրագույն կրթության մասին *(ժողովածու), Մ.*, «Политиздат», *1971, 422 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի երկերը, քաղվածքներ երկերից, ելույթները, նամակները, ինչպես նաև ՍՄԿԿ ԿԿ և սովետական կառավարության որոշումներն ու այլ փաստաթղթեր:*

ԲԵՐԵԺՆՈՅ Ա. Ֆ.— Լենինը՝ նոր տիպի մամուլի ստեղծող *(1893—1914 թթ.): Լենինգրադի համալս. հրատ., 1971, 344 էջ:*

ԴՈՒԲԻՆՍԿԻ-ՄՈՒԽԱՁԵ Ի. Մ.— Կույբիշև: *Մ.*, «Молодая гвардия» *հրատ., 1971, 304 էջ:*

Նշանավոր մարդկանց կյանքը *մատենաշարի այս գրքույկում հեղինակը հանգամանորեն պատմել է լենինյան գվարդիայի փայլուն գործիչներից մեկի՝ Վալերիան Վլադիմիրովիչ Կույբիշևի (1888—1935) կյանքի ու գործունեության մասին:*

ԿՈՒՐՍԱՆՈՎ Գ. Ա.— Լենինիզմը և բուրժուական փիլիսոփայական մտքի ճգնաժամը *(Ընդդեմ բուրժուական գաղափարախոսության): Մ.*, «Мысль» *հրատ., 1971, 144 էջ:*

ՄԻՏԻՆ Մ. Բ.— Վ. Ի. Լենինը և փիլիսոփայության արդիական խնդիրները: *Մ.*, «Мысль» *հրատ., 1971, 408 էջ:*

ԼԱՊՏԵՎ Ի. Դ.— Գլխավոր աղբյուրը: *Մ.*, «Моск. рабочий» *հրատ., 1971, 78 էջ:*

ՇԻՏԱՐԵՎ Գ. Ի.— Կոլեկտիվի քաղաքական կորիզը: *Մ.*, «Моск. рабочий» *հրատ., 1971, 72 էջ:*

ՍՄԿԿ XXIV համագումարը և կուսակցական աշխատանքի հարցերը *մատենաշարի այս գրքույկում հեղինակը շարադրել է սկզբնական կուսկազմակերպության դերի բարձրացման անհրաժեշտության մասին:*

ԳԱՄԱՋԿՈՎ Կ. Ա.— Ճապոնիայում մարքսիզմ-լենինիզմի տարածման պատմությունից (1932—1938 թթ.): *Մ.*, «Наука» *հրատ., 1971, 120 էջ:*

Աթեիզմը և սոցիալիստական կուլտուրան: *Մ.*, «Мысль *հրատ., 1971, 134 էջ:*

*Այս ժողովածուում հեղինակները փաստական նյութերի հիման վրա ցույց են տալիս այն ուղին, որով հասարակության հոգևոր կուլտուրան կարող է ազատագրվել եկեղեցու և կրոնի դարավոր տրադիցիոն ազդեցությունից:*

Կուսակցությունը և կոմերիտմիությունը կոմունիզմի կառուցման պայմաններում: *Մ.*, «Мысль *հրատ., 1971, 222 էջ:*

*Ներկա ժողովածուում լուսաբանվել են կոմերիտմիության նկատմամբ կուսակցության ղեկավարության խնդիրները ներկա շրջանում:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՌՈԲՈՏԻԿ-ԳԻԴԸ

*Ժողովրդական տնտեսության նվաճումների համամիութենական ցուցահանդեսի «պրոֆտեխնիկական կրթություն» տաղավարում գործում է* РЭМ *ռոբոտիկ-գիդը, որը պատրաստվել է Կամենսկ-Ուրալսկ քաղաքի պատանիների հմուտ ձեռքերով։ Այդ ռոբոտիկն ունի ոչ մեծ հասակ, բարեկազմ է և գեղեցիկ։ Այն անմիջապես գրավում է այցելուների ուշադրությունը։ Տաղավարում հնչող նրա հստակ ու զրնգուն ձայնի նկատմամբ (ի դեպ, դրանով այն տարբերվում է աղմկոտ իր երկվորյակներից), ոչ ոք չի կարող անտարբեր մնալ։ Եթե* РЭМ*-ն օգտագործվում է իբրև էքսկուրսավար, պատմելու ընթացքում (ծրագրի համաձայն) գլուխը շրջում է համապատասխան էքսպոնատի կողմը։* РЭМ*-ը խստապահանջ գիդ է։ Երբ որևէ մեկն աղմկում է, այն լռում է, «հայացքով» «կշտամբում» խանգարողին և քաղաքավարի ասում. «Ներեցե՛ք, այստեղ չի կարելի աղմկել»։ Լռություն է տիրում և այն շարունակում է իր զրույցը։* РЭМ*-ը ո՛չ միայն «լսում է», այլև, «տեսնում», ցավ է զգում նույնիսկ թեթև հպման ժամանակ։*

## ՄԱՐԴԱՏԱՐ ՆՈՐ ԱՎՏՈՄԵՔԵՆԱ

*Լիխաչովի անվան գործարանն սկսել է արտադրել «*ЗИЛ*—117» մակնիշի, 300 ձիաուժ հզորությամբ, հինգ տեղանոց հարմարավետ մարդատար ավտոմեքենա։ Ավտոմոբիլն ընթանում է 200* կմ*/ժամ արագությամբ։ Նման արագությունը պահանջում է ունենալ հուսալի արգելակներ և ղեկի վարման սիստեմ։ Արգելակներն սկավառակաձև են՝ բացվածքի ավտոմատ կարգավորմամբ և վակուումային հզորացուցիչով։ Ուժեղացուցիչը հեշտացնում է մեքենայի վարումը։ Թափքը սարքավորված է օդափոխիչով, ջեռուցմամբ, օդը խտացվում է, ապակիները բացվում են էլեկտրաշարժակների միջոցով։ Մեքենայի առջևի ապակու տակ տեղադրված է բարձրակարգ տրանզիստորային ռադիոընդունիչ՝ ավտոմատ սարքով և կարգավորման երկու կետով։*

## ԻՐԱԿԱՆԱՑԱԾ ԵՐԱԶԱՆՔ

*Ամեն մի տանտիրուհի կարող է հաստատել, թե որքան աշխատանք և ժամանակ են խլում խոհանոցային պլիտայի մաքրումն ու լվացումը։ Հավանաբար նրանցից յուրաքանչյուրը երազել է այնպիսի մի կատարյալ պլիտա, որը պետք չէ ընդհանրապես մաքրել։ Անգլիական «Ստով» ֆիրման Լիվերպուլում կազմակերպել է ինքնամաքրող գազային պլիտաների արտադրությունը։ Տեղակայված սարքերն իրենք ավտոմատ կերպով մաքրում են խոհանոցային պլիտայի մակերեսը։*

## ԱԶՈՏԸ ՎԱՌԵԼԻՔԱՅԻՆ ԲԱՔԵՐՈՒՄ

*ԱՄՆ-ի քաղաքացիական ավիացիայի ֆեդերալ վարչությունը, հաղորդում է «Ֆլայտ» ամսագիրը, փորձարկում է ինքնաթիռների վառելիքային բաքերն ազոտով լցնող սիստեմը։ Վերջինս բաքերում նոսրացնում է օդի խտությունը և վառելիքային անցուղիները լցնում ազոտով այնքան, որ թթվածնի խտությունն իջնում է՝ այրումը անհնար դարձնելու աստիճան։ Այդ սիստեմն օդում պահպանում է ազոտի անհրաժեշտ խտությունը թռիչքի բոլոր պայմաններում, իսկ գետնի վրա՝ կանխում վառելիքի այրումը և բաքերի պայթյունը էլեկտրաստատիկ լիցքերի կայծերից, կայծակի հարվածից և այլն։*

## ՌԱԴԻՈԻԶՈՏՈՊՆԵՐԸ՝ ԱԽՏՈՐՈՇԻՉ

*Ռադիոիզոտոպները լայնորեն կիրառվում են հիվանդությունների ախտորոշման բնագավառում։ Հանովերի բարձրագույն բժշկական դպրոցի կլինիկայում (ԳՖՀ) ռադիոակտիվ կոնտրաստային միջոցներով որոշվում են մարդու օրգանիզմի այնպիսի մասերի վնասվածքներն ու արատները, որոնք հնարավոր չէ ախտորոշել ռենտգենոսկոպիայի միջոցով։*